ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1959 Թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



### ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՓՈԽԱՐԵՆ

## СОДЕРЖАНИЕ








# ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ԱՄԵՆԱՀԱՆԴՈՒԳՆ ԵՐԱԶԱՆՔՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

Դարեր եկան ու արագորեն անցան, բայց դարը դառը և դատարկ նըստող մարդկանց երազանքներն արդար կյանքի՝ վերաբերյալ՝ չիրականացան։ Կոմունիզմը որպես կեղեքվող մարդկության ազնվագույն գաղափար, իբրև թովիչ մի պատրանք, հարյուրամյակներով մնաց պատմության հետնախորքերում իբրև կենսունակ մի ծիլ։ Սակայն անցյալ դարի կեսերին դասակարգային կռվի բիրտ օրենքները վերջին մարտի մղեցին պրոլետարիատին, որն իր ծոցից ելած կոմունիստների առաջնորդությամբ խիզախորեն ընձեռեց քար աշխարհի ռևոլյուցիոն վերափոխման պատմական գործը։ Կանգնելով պատմության սրընթաց նավի ղեկի մոտ, կոմունիստները մեծ Լենինի ղեկավարությամբ սոցիալիզմը դարձրին իրականություն և կյանք։ Ընդամենը մի քանի տասնամյակում Լենինի հիմնած պարտիան հասավ նրան, որ մեր երկրում սոցիալիզմը հաղթանակեց ընդմիշտ և անդառնալիորեն։ Մարդկության մեկ երրորդից ավելին այսօր հաստատակամ ընթանում է լենինյան ուղիով։

Սոցիալիզմի համաշխարհային լագերը դարձել է անպարտելի ուժ, առաջավոր մարդկության ու խաղաղության հուսատու փարոսը։ Գնալով աճում և խորանում է նրա հմայքը ողջ աշխարհով մեկ։ Նրա սքանչելի նվաճումները տագնապի սուր ճիչեր, հուսալքության նվոցներ և ատելության ֆշշոցներ են հարուցում կապիտալիստական աշխարհում։ Իր մայրամուտն ապրող իմպերիալիզմի իդեոլոգներից շատերը չեն թաքցնում, որ առաջիկա խաղաղ մրցության մեջ հաղթանակելու է սոցիալիզմը։

Բավական երկար ժամանակ է, ինչ համաշխարհային հասարակական կարծիքը բևեռված է Ն. Ս. Խրուշչովի ՍՄԿՊ-ի XXI համագումարին տված զեկուցման և համագումարի միաձայն ընդունած որոշման վրա։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի՝ 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի այն բազմանշանակ և խոր շարադրանքը, որ տվեց պարտիայի համագումարին Ն. Ս. Խրուշչովը, առաջացրեց ամբողջ աշխարհի սոցիալիզմի բարեկամների անկեղծ հիացմունքը։

Ոգեշնչված կոմունիզմի կառուցման պարտիայի ծրագրով, սովետական ժողովուրդը՝ հպարտ իր պատմական հաղթանակներով, խոր ցնծությամբ ընդունեց հարազատ պարտիայի արտահերթ համագումարի որոշումը։

Հիրավի, մի րոպե խորհրդածենք Ն. Ս. Խրուշչովի այն դրույթի շուրջը, որ առաջիկա յոթ տարում մեր երկրում այնքան բարիքներ կարտադրվեն, որքան արտադրված է Սովետական իշխանության գոյության 41 տարիներին։ Սա նշանակում է, որ ՍՍՌՄ-ը բռնել է կոմունիզմի շողշողուն գագաթների ուղին, դեպի որն ընթանում է յոթմղոնանոց քայլերով։ Ահա ձեզ կատարյա՛լ

*ընդլայնված վերարտադրություն, ահա զարգացման անօրինակ թափ։ Հասարակական զարգացումը երբևէ ունեցե՞լ է նման մի թռիչք։ Իհարկե, ո՛չ։*

*Մեր պարտիայի պատմության մեջ XXI արտահերթ համագումարը մտավ իբրև կոմունիզմի կառուցման համագումար։ Նրա ամբիոնից տրված ընկեր Ն. Ս. Խրուշչովի հանգամանալի զեկուցումը լենինյան վեհ իդեաների, ղեկավարության և գործունեության լենինյան ոճի հոյակապ մարմնացումն է։ Այդ զեկուցման մեջ հանրագումարի են բերված սովետական ողջ սիստեմի քառասնամյա վիթխարի նվաճումները և վարպետորեն նախագծված է մեր երկրում կոմունիզմի կառուցման հոյակապ պլանը։*

*1958 թվականին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ ներդրված է 235 միլիարդ ռուբլի, որն ավելի է, քան առաջին և երկրորդ հնգամյակների բոլոր տարիներին ներդրվածը։ Միայն անցյալ տարի մեր երկիրը ձուլել է 55 միլիոն տոննա պողպատ, արդյունահանել է 113 միլիոն տոննա նավթ և արտադրել է 233 միլիարդ կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։*

*Վերջին չորս—հինգ տարիների ընթացքում մեծ են մեր աշխատավորության հաջողությունները գյուղատնտեսության բնագավառում։ Կուլտուրայի և գիտության ծաղկման հիման վրա, Սովետական Միությունը կոսմիկական անհունների և տիեզերական մարմինների ռեալ նվաճման դարադլուխը բացեց։ Միանգամայն օրինաչափ և բազմանշանակ է, որ Սովետական Միության՝ կոմունիզմի երկրորդ փուլի թևակոխումը նշանավորվեց տիեզերական մոլորակների նվաճման մեծագույն քայլերով։*

*Պարտիայի XXI համագումարին Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսների քննարկմանը մասնակցեց ավելի քան 70 միլիոն մարդ։ Հազարավոր, տասնյակ հազարավոր քաղաքացիների գործնական և հիմնավոր առաջարկները եկան ու ձուլվեցին ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանին։ Ո՞վ և որտե՞ղ է տեսել նման իրական դեմոկրատիա՝ Սովետների երկրից դուրս։ Ոչ ո՛ք և ո՛չ մի տեղ։ Հենց այդ ժողովրդայնությունն էլ կհանդիսանա յոթնամյա պլանի գերակատարման անհերքելի առհավատչյան։*

*Յոթնամյա պլանի արմատական պրոբլեմը՝ կապիտալիզմի և սոցիալիզմի խաղաղ տնտեսական մրցության մեջ առավելագույն ժամանակի շահումն է, ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Կոմունիզմի կառուցման այդ հոյակապ և վիթխարի ծրագրի կմախքը կազմում են մի քանի բնորոշ թվեր։ Այսպես, օրինակ, 1958 թվականի համեմատությամբ, 1965 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը կավելանա 80 տոկոսով, արտադրամիջոցների արտադրանքը՝ 85—88 տոկոսով։ Մեծ չափերով կզարգանա սև և գունավոր մետալուրգիան։ Յոթնամյակի վերջում երկրում կարտադրվի չուգուն՝ 65—70 միլիոն տոննա, պողպատ՝ 86—91 միլիոն տոննա, գլանվածք՝ 65—70 միլիոն տոննա, նավթ՝ 240 միլիոն տոննա, գազ՝ 150 միլիոն խոր. մետր։ Յոթնամյակում կառուցվելու են 2000 և 2286 խորանարդ մետր ծավալով դոմնային վառարաններ, որոնք լինելու են խոշորագույններն աշխարհում։ Վիթխարի չափերով զարգանալու է քիմիական արդյունաբերությունը։ 1965 թվականին թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը կավելանա մեկ ու կես անգամ, սննդի արդյունաբերությունը՝ 1,7 անգամ։*

*ՍՍՌՄ յոթնամյա պլանի բնորոշ կողմերից մեկն էլ տնտեսության բոլոր ճյուղերում նորագույն տեխնիկայի լայն կիրառումն է, արտադրության*



*կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը, տնտեսության բոլոր ճյուղերի մասնագիտացումն ու կոոպերացումը։*

*Հացահատիկի արտադրությունը, որպես ամբողջ գյուղատնտեսության հիմք, առաջիկա տարիներին ունենալու է այնպիսի աճ, որպեսզի 1965 թվականին երկիրն ստանա 11 միլիարդ փութ (180 միլիոն տոննա) հացահատիկ, անցյալ տարվա 8,5 միլիարդ փթի դիմաց։ Անասնահոտի գլխաքանակի նշանակալի ավելացմամբ և նրա մթերատվության բարձրացմամբ՝ յոթնամյակի ընթացքում մսի արտադրությամբ կհասնենք ԱՄՆ-ին և կանցնենք՝ շնչին ընկնող արտադրանքի գծով։ Իսկ կաթի և յուղի համախառն արտադրությամբ ՍՍՌՄ-ն աշխարհում այժմ գրավում է առաջին տեղը։ Առաջիկա յոթ տարում սովետական գյուղը կստանա մեկ միլիոնից ավելի տրակտոր և 400 հազար հացահատիկային կոմբայն։*

*Հեշտ է ասել, իհարկե, որ յոթնամյակում բոլոր գծերով կապիտալ ներդրումների ծավալը կազմելու է մոտ երեք տրիլիոն ռուբլի։ Սակայն դժվար է կոնկրետ պատկերացնել մեր վիթխարածավալ կառուցումների իրական կմախքն անգամ։ Բավական է նշել, որ 1965 թվականին երկրի արտադրածախքերի մեկ տոկոսը կազմելու է 21 միլիարդ ռուբլի։ Յոթնամյակը մեզ պետք է տա աշխատանքի արտադրողականության 50 տոկոսի աճ արդյունաբերության մեջ՝ յուրաքանչյուր աշխատողի հաշվով, իսկ կոլտնտեսություններում՝ երկու անգամ։ Այս ամենի արգասիքը կլինի աշխատավորների կենսամակարդակի բարձրացում, բանվորների և ծառայողների ռեալ եկամուտների 40 տոկոսի աճ։ Երկրում նվազագույն աշխատավարձը կլինի 500—600 ռուբլի։ Կոլտնտեսականների եկամուտն էլ կաճի 40 տոկոսով։ Մեր հզոր Հայրենիքը յոթնամյակի վերջին կունենա աշխարհում ամենակարճ բանվորական օրը և բանվորական շաբաթը։*

*ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը գիտական ու բազմակողմանի վերլուծմամբ լուսաբանեց կոմունիզմի կառուցման պրակտիկ ուղիների հարցը և զարգացրեց մարքսիզմ-լենինիզմի թեզերը կոմունիզմի երկու փուլերի վերաբերյալ։*

*Բոլոր քաղաքացիների գիտակցականության բարձր մակարդակը կոմունիզմի կառուցման անհրաժեշտ նախապայմաններից մեկն է։ Ուստի և առաջիկա տարիներին աշխատավորների և մատաղ սերնդի կոմունիստական դաստիարակությունը պետք է լինի մեր ուշադրության կենտրոնում։ Պարտիական քաղաքական ամբողջ իդեոլոգիական աշխատանքը կոչված է այժմ զարգացնելու սովետական մարդկանց* նոր հատկությունները, *նրանց դաստիարակելու կոլեկտիվիզմի, աշխատասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, հայրենասիրության, կոմունիստական բարոյականության սկզբունքներով, ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Հենց այսօր մենք պետք է դաստիարակենք ապագայի մարդուն կոմունիզմին նվիրված լինելու, ազնվության և ճշմարտացիության, հանրօգուտ աշխատանքին ակտիվ մասնակցելու և հանրակեցության կանոնները ճշտորեն պահպանելու ոգով։*

*Սովետական քաղաքացիներին կոմունիստական բարոյականությամբ դաստիարակելու գործը պետք է սերտորեն կապվի կոմունիզմի կառուցման առօրյա աշխատանքների հետ։ Ն. Ս. Խրուշչովը շեշտում է, որ դաստիարակության* մեծագույն ուսուցիչը՝ կյանքն է, *սովետական իրականությունը, առանց որի գրքային դրույթների իմացությունը ոչինչ չարժե։ Այսօր մեզ համար*

խիստ կարևոր է հասկանալ ու կիրառել պարտիայի այն դրույթը, որ սովետական դաստիարակության առանցքը՝ բոլոր քաղաքացիներին աշխատանքային ոգով դաստիարակելն է, աշխատանքի հանդեպ կոմունիստական վերաբերմունքի արմատավորումը։ Աշխատանքը պետք է յուրաքանչյուր քաղաքացու համար լինի կենսական անհրաժեշտություն։ Սա՛ է կազմելու մեր ամբողջ դաստիարակության ու կրթության աղը։ Սիստեմատիկ և անողոք պայքար մղել նրանց դեմ, ովքեր հանրօգուտ աշխատանքով չեն զբաղվում, ովքեր անբարեխիղճ են դեպի հանրային գործը, ովքեր զբաղվում են սպեկուլյացիայով ու խախտում են հանրային կարգ ու կանոնը։ Վերացնել կապիտալիզմի այդ մնացուկները՝ նշանակում է մեծապես նպաստել կոմունիզմին։

Ապագա քաղաքացիների դաստիարակության գործում պարտիան բացառիկ ուշադրություն է հատկացնում մատաղ սերնդի կոմունիստական աշխարհայացքի ձևավորմանը։ Չպետք է մոռանալ, որ մեր երիտասարդությունը չի ճաշակել բուրժուական «դրախտի» դառնությունները։ Կյանքը պահանջում է նրան դաստիարակել ռևոլյուցիոն տրադիցիաներով, մեր պարտիայի հերոսական պայքարի վառ օրինակներով։

Սովետական դպրոցի արմատական վերակառուցումը հետապնդում է մի նպատակ՝ բազմակողմանի զարգացած և հանրօգուտ աշխատանքի վարժված կոմունիզմի քաղաքացիներ կրթել։ Ահա թե ինչու պարտիան ու կառավարությունը մեծ ուշադրություն են նվիրում այդ պատասխանատու գործին։

Առաջիկա յոթ տարիներին փարթամորեն կծաղկի սովետական գիտությունը, որի նպատակն է բնության անսպառ ուժերն ի սպաս դնել կոմունիզմի հաղթանակին։ Այժմ, ավելի քան երբեք, անհրաժեշտ է բարձրացնել թեորետիկական աշխատանքը հասարակական գիտությունների բնագավառում, հատկապես մշակել սոցիալիզմից կոմունիզմին անցնելու, իմպերիալիզմի, բանվորական շարժման և ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի հրատապ պրոբլեմները։ Այնպիսի մի կարևոր պրոբլեմ, որպիսին արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների համապատասխանությունն է սոցիալիզմի և կոմունիզմի երկրորդ փուլի ժամանակ՝ պահանջում է համարձակ ընդհանրացումներ, հարցի խոր և բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա։ Գիտական ընդհանրացումներ և պրակտիկ հետևություններ անելով մեր կյանքի նոր երևույթների հետազոտումից՝ հասարակական գիտությունների ներկայացուցիչները կոչված են անդուլ կերպով մերկացնելու բուրժուական իդեոլոգիայի բոլոր դրսևորումները։

Սակայն պետք է նշել, որ իդեոլոգիական աշխատանքներում բավական թերություններ կան։ Իդեոլոգիական աշխատանքի որոշ օղակներ դեռ լիովին կապված չեն կյանքի հետ, կան թեորետիկ կադրեր, որոնք մշակում են կյանքից հեռու պրոբլեմներ և նրանց «աշխատությունները» արժեք են ներկայացնում միայն հեղինակների համար, որոնք հոնորար են ստանում, օգտվելով մեր մի քանի հրատարակիչների անհոգությունից և լիբերալիզմից։ Ազգային սահմանափակության և սնապարծության, անցյալի իդեալականացման, կրոնական հավատալիքների ու ծեսերի դրսևորումները հաճախ անուշադրության են մատնվում։ Յոթնամյա պլանի կիրառումը պահանջում է իդեոլոգիական աշխատանքները բարձրացնել նոր մակարդակի։

Երկու սիստեմների միջև եղած խաղաղ մրցման ներկա էտապում ՍՍՌՄ-ը պետք է անցնի ԱՄՆ-ին տնտեսական առումով։ Այս խնդրի լուծման օբյեկ-



տիվ և սուբյեկտիվ գործոնները մեզ մոտ գոյություն ունեն։ ՍՍՌՄ-ը վերջին ութ տարում պողպատի, չուգունի, երկաթահանքի, նավթի, քարածխի, ցեմենտի, բրդյա գործվածքների արտադրանքի բացարձակ աճով գերազանցել է ամերիկյան ցուցանիշները։ Յոթնամյա պլանի նախատեսած արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին 8,6 տոկոսի աճը հնարավորություն կընձեռի ՍՍՌՄ-ին անպայման գերազանցել ԱՄՆ-ի մակարդակը։ Այս առումով,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,—որակական մի նոր էտապ է սկսվել. այժմ մեր երկիրը գերազանցում է ԱՄՆ-ին թե՛ իր տեմպերով և թե՛ արտադրանքի բացարձակ աճով։ Մենք չորս անգամ արագ ենք քայլում, ուրեմն ամերիկացիներին հասնելն այժմ ավելի հեշտ է։

Ելնելով այն իրողությունից, որ յոթնամյակում մեր բնակչության աճը 15—20 տոկոսով կգերազանցի ԱՄՆ-ին, ապա բնակչության շնչին ընկնող արտադրանքի տեսակետից, մեզ հավանաբար անհրաժեշտ լինի ևս հինգ տարի, որպեսզի հասնենք և անցնենք ԱՄՆ-ին արդյունաբերական արտադրանքով։ Հետևաբար, այն ժամանակ, գուցե ավելի շուտ, Սովետական Միությունը աշխարհում կգրավի առաջին տեղը և՛ արտադրության բացարձակ ծավալով, և՛ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ։ Դա էլ կլինի միջազգային մասշտաբով կապիտալիզմի հետ խաղաղ մրցության ասպարեզում՝ սոցիալիզմի համաշխարհային պատմական հաղթանակը, ասում է Ն. Ս. Խրուշչովը։

Յոթնամյա պլանի կատարումը և ժողովրդական դեմոկրատիայի երկրների զարգացումը համաշխարհային սոցիալիստական սիստեմին հնարավորություն կտան արտադրել ողջ երկրագնդի արդյունաբերական արտադրանքի կեսից ավելին։ Դրանով էլ սոցիալիստական սիստեմը հաղթանակ կտանի կապիտալիզմի հանդեպ։ Ելնելով այդ հաստատ համոզումից, Ն. Ս. Խրուշչովը ասում է, որ մենք ցանկանում ենք մրցել ո՛չ թե սպառազինման, ատոմային, ջրածնային ռումբեր կամ հրթիռներ արտադրելու ասպարեզում, այլ արդյունաբերական արտադրանքով՝ մսով, կաթով, յուղով, հագուստով, կոշիկով և սպառման այլ առարկաներով։ Թող ժողովուրդները տեսնեն, թե ո՛ր հասարակարգն է ավելի լավ ապահովում նրանց պահանջմունքները և նրանք ըստ պատշաճի կգնահատեն յուրաքանչյուր հասարակարգ։

Ահա թե ինչու ՍՍՌՄ յոթնամյա պլանը հանդիսանում է մեր պարտիայի ու կառավարության լենինյան խաղաղասիրական ձգտումների գեղեցիկ մարմնացումը, որի կենսագործումը հզոր խթան կլինի խաղաղության գործի ամրապնդմանը։ Դեռ ավելին, դա առավել բարենպաստ պայմաններ կստեղծի համաշխարհային պատերազմը կանխելու։ Յոթնամյա պլանը խոշոր չափով նպաստելու է խաղաղության ուժերին՝ լուծելու միջազգային քաղաքական կյանքի կնճռոտ պրոբլեմները։ Կոմունիզմի կառուցման խաղաղ և ստեղծագործ աշխատանք՝ ահա թե որն է յոթնամյա պլանի ուղին ու ծուծը, նրա ուժն ու հմայքը։ Հենց դրա շնորհիվ է, որ այն մեծագույն բարոյական ազդակ է ծառայելու միջազգային կոմունիստական շարժման համար։

Ինչպես երևում է, իմպերիալիստական երկրների որոշ ղեկավարներ մեր հաջողություններից լեղապատառ և իրենց ուժերից արբեցած՝ կրկին փորձում են պատերազմ հրահրել, ամեն կերպ դեմ կանգնելով կոմունիզմ կառուցող ՍՍՌՄ ժողովուրդների խաղաղ ձգտումներին։ Բայց այդ մարդիկ մոռանում են, որ՝

Չի՛ ընթանա սակայն երբեք պատմությունը դեպի ետ.
Ինչ որ կյանքում վեհ է ու լավ—մեր մե՛ջ է արդ ու մեզ հետ.
Գազանային ոհմակներով ինչքան էլ գան՝ պիտի լոկ
Արագացնեն մա՛հն իրենց սև—ու չքանան առհավետ:

Ամեն կասկածից վեր է, որ յոթնամյակի հաջող իրականացումը նոր թևեր կտա մեր միլիոնավոր ընկերներին ու բարեկամներին, որոնք հեծում են կապիտալի լծի տակ, և թևակոտոր կանի սոցիալիզմի մոլի թշնամիներին:

Համագումարին տված իր զեկուցման մեջ Ն. Ս. Խրուշչովը հատկապես կանգ առավ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու հարցի վրա, տալով վերջինիս տեսական լուսաբանությունը: Այժմ ՍՍՌՄ-ը գտնվում է զարգացման այն փուլում, երբ սոցիալիզմը վերաճում է կոմունիզմի: Ն. Ս. Խրուշչովը Լենինի ուսմունքից ելնելով, սոցիալիզմից անցումը կոմունիզմին դիտում է որպես աստիճանական և օրինաչափ մի պրոցես: Հասարակությունը կապիտալիզմից անմիջականորեն չի կարող անցնել կոմունիզմի՝ առանց սոցիալիզմի փուլը մտնելու: Քանի դեռ չկա նյութական բարիքների իրական առատություն, քանի դեռ մարդիկ պատրաստ չեն ապրել ու աշխատել կոմունիստորեն՝ կիրառել ըստ պահանջմունքի սկզբունքը, նշանակում է վնաս հասցնել կոմունիզմի գործին: Ուստի, անցումը կոմունիզմին պետք է լինի պլանաչափ, նյութական և հոգեկան նախադրյալների հասունացման համընթաց: Կոմունիզմի շոշափելի ու տեսանելի գծերը հիմա էլ կան մեր կյանքում: Սոցիալիզմից անցումը կոմունիզմի, Ն. Ս. Խրուշչովը դիտում է որպես մի անընդհատ պրոցես, որը կստեղծի մթերքների այնպիսի առատություն, երբ հնարավոր կլինի բավարարել մարդկանց պահանջմունքները:

Սովետական բոլոր քաղաքացիների սննդի, բնակարանի, հագուստի և այլ բանական պահանջմունքների բավարարումը հնարավոր կլինի մոտիկ ապագայում, ասում է Ն. Ս. Խրուշչովը: Բայց համեմատաբար շատ ժամանակ կպահանջվի, որպեսզի մարդկանց մոտ ներքին պահանջ մշակվի ըստ ունակության աշխատելու համար: Այժմ կարևորագույն խնդիրը՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, որը պահանջում է արտադրողական ուժերի մեծագույն զարգացում և աշխատանքի արտադրողականություն, որը գերազանցի կապիտալիստական արտադրողականությունից: Պետք է հաշվի առնել, որ հիմա ԱՄՆ-ում աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ 2—2,5 անգամ բարձր է մերից, իսկ գյուղատնտեսության մեջ՝ այն բարձր է 3 անգամ: ՍՍՌՄ-ը օժտված է բոլոր պայմաններով լուծելու և ա՛յս կարևորագույն պրոբլեմը:

Սակայն հասնելով ԱՄՆ-ին տնտեսապես, մենք դրանով չենք ավարտի կոմունիզմի կառուցումը: Դա կլինի կոմունիստական շինարարության միայն առաջին էտապը: Ամերիկան այն կիսակայարանն է, որին հասնելով մենք կշարունակենք առաջ ուրալ՝ կատարելագործելով սոցիալիստական արտադրական հարաբերությունները:

Զարգացման ներկա էտապում բարիքները մեր երկրում բաշխվում են ըստ մարդկանց կատարած աշխատանքի քանակի ու որակի: Բայց հիմա էլ բարիքների զգալի մասը մեզ մոտ բաշխվում է հասարակության անդամների միջև, անկախ նրանց աշխատանքի քանակից և որակից և այն էլ՝ ձրի կերպով (բուժում, կրթություն, գիշերօթիկ դպրոցներ, թոշակներ, նպաստներ և այլն): Գնալով այդ ծախսերը պետք է ավելանան,—ասում է Ն. Ս. Խրուշչովը:



Բայց այժմ սխալ կլինի բաշխել բարիքները հավասարապես. դա չի զարգացնի տնտեսությունը: Առանց անձնական շահագրգռվածության հնարավոր չէ կոմունիզմի նյութական-տեխնիկական բազա ստեղծել: Ուրեմն, կոմունիզմի ներկա փուլում եկամտի զանազանությունն անխուսափելի է:

Կոմունիստական շինարարության խնդիրների լուծման տեսակետից խոշոր տեսական և պրակտիկ նշանակություն ունի սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման ուղիների հարցը: Ապագայում,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—սեփականության կոլտնտեսային-կոոպերատիվ և պետական ձևերը կմիաձուլվեն մեկ միասնական՝ կոմունիստական սեփականության մեջ: Բայց զարգացման ներկա էտապում արտադրահարաբերությունների կոլտնտեսային-կոոպերատիվ ձևը տակավին զարգանալու հնարավորություններ ունի: Միայն այդ հնարավորությունների սպառման դեպքում այդ երկու ձևերը կմիաձուլվեն: Եվ Ն. Ս. Խրուշչովը՝ խոր վերլուծությամբ նշում է այդ պրոբլեմի լուծման ուղիները, շեշտելով, որ այդ հարցը հանգում է գյուղի և քաղաքի խոր պրոբլեմին, որի լուծման համար յոթնամյա պլանի՝ իրականացումը ռեալ նախադրյալներ կստեղծի:

Կոմունիզմի կառուցման երկրորդ փուլում կենսական նշանակություն է ստանում հասարակության քաղաքական կազմակերպման, պետական կառուցվածքի և կառավարման հարցը: Եթե պետության մահացման հարցին մոտենանք դիալեկտիկորեն, ասում է Ն. Ս. Խրուշչովը, ապա դա՝ սոցիալիստական պետականությունը կոմունիստական հանրային ինքնավարության վերածվելու հարց է: Թերևս կոմունիզմի ժամանակ էլ կմնան որոշ հասարակական ֆունկցիաներ նման արդի պետական ֆունկցիաներին, բայց դրանց բնույթն ու իրագործումը տարբեր կլինեն այժմյանից: Կոմունիզմի կառուցման նոր էտապում պետության մի շարք ֆունկցիաներ աստիճանաբար կանցնեն հասարակական կազմակերպություններին, որոնց դերը դնալով կմեծանա: Բայց դա չի նշանակում, որ կնսեմանա պետական օրգանների դերը: Աշխատավորների դեպուտատների Սովետները սոցիալիզմից կոմունիզմին անցնելու էտապում բացառիկ մեծ անելիքներ ունեն: Գլխավորն այն է, որպեսզի առաջիկայում էլ ավելի ծավալվի սոցիալիստական դեմոկրատիան, որպեսզի կառավարման գործում ներգրավվեն միլիոնավոր զանգվածներ:

Սակայն չի կարելի անտեսել, որ քանի դեռ կան արևմտյան տերությունների ագրեսիվ բլոկներ,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—մենք պետք է ամրապնդենք մեր պետությունը, կատարելագործենք մեր Զինված Ուժերը, անվտանգության օրգանները: Այսօր մեր Հայրենիքն ի վիճակի է կործանելու ամեն մի թշնամու յուրաքանչյուր հարձակում: Կապիտալիզմի ռեստավրացիան Սովետական երկրում՝ բացառված է: Սոցիալիզմը մեզ մոտ հաղթանակել է ո՛չ միայն լիովին, այլև վերջնականապես: Մեր անկոտրում հզորությունը միջազգային խաղաղության ռեալ գրավականն է:

Սոցիալիզմի համաշխարհային սիստեմից բխում է այն օրենքը, որ սոցիալիզմի ճագերի երկրները քիչ թե շատ միաժամանակ են թևակոխելու կոմունիզմի վերջին փուլը: Պլանաչափ, համամասնական զարգացման սոցիալիզմի օրենքը հնարավոր է դարձնում, որպեսզի փոխադարձ օգնությամբ, տնտեսապես ետ մնացած երկրները հասնեն առաջավոր սոցիալիստական երկրներին: Այսպիսով,—ասում է Ն. Ս. Խրուշչովը,—հավասարվում է բոլոր սոցիալիստական երկրների տնտեսական և կուլտուրական զարգացման գիծը:

Սա ամենևին չի բացառում այն հանգամանքը, որ հաշվի առնվեն տարբեր երկրների զարգացման առանձնահատկությունները։ Գլխավորը՝ դեպի կոմունիզմ ընթացող երկրների համար ընդհանուր օրինաչափությունն է, որի կիրառման պրիմները տարբեր են։ Վճռականը՝ մարքսիզմ-լենինիզմի կողմից հայտնագործված և մեր ռևոլյուցիայի փորձով ապացուցված սոցիալիզմի մայրուղին է, և ոչ թե նեղ կածաններն ու շավիղները։ Ահա թե ինչու կոմունիստական պարտիաները ջախջախեցին հարավսլավական և այլ երկրների ռևիզիոնիստների փորձերը, մարքսիզմը ննենգափոխելու և սոցիալիզմի գլխավոր պողոտայից հեռանալու բուրժուական միտումները։

ՍՄԿՊ XX համագումարից անցել է ընդամենը երեք տարի։ Բայց ինչպիսի՜ տարիներ. սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդման, միջազգային կոմունիստական շարժման խորացման, իմպերիալիզմի ակներև թուլացման և մեր երկրում սոցիալիզմի վերջնական հաղթանակի տարիներ։ Կիրառելով արմատական, ռևոլյուցիոն մի շարք միջոցառումներ, մեր պարտիայի Լենինյան Կենտկոմը երկիրը հասցրեց կոմունիզմի շեմին։ Մերկացնելով և գեն շպրտելով երկու զույգ ու մի կենտ պառակտիչների ֆրակցիան խմբակը, պարտիան ավելի միասնական, ավելի կուռ համախմբվածությամբ ավարտեց համագումարը։ Մշակելով և հաստատելով մեր երկրում կոմունիզմի կառուցման փառավոր ծրագիրը, ՍՄԿՊ XXI համագումարը լենինյան իմաստության տարեգրքում հրաշալի էջեր գրեց։

Այժմ արդեն անհրաժեշտ է աշխատանքում հանդես բերել առավել գործիմացություն, կոնկրետություն ու նպատակասլացություն։ Միայն ընդհանուր խոսքերով և ընդհանուր կոչերով ոչինչ չես անի։ Պարտիական կազմակերպությունները, պրոպագանդիստներն ու ագիտատորները պարզաբանելով կոմունիզմի կառուցման մեր պլանների մեծագույն իմաստը, պետք է ամեն կերպ զարգացնեն կոմունիզմի ծիլերը, կազմակերպեն ու ամրապնդեն աշխատանքի կոմունիստական բրիգադաները։

Դաստիարակելով կադրերին բարձր պատասխանատվության, թերությունների նկատմամբ անհանդուրժողականության, քննադատության և ինքնաքննադատության ոգով, պարտիական կազմակերպությունները խոր բանիմացությամբ պետք է ղեկավարեն պրոֆմիությունների, կոմերիտական և այլ մասսայական կազմակերպությունների առօրյա գործունեությունը, ամբողջ ժողովրդին ներգրավեն յոթնամյա պլանի կատարման պատվավոր գործում։

Պատմական փորձը ցույց է տալիս, որ կոմունիզմի կառուցման պրոցեսում գնալով աճում է պարտիայի դերը, այլ ոչ թե թուլանում, ինչպես այդ պնդում են արդի ռևիզիոնիստները,—ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Պատշաճ ուշադրություն դարձնելով կադրերի դաստիարակության և տեղադրման վճռական գործին, համարձակորեն առաջ քաշելով երիտասարդներին, զուգակցելով նրանց գործունեությունը հին կադրերի հետ՝ պարտիան մեծ հաջողությամբ կլուծի իր առջև դրված պատմական խնդիրը՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցումը։ Այն պարտիան ու ժողովուրդը, որոնք սոցիալիզմը դարձրին համաշխարհային անպարտելի ուժ, այդ պարտիան ու ժողովուրդը մեծ հաջողությամբ իրագործում են մարդկության ամենահանդուգն երազանքը՝ կոմունիզմը։

---

# ՋԵՐՄ ԱՐՁԱԳԱՆՔՆԵՐ

Ի. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Մարդկության զարգացման նոր էջ բացեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը։ Համագումարն արտահայտելով սովետական ժողովրդի կամքը, իղձերն ու ցանկությունները, միահամուռ կերպով հավանություն տվեց ընկ. Ն. Ս. Խրուշչովի՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին» զեկուցմանը և փաստորեն մեր երկրում հիմք դրեց կոմունիզմի ծավալուն կառուցմանը։ Ահա թե ինչու յոթնամյա պլանն ամենուր հռչակվել է որպես կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ծրագիր։ Այսպես են անվանում այն սոցիալիստական երկրների աշխատավորները, այսպես են անվանում այն իմպերիալիզմի լծի տակ տակավին հեծող ժողովուրդները, այսպես են անվանում այն սովետական մարդկանց հավատարիմ բարեկամներն աշխարհի բոլոր մասերում։ Այդպես են կոչում այն միլիոնավոր, հարյուր միլիոնավոր մարդիկ կապիտալի աշխարհում, որոնց համար սոցիալիզմի անդրանիկ երկիրը՝ Սովետական Միությունը միշտ եղել է, կա և կմնա որպես լուսատու մի փարոս։

Համագումարի ամբիոնից շատ գեղեցիկ հնչեցին ընկ. Չժոու Էն-լայի այն խոսքերը, որ ի դեմս ՍՄԿՊ XXI համագումարի, ժողովուրդները տեսնում են ո՛չ միայն ամբողջ աշխարհում խաղաղության ամենահզոր պատվարի՝ Սովետական Միության մեծագույն հզորության ցուցադրումը, այլև ամբողջ մարդկության գեղեցկագույն հեռանկարի՝ կոմունիզմի մարմնացումը։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի համաժողովրդական քննարկումը և այդ առթիվ ընդունված որոշումները ջերմ արձագանք գտան սոցիալիստական հզոր լագերի բոլոր երկրների ու կապիտալիստական աշխարհի աշխատավորների սրտերում և դարձան համաշխարհային հասարակայնության ուշադրության առարկան։ Եվ դա բնական է։ Յոթնամյա պլանի կենսագործումը, որն իր մեջ ամփոփում է մեր երկրում կոմունիստական շինարարության փառավոր հաղթանակների արդյունքները և նախագծում նրա զարգացման հոյակապ խնդիրները, Սովետական Միության տնտեսության զարգացման մեջ կլինի մի վիթխարի թռիչք դեպի առաջ, որի շնորհիվ էլ ՍՍՌՄ-ը կդառնա աշխարհում ամենազարգացած երկիրը։

Դրա իրականացման համար անհրաժեշտ էր ստեղծել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման համապատասխան մակարդակ, նյութական և տեխնիկական խոշոր բազա, առանց որի հնարավոր չէր ձեռնամուխ լինել նման վիթխարի պլանի իրականացմանը։

Կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների միաժամանակյա

գոյությունը վկայում է միջազգային հարաբերություններում, համաշխարհային զարգացման հիմնական ուղղություններում երկու տենդենցների սկզբունքային տարբերության մասին։ Այն ժամանակ, երբ սոցիալիստական էկոնոմիկան զարգանում է հասարակության բոլոր աճող պահանջմունքների բավարարման, արտադրողական ուժերի արագ զարգացման և միջազգային փոխադարձ օգտավետ համագործակցության ընդլայնման ուղղությամբ, կապիտալիստական էկոնոմիկան զարգանում է մոնոպոլիստական բուրժուազիայի հարստացման, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահագործման ուժեղացման, միլիտարիզմի աճի և մրցակցային պայքարի սրման ուղղությամբ։

Եթե մի ժամանակ կապիտալիստական աշխարհի հետ խաղաղ մրցության մեջ Սովետական Միությունը հանդես էր գալիս միայնակ, ապա այժմ կա համաշխարհային սոցիալիստական լագեր, որն իրենից ներկայացնում է մի մեծ, անընդհատ աճող և ամրապնդվող ուժ։ Բավական է ասել, որ այժմ աշխարհի արդյունաբերական արտադրանքի 30 տոկոսից ավելին տալիս են սոցիալիստական լագերի երկրները։

Համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջող զարգացումը պայմանավորված է կապիտալիստական կարգի նկատմամբ նրա ունեցած գերազանցությամբ, որը մասնավորապես արտահայտվում է արդյունաբերական արտադրանքի արագ աճով։ 1950—1957 թվականներին սոցիալիստական լագերի արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կազմել է 13 տոկոս, իսկ առանձին երկրներում՝ ավելի բարձր։ Այսպես, օրինակ, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում այն կազմել է 27, Լեհաստանում և Ռումինիայում՝ 14 տոկոս և այլն։ Սոցիալիստական երկրների արդյունաբերական արտադրանքի դինամիկայի համեմատությունը կապիտալիստական աշխարհի համապատասխան ցուցանիշների հետ վկայում է այն մասին, որ սոցիալիստական արդյունաբերությունն աճի իր ներկա տեմպերով մի քանի անգամ գերազանցում է կապիտալիստական արդյունաբերության տեմպերին։ Վերջին յոթ տարիներին (1951—1957 թթ.) սոցիալիստական աշխարհի արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կապիտալիստականից բարձր է եղել երկուս ու կես անգամ։

Այլ պատկեր է ներկայացնում կապիտալիստական աշխարհը։ Փաստերը վկայում են կապիտալիստական երկրներում արտադրողական ուժերի և արտադրական հարաբերությունների միջև անտագոնիզմի հետագա խորացման մասին, կապիտալիստական պետությունների էկոնոմիկայի անկայունության ուժեղացման, նրանց միջև տնտեսական հակասությունների լուրջ սրման և համաշխարհային ճգնաժամի խորացման մասին։

Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական ստեղծագործ ժողովուրդը հաղթահարեց բոլոր դժվարությունները և պատմական կարճ ժամանակամիջոցում կառուցեց սոցիալիզմ, մեր երկրում ստեղծեց կոմունիստական հասարակարգի կառուցման համար անհրաժեշտ պայմաններ։ Անցյալ տարի սովետական ժողովրդի անձնուրաց աշխատանքի, պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ 1958 թվականի պետական պլանը կատարվեց և գերակատարվեց, որը բարենպաստ պայմաններ ստեղծեց յոթնամյա պլանի հոյակապ առաջադրանքների կենսագործման համար։

1958 թվականին մեր երկրում արդյունաբերական արտադրության ծավա-



լը պլանով նախատեսված 7,6 տոկոսի փոխարեն փաստորեն աճեց 10 տոկոսով։

Անցյալ տարի լուրջ հաջողություններ ունեցավ նաև մեր գյուղատնտեսությունը։ 1957 թվականի համեմատությամբ, 1958 թվականին հացահատիկի համախառն ամբարված բերքն ավելացավ 2,1 միլիարդ փթով, կամ 33 տոկոսով, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ 3,5 միլիարդ փթով։

Մեր երկրում ձեռք է բերված նաև բոլոր ազգերի և ժողովուրդների կուլտուրայի չտեսնված բարգավաճում։ Ժողովրդական տնտեսության մեջ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության տեր մասնագետների թիվն այժմ կազմում է մոտավորապես 7,5 միլիոն մարդ, այսինքն՝ 39 անգամ շատ, քան 1913 թվականին։

Ամբողջ աշխարհը ցնցեցին միջուկային ֆիզիկայի և ատոմային էներգիայի, ռեակտիվ ավիացիայի և հրթիռային տեխնիկայի ասպարեզում սովետական գիտության ձեռք բերած հաջողությունները։

Համագումարին տված իր զեկուցման մեջ ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ հասել է այնպիսի գագաթների, իրագործել է տնտեսական ու հասարակական կյանքի այնպիսի վիթխարի վերափոխություններ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր, կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Յոթնամյա պլանի կենսագործումը խոշոր խթան կհանդիսանա առաջին հերթին համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր երկրների տնտեսական և քաղաքական հզորության հետագա ուժեղացմանը և ամրապնդմանը։ Այս բանն իր վառ արտահայտությունը գտավ պարտիայի XXI համագումարում սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների պատվիրակությունների ղեկավարների ելույթներում, ինչպես նաև նրանց հոդվածներում ու հայտարարություններում։

«Սովետական Միության յոթնամյա պլանը,— գրում է Հունգարական Սոցիալիստական բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Յանոշ Կադարը,— որոշ առումով հանդիսանում է համաշխարհային սոցիալիստական ամբողջ սիստեմի պլանը։ Եվ այդ ոչ միայն նրա համար, որ Սովետական Միության էկոնոմիկայի վերելքը կմեծացնի սոցիալիստական լագերի տնտեսական ուժը, այլ նրա համար, որ նա կապահովի սոցիալիստական յուրաքանչյուր երկրի զարգացման ավելի մեծ թափը». (журнал «Проблемы мира и социализма», № 1, 1959, стр. 6).

Այս միտքը վկայությունն է այն բանի, թե Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործումը ինչպիսի վճռական դեր ունի կատարելու սոցիալիզմի համաշխարհային ամբողջ սիստեմի հզորության և նրա հետագա ամրապնդման գործում։

Սովետական յոթնամյա պլանի կենսագործումը, անկասկած, աննախընթաց վերելք կստեղծի սոցիալիստական բոլոր երկրների արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի զարգացման համար, որի շնորհիվ համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ սոցիալիստական ամբողջ սիստեմի բաժինը 1958 թվականի 30 տոկոսի փոխարեն 1965 թվականին կկազմի 50 տոկոսից ավելի։ Իսկ այդ նշանակում է, որ համաշխարհային տնտեսության մեջ անվերապահորեն կապահովվի սոցիալիստական սիստեմի

գերակշռությունը կապիտալիստականի նկատմամբ, այդ նշանակում է, որ կստեղծվի ուժերի այնպիսի հավասարակշռություն, ուր սոցիալիզմը կգրավի առաջնությունը։

«Յոթնամյա պլանի իրականացումը,— իր զեկուցման մեջ ասաց ընկեր Ն. Ս. Խրուշչովը,—կհանդիսանա բոլոր երկրների աշխատավորների, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման նկատմամբ, ամբողջ առաջադեմ մարդկության նկատմամբ Սովետական Միության աշխատավորների ինտերնացիոնալ պարտքի կատարման մի նոր ապացույց»։

Եվ իրոք, եթե հետադարձ հայացք ձգենք անցած քառասնամյա պատմության վրա և մեր հիշողության մեջ վերականգնենք պատմական եղելությունները, ապա մեր աչքերի առջև ամբողջ հասակով կկանգնեն այն բոլոր մեծ նվաճումները, որոնք եղել են առաջին սոցիալիստական երկրի վարած ճիշտ քաղաքականության արդյունքը, մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարների արգասիքը։ Իզուր չէ, որ այսօր երկրագնդի բոլոր առաջադեմ մարդիկ անսահման սեր ու հարգանք են տածում դեպի Սովետական Միությունը։ Նրանք մեծ հիացմունքով են խոսում այն խոր տպավորության մասին, որը թողել է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանն իրենց երկրների աշխատավորների վրա և այն խոշոր տագնապի ու շփոթվածության մասին, որ այսօր ապրում է բուրժուական աշխարհը։

Հիրավի, հսկայական է յոթնամյա պլանի նշանակությունը ամբողջ մարդկության համար և, առանձնապես Ասիայի, Աֆրիկայի ու Լատինական Ամերիկայի ժողովուրդների համար։ Նրանք լավ են գիտակցում, որ յոթնամյա պլանի իրագործմամբ ավելի կմեծանա Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորությունը։ Դրա շնորհիվ կաճեն խաղաղության ուժերը, կսանձահարվեն պատերազմի մուլթ ուժերը, կթուլանա կապիտալիստական սիստեմը, որում շատ են շահագրգռված Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ճնշված ժողովուրդները։ Ահա թե ինչու նրանք ի սրտե ողջունում են Սովետական Միության յոթնամյա պլանը և հայտարարում, որ իրենց իսկական բարեկամը Սովետական Միությունն է։

«Կուբան հեռու է Սովետական Միության սահմաններից,— ՍՄԿՊ XXI համագումարի ամբիոնից հայտարարեց Կուբայի ժողովրդա-սոցիալիստական պարտիայի գործկոմի անդամ ընկ. Սևերո Ագիրեն,— բայց նրա ժողովուրդը խոր հետաքրքրությամբ և իսկական հիացմունքով է հետևում սովետական մարդկանց հիանալի հաջողություններին։ Այդ հաջողությունները ոչ միայն խթան են, այլև գործուն օգնություն այն ժողովուրդներին, որոնք Կուբայի ժողովրդի նման պայքարում են իմպերիալիստական ճնշման դեմ։ Դրանք հսկայական ավանդ են խաղաղության և սոցիալիզմի գործում»։

Սովետական յոթնամյա պլանը գաղութային, կիսագաղութային և կախյալ երկրների համար ունի նաև մեկ ուրիշ, և շատ կարևոր նշանակություն։ Անկախություն ձեռք բերած և հետամնացության դեմ պայքարող երկրներին իմպերիալիստական տերությունների «օգնությունը» միշտ ուղեկցվում է քաղաքական պայմաններով։ Դա հատկապես վերաբերում է այն «օգնությանը», որ ցույց են տալիս ԱՄՆ-ը, որոնք ձգտում են ներթափանցել և իրենց քաղաքական տիրապետությունը հաստատել օգնություն ստացող երկրում։

Եվ ընդհակառակը, հետամնաց երկրները սեփական փորձով համոզվել են, որ Սովետական Միության օգնությունն անշահախնդիր է և իրենց տնտեսության վերակառուցման ու հետագա զարգացման համար ավելի հաճախ դիմում են Սովետական Միության օգնությանը։ Այսօր նրանք ի սրտե հաջողություն են ցանկանում սովետական յոթնամյա պլանին, քաջ գիտակցելով, որ ՍՍՌՄ-ի տնտեսական հզորության աճը մեծ չափով կնպաստի իրենց սեփական տնտեսության զարգացմանը և անկախության ապահովմանը։ «Մեր երկրի ժողովրդական հոծ զանգվածները,—ՍՄԿՊ XXI համագումարում ունեցած իր ելույթում ասաց Իրաքի կոմպարտիայի ներկայացուցիչ ընկ. Սալյամ Ադիլը,— արդեն վաղուց իրենց սեփական փորձով հասկացել են, թե Սովետական Միության հաղթանակները ինչ նշանակություն ունեն իրենց կենսական գործի համար, իմպերիալիզմից Իրաքի ազատագրման համար, ազգային անկախության համար»։



Միջազգային իմպերիալիզմի պրոպագանդիստները կաշվից դուրս են գալիս, հսկայական գումարներ են վատնում Սովետական Միության և սոցիալիզմի ճագերի մյուս երկրների հաջողությունները կապիտալիստական երկրների աշխատավորների աչքում նսեմացնելու համար։ Բայց, ինչպես ասում են, փաստերը համառ բան են և նրանց միշտ անտեսել հնարավոր չէ։ Բուրժուական կարգերը պաշտպանող շատ մարդիկ այժմ ստիպված են խոստովանել իրենց այն «թեորիայի» սնանկությունը, ըստ որի իբր թե Սովետական Միությունն ի վիճակի չէ հասնել և անցնել ԱՄՆ-ին։ Երկրի արհեստական արբանյակներն առաջին շշմեցնող հարվածը հասցրին բուրժուական պրոպագանդիստներին, իսկ տիեզերական հրթիռի արձակումը վերջնականապես հողմացրիվ արեց նրանց «թեորիաները» և մի ավելորդ անգամ ցույց տվեց, որ մեր երկիրը գտնվում է գիտության զարգացման առաջին դիրքերում։

Յոթնամյա պլանի կենսագործումը նոր հաջողություններ կբերի սովետական գիտությանն ու տեխնիկային, շեշտակիորեն կբարձրացնի աշխատավորության բարեկեցությունը։ Ինչպես նշված է պարտիայի XXI համագումարին ընկ. Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ, մեր երկրում աշխատավորի մինիմում աշխատավարձը յոթնամյակում կհասնի մինչև 500—600 ռուբլու, աշխատավորների ռեալ աշխատավարձը միջին հաշվով կբարձրանա 40 տոկոսով, իսկ յոթնամյակի վերջում կկիրառվի հնգօրյա աշխատանքային շաբաթ՝ 6—7 ժամյա աշխատանքային օրով։

«Մեծ պլանը, որը քննարկվում է այս համագումարում,—ասաց Գերմանիայի Կոմպարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Մաքս Ռեյմանը,— մեզ կօգնի ԳՖՌ-ում մասսաներին ակնառու կերպով ցույց տալու Սովետական Միության և սոցիալիստական երկրների խաղաղ նպատակները, ԳՖՌ-ի բնակչությանը բացատրելու, որ Սովետական Միությունը բոլոր ժողովուրդների, այդ թվում նաև գերմանական ժողովրդի բարեկամն է»։

Լեհաստանի միացյալ բանվորական պարտիայի քաղբյուրոյի անդամ ընկ. Ստեֆան Յենդրիխովսկին նշեց, որ այսօր դեռևս դժվար է լրիվ գնահատական տալ այն մեծ ազդեցությանը, որ կունենան Սովետական Միության տնտեսական հաղթանակները միջազգային դրության զարգացման վրա։ «Բայց մեկը,—շարունակում է նա,—անվիճելի է՝ դրանք կբազմապատկեն սոցիալիզմի մարտիկների շարքերը, զարգացած կապիտալիստական երկրների բնակչության համար անչափ կուժեղացնեն սոցիալիզմի ձգողական ուժը։ Այդ հաղթանակները՝ կապիտալիստական աշխարհի բանվոր դասակարգի այն մասին, որը դեռևս գտնվում է բուրժուական և սոցիալ-դեմոկրատական պրոպագանդայի

*ազդեցության տակ, ակնառու կերպով ցույց կտան, որ հենց սոցիալիզմն է, և ոչ թե կապիտալիզմը, ապահովում կյանքի բարձր կենսամակարդակը՝ առանց ճգնաժամերի և գործազրկության վտանգի, առանց տնտեսական կախման, առանց գաղութային և կիսագաղութային ժողովուրդների շահագործման»։*

*Հիրավի, հսկայական է այն նշանակությունը, որ ունեն մեր երկրի տնտեսական և քաղաքական խոշոր հաղթանակները միջազգային կոմունիստական և բանվորական շարժման աճի, նրա ամրապնդման, մարքսիզմ-լենինիզմի գաղափարներն արմատավորելու գործում։*

*Սոցիալիզմի ամեն մի հաղթանակ, փոքր թե մեծ, մի նոր հարված է միջազգային իմպերիալիզմին։ Իմպերիալիստական շրջանները լավ գիտեն, որ յոթնամյա պլանի կենսագործումը մեծ չափով կարագացնի իմպերիալիզմի կործանումը։ Հենց այս հանգամանքն է, որ անհանգստություն է առաջ բերել Արևմուտքի իմպերիալիստական շրջաններում։*

*1958 թվականի նոյեմբերի վերջերին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Նոյեմբերյան պլենումից անմիջապես հետո, Ատլանտյան պակտի պրոպագանդիստների ստեղծած «Օքսիդան» նոր ամսագրի խմբագրությունը Հռոմում հավաքեց 150-ից ավելի քաղաքական գործիչների, դիվանագետների, ֆինանսիստների, արդյունաբերողների, գիտնականների, ժուռնալիստների, որպեսզի այսպես կոչված, «Արևմուտքի լավագույն գլուխները» հուշեին, թե ինչ անել ի պատասխան սովետական յոթնամյա պլանի։ Հավաքվածների մեջ էին ՆԱՏՕ-ի գլխավոր քարտուղար Սպաակը, Իտալիայի պրեզիդենտ Գրոնկին, Իտալիայի նախկին պրեմիեր մինիստր Ֆանֆանին, Ֆրանսիայի, Բելգիայի, Հոլանդիայի դեսպանները և շատ ուրիշներ։*

*Խորհրդակցության մասնակիցներն իրենց ելույթներում բացարձակ անհանգստություն և վախ հայտնեցին կապիտալիզմի հետագա բախտի նկատմամբ։ Ի՞նչ կարող էին նրանք հակադրել կոմունիզմի կառուցման վիթխարի պլանին։ ՆԱՏՕ-ի գլխավոր քարտուղար պարոն Սպաակն առաջարկեց Ատլանտյան բլոկի «ամրապնդման» հիման վրա ՍՍՌՄ-ի նկատմամբ կիրառել վաղուց ձախողված «ուժի քաղաքականություն»։ Մյուս հռետորներն առաջարկեցին «մրցել» Սովետական Միության հետ ի հաշիվ բանվոր դասակարգի շահագործման ուժեղացման։ Սակայն այդ խորհրդակցության ամբիոնից հնչեցին նաև շատ ձայներ, որոնք ընդունում էին, որ ներկա պայմաններում դժվար է և անհնարին գտնել այնպիսի մի դեղատոմս, որը կապիտալիստական աշխարհին օգներ ընդունելու խաղաղ տնտեսական մրցության Սովետական Միության մրցահրավերը։ Որոշ մասնակիցների կարծիքով էլ, կապիտալիզմն ի վիճակի չէ խաղաղ մրցության մեջ հասնելու որևէ հաջողության։ Եվ այսպես շատ մտածեցին, ինչպես ժողովուրդն է ասում, շատ տվեցին-առան Արևմուտքի «լավագույն» գլուխները, բայց որևէ կոնկրետ եզրակացության չհանգեցին։*

*ԱՄՆ-ի կառավարող շրջաններին շատ մոտիկ կանգնած «Նյուսուիկ» շաբաթաթերթի մշտական տեսաբան Լինդլին իր մեկնաբանություններից մեկում խոստովանում է, որ հիմք չկա կասկածելու, որ Սովետական Միությունն առաջիկայում ևս ավելի խոշոր թռիչքներ կկատարի դեպի առաջ։ «Եթե մենք միջոցներ չձեռնարկենք,—գրում է նա,—ապա Սովետական Միությունն անկասկած կհասնի մեզ և, նույնիսկ, հնարավոր է կանցնի... վերջին հաշվով*



*մեզ ուղղված մրցահրավերը, անհամեմատ ավելի սարսափելի է, քան ցանկալի էր մեզ մտածել»։*

*Սակայն բոլորը չէ, որ այդպես սառն են մտածում և ուղիղ նայում ճշմարտության աչքերին։ Քիչ չէ խելակորույս այն մարդկանց թիվը, որոնք չկարողանալով աշխատավորական լայն մասսաներից թաքցնել սոցիալիստական սիստեմի աննախընթաց վերելքը, գործ են դնում ամեն ջանք՝ խեղաթյուրելու, նրանց աչքում նսեմացնելու այդ հաջողությունները, ճգնելով ապացուցել, թե սոցիալիզմի հաջողություններն իբր սպառնալիք են խաղաղությանը։ Բայց նրանց այդ ստահոդ ու զրպարտիչ պրոպագանդան արդեն կորցնում է իր ոտքի տակի հողը։*

*Խոշո՞ր է, շա՞տ խոշոր յոթնամյա պլանի միջազգային նշանակությունը։ Նրա կենսագործումը սովետական բոլոր մարդկանց պատվի գործն է։ Համոզված կերպով կարելի է ասել, որ սովետական ժողովուրդը պատվով կկատարի կոմունիստական շինարարության այդ վիթխարի ծրագիրը, որն այդքան ջերմ արձագանքներ գտավ ամբողջ աշխարհում։*

---





# ՆՈՐ ԷՊՈԽԱՅԻ ՆՈՐ ՄԱՐԴԻԿ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

Դեպի կոմունիզմ մեր առաջընթացն արագացնող յուրաքանչյուր միջոցառում, պարտիայի ամեն մի նախաձեռնում միշտ էլ ջերմ ընդունելություն և պաշտպանություն է գտել սովետական ամբողջ ժողովրդի կողմից։ Այդպես է եղել Սովետական իշխանության առաջին տարիներին, երբ տիտանական ջանքեր էին գործադրվում քայքայված ժողովրդական տնտեսությունը վերականգնելու և վերակառուցելու, այդպես է եղել երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման տարիներին, երբ հաջողությամբ կառուցվեց սոցիալիզմը, այդպես է և այժմ, երբ մեր Հայրենիքը սոցիալիզմից անցնում է կոմունիզմի։ Կոմունիզմը մեր համար արդեն ինչ-որ հեռավոր բան չէ, այն դառնում է մեր առօրյան։ Նրա հոյակապ շենքն արագորեն վեր է բարձրանում և ի տես ամբողջ աշխարհի ցուցադրում մարքսիզմ-լենինիզմի փայլուն հաղթանակը։

Կոմունիզմի կառուցման առումով նոր, աննախընթաց թռիչք է Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը։ Դա կոմունիստական շինարարության մեծ ծրագիրն է, որը քննարկվեց ու հաստատվեց ՍՄԿՊ XXI համագումարի կողմից։ Այդ ծրագրով խանդավառված սովետական ամբողջ ժողովուրդը քաջ գիտակցում է, որ դա իր երջանիկ կյանքի ծրագիրն է։ Այսօր սովետական ամեն մի քաղաքացու մեջ հայրենասիրական հպարտության այն զգացմունքն է խոսում, որ մեր ժողովուրդն իր Կոմունիստական պարտիայի շնորհիվ իրականացրել է այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք նրան հնարավորություն են տալիս թևակոխելու իր զարգացման նոր կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Յոթնամյա պլանում վառ կերպով արտահայտված է այն մեծ հոգատարությունը, որ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ցուցաբերում են ժողովրդի աճող բարօրության նկատմամբ։ Ոգեշնչված այդ հոգատարությամբ, մեր երկրի հերոս աշխատավորությունը նոր թափով ծավալեց սոցիալիստական մրցությունը, որի նպատակն է ժամկետից շուտ կատարել յոթնամյա պլանը։

Սոցիալիստական մրցության ընթացքում ծնունդ են առնում նորանոր արժեքավոր նախաձեռնություններ. մարդիկ հայտաբերում են արտադրության զարգացման լրացուցիչ ռեզերվներ, գտնում են աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, արտադրանքի թողարկումն ավելացնելու, նրա որակը բարելավելու և ինքնարժեքն իջեցնելու համար պայքարի ավելի ներգործուն, ավելի արդյունավետ ձևեր ու մեթոդներ։ Այդ տեսակետից առանձնահատուկ ուշա-



դրության են արժանի մեր պանծալի կոմերիտականների ու երիտասարդների նախաձեռնությամբ վերջերս ստեղծված կոմունիստական աշխատանքի բրիգադները, որոնք ջերմ հայրենասիրությամբ լեցուն պայքարի են դուրս եկել կոմունիստաբար աշխատելու, կոմունիստաբար սովորելու և կոմունիստաբար ապրելու համար։ Կոմունիստական աշխատանքի բրիգադների ստեղծման լուրը, նրանց ստանձնած պարտավորությունների և աշխատանքի առաջին արդյունքների մասին հաղորդագրությունները միլիոնավոր մարդկանց հիացմունքն առաջացրին։ Արձագանքելով առաջավոր ձեռնարկությունների աշխատողների այդ հայրենասիրական նախաձեռնությանը, բազմաթիվ գործարաններում, ֆաբրիկաներում, հանքերում, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում ու տրանսպորտում լայն շարժում սկսվեց կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու համար։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 1—2 ցեխից Ս. Մելքոնյանի, II—I ցեխից Հ. Աղիզյանի, II—7 ցեխից Գ. Պոլեշչուկի, էլեկտրամեքենաշինական գործարանի № 5 ցեխից Մ. Կարապետյանի, № 11 ցեխից Ռ. Մանուկյանի, № 12 ցեխից Մ. Մուրադյանի, Վ. Խաչատրյանի և Ա. Հովհաննիսյանի ղեկավարած կոլեկտիվներն առաջիններից են, որ մտան այդ շարժման մեջ և օրինակ ծառայեցին մյուսների համար։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու շարժումը գնալով ավելի խոր արմատներ է գցում ու լայն տարածում ստանում։ Դրանում սովետական մարդիկ տեսնում են աշխատանքի ու պայքարի այն նոր, բարձրագույն ձևը, որ թելադրել է ինքը՝ կյանքը և որը առավելագույն չափով համապատասխանում է մեր երկրի զարգացման արդի ժամանակաշրջանին։

Որպես նոր շարժման՝ կոմունիստական աշխատանքի բրիգադներ ստեղծելու նախաձեռնողներ, հանդես եկան Մոսկվա-Ռյազան երկաթուղու Մոսկվա—Սորտիրովոչնայա դեպոյի կոմունիստ և կոմերիտական բանվորները, այն նույն դեպոյի, որտեղ 1919 թվականին ծնունդ առան առաջին նշանավոր կոմունիստական շաբաթօրյակները։ Վ. Ի. Լենինն այդ շաբաթօրյակները կոչեց մեծ նախաձեռնություն: «Դա սկիզբն է մի հեղաշրջման,— ասում էր Վ. Ի. Լենինը,—որն ավելի դժվար, ավելի էական, ավելի արմատական, ավելի վճռական է, քան բուրժուազիայի տապալումը» (Երկեր, հատ. 29, էջ 503)։ Կոմունիստական առաջին շաբաթօրյակները բանվորների գիտակցական և կամավոր նախաձեռնությունն էին, որոնց ընթացքում նրանք ձրի կերպով աշխատում էին բոլորի համար, մեծ չափով բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, զարգացնում նոր աշխատանքային կարգապահություն, հիմք դնում տնտեսության և կյանքի սոցիալիստական պայմանների։ Դրանք նոր՝ կոմունիստական հասարակարգի ծիլերն էին։ Այդ նկատի ունենալով Վ. Ի. Լենինը 1919 թվականին գրել է. «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ո՛չ թե անձնապես աշխատողներին և ո՛չ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը՝ տասնյակ և հարյուր-միլիոնավոր մարդկանց...» (Նույն տեղ, էջ 524)։

Հետևողականորեն կենսագործելով մեծ Լենինի ցուցումները, մեր երկրի

աշխատավորները Կոմունիստական պարտիայի ամենօրյա ղեկավարությամբ հսկայական գործ են կատարել կոմունիստական շինարարության ուղղությամբ։ Սեփական ուժերով նրանք ՍՍՌՄ-ը դարձրել են զարգացած ինդուստրիայի և բարձր մեքենայացված գյուղատնտեսության հզոր տերություն, ուր նյութատեխնիկական հաստատուն բազա է ստեղծվում կոմունիզմի համար։ Այդ բանը խոստովանում են ո՛չ միայն մեր բարեկամները, այլև թշնամիներից ոմանք, որոնց աչքի առջև ամենակարճ ժամանակամիջոցում Սովետական Միությունը աներևակայելի հաղթանակների է հասել բոլոր բնագավառներում։ Այժմ հիմնովին փոխվել է մեր երկրի դեմքը, փոխվել են նաև մարդիկ, որոնք Սովետական պետության շահերը, հասարակության շահերը վեր են դասում ամեն ինչից և իրենց ստեղծագործական աշխատանքով առաջ մղում կոմունիզմի կառուցման վեհ գործը։



Կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու համար ծավալված շարժման մեջ ընդգրկված կոլեկտիվները, որոնց թիվը երկրում հասնում է ավելի քան 35 հազարի, պարտավորվել են աշխատել կոմունիստաբար։ Աշխատել կոմունիստաբար, նշանակում է՝ կատարելագործել սովետական տեխնիկան, ժամանակին կատարել ու գերակատարել պետական պլանային առաջադրանքները, հոգատար վերաբերմունք ցուցաբերել դեպի արտադրական միջոցները, խստորեն կիրառել խնայողության ռեժիմը, սիստեմատիկաբար բարելավել արտադրանքի որակը և, որը գլխավորն է, վճռականորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Այդ խնդիրների լուծումն ապահովելու նպատակով մրցության դուրս եկած կոլեկտիվները ստանձնել են կոնկրետ պարտավորություններ։ Այսպես, օրինակ՝ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի № 31 ցեխի փականագործական տեղամասի կոլեկտիվը պարտավորվել է ամեն մի հերթափոխությունում գերակատարել արտադրական պլանը, ապահովել համաչափ աշխատանքը, թողարկել բարձրորակ արտադրանք և 7 տարվա պլանը կատարել 5 տարում։ Կիրովի անվան գործարանի ապարատավարների Ս. Ոսկանյանի ղեկավարած բրիգադան խոստացել է յոթնամյա պլանով սահմանված առաջադրանքները կատարել 6 տարում, լրացուցիչ կերպով այս տարի թողարկել մի քանի տասնյակ տոննա կաուչուկ, տնտեսված հումքի քանակը հասցնել 60 տոննայի, հանդես գալ ռացիոնալիզատորական առաջարկություններով և ակտիվորեն մասնակցել գործարանի տեխնիկական պրոգրեսին։ Յոթնամյա պլանը սահմանված ժամկետից շուտ կատարելու, արտադրանքի ծավալն ընդարձակելու, խնայողություն տալու և տեխնիկական պրոգրեսին օգնելու նպատակով կոնկրետ պարտավորություններ են ստանձնել նաև ռեսպուբլիկայի մյուս արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները։

Կոմունիստական աշխատանքի բրիգադայի և նրա անդամի կոչումը պատասխանատու և պատվավոր կոչում է։ Այդպիսի կոչման համար պայքարողը պետք է աչքի ընկնի հասարակական շահերի համար իր բոլոր ունակությունները ի սպաս բերելու, կոմունիստորեն ապրելու և գործելու հաստատակամությամբ։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի մարդկանց, դեպի աշխատանքը կոմունիստական վերաբերմունք ցույց տվող մարդկանց խոսքի և գործի



միջև տարբերություն չկա։ Նրանց նշանաբանն է՝ վճռել ես աշխատել ու ապրել կոմունիստաբար՝ կատարիր վճիռդ։ Շատ կոլեկտիվներ, որոնք մտել են կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու շարժման մեջ, ամբողջ եռանդով գործի են կպել։ Նրանք ցույց են տալիս աշխատանքի նոր, ուսանելի օրինակներ, որոնք ոգևորում են բոլորին։ Ահա մի երկու օրինակ։

Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում կոմերիտական Լ. Գևորգյանի ղեկավարած բրիգադան աշխատելով կոմպլեքսային եղանակով, ստեղծում է հաստոցի հիմքը, որի վրա ամրացվում են մնացած բազմապիսի մասերը։ Այլ կերպ ասած, այստեղից է սկիզբ առնում հաստոցների պատրաստումը և, եթե այստեղ աշխատանքը խափանվի, ապա հաստոցների պատրաստումը կանգ կառնի։ Հաշվի առնելով այդ, բրիգադան ապահովում է սարքավորումների անխափան աշխատանքը և ամեն օր 12-ի փոխարեն տալիս է 16—17 հաստոցի հիմք։

Մի անգամ, երբ ցեխում աշխատանքն ավարտվել էր, բրիգադայի միջուկ պատրաստող խումբը տուն չէր գնում։ Այդ օրը, հողախառնիչ մեքենայի վթարի պատճառով, նրանք չէին աշխատել։ Ի՞նչ անել, տո՞ւն գնալ։ Բայց չէ՞ որ բրիգադան հաստոցի կաղապարի միջուկներով ապահովված չի լինի, նրա նորմալ աշխատանքը կխափանվի։ Ոչ, բրիգադային այդպիսի վիճակում, թեկուզ մեկ օրով, թողնել չի կարելի, որոշեցին միջուկ պատրաստող խմբի անդամները և այդ օրը աշխատեցին մինչև երեկոյան ժամը 9-ը և բրիգադայի հաջորդ օրվա անխափան աշխատանքն ապահովելու համար պատրաստեցին հաստոցի 16 կաղապարի միջուկ։ Այդ բանը նրանք կատարեցին առանց հրամանի, առանց որևէ կարգադրության։ Դա նրանց սեփական նախաձեռնությունն էր, հանրային շահի բարձր գիտակցականության դրսևորումը։

Կիրովականի տրիկոտաժ ֆաբրիկայի մետաքսի կարող ցեխի՝ Լենա Քոչարյանի ղեկավարած բրիգադան, որը պարտավորվել է ամեն օր 1000-ի փոխարեն տալ 1500 կտոր առաջին տեսակի մետաքսյա գործվածքեղեն, աշխատանքի բարձր արտադրողականության փայլուն օրինակ է տալիս։ Աշխատանքի տեղը լավ նախապատրաստելու, սարքավորումների տեխնիկական խնամքը բարելավելու, ամուր կարգապահություն սահմանելու և համագործակցված կերպով աշխատելու շնորհիվ բրիգադայի անդամները օրվա առաջադրանքը սիստեմատիկաբար գերակատարում են 40 տոկոսով։

Աշխատանքում դրսևորելով սովետական մարդու, կոմունիզմ կառուցող մարդու վեհ հատկությունները, կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող կոլեկտիվների անդամները միմյանց նկատմամբ ցուցաբերում են մտերմություն, ընկերական ջերմ վերաբերմունք, փոխադարձ օգնություն. բոլորը հետաքրքրվում են մեկի, իսկ մեկը՝ բոլորի աշխատանքով։ Նրանք ջանքեր են գործադրում, որպեսզի բոլորը քայլեն համընթաց, բոլորը կատարեն ու գերակատարեն արտադրական պլանները։

Երևանի կաբելի գործարանի էմալապատման ցեխի բրիգադավար Ն. Փահլևանյանը պատմում է, որ եթե բրիգադայի 11 անդամից 10-ը աշխատանքը վերջացրել է, իսկ մեկը մնացել, ապա աշխատանքը վերջացրած բանվորները այդ մեկին օգնում են գործն արագացնելու, աշխատանքային օրը բարձր ցուցանիշներով ավարտելու, մեքենան կարգի բերելու և հաջորդ օրվա համար աշխատանքի տեղը լավ նախապատրաստելու համար։ Փաստորեն նրանք աշխատում են ուս-ուսի տված, միասնական ջանքերով, որի շնորհիվ էլ արտա-

*արտադրանքի թողարկման պետական պլանային առաջադրանքը սիստեմատիկաբար գերակատարվում է։ Դրանք մեր նոր էպոխայի նոր մարդիկ են, որոնք իրենց ամբողջ ուժերն ու եռանդը ներդնում են կոմունիզմի կառուցման գործում։*

*Սակայն միայն արտադրության մեջ չէ, որ մրցության դուրս եկած կոլեկտիվների անդամները օգնում են միմյանց։ Նրանցից շատերը միմյանց օգնում են նաև անձնական գործում։ Ահա մի բնորոշ օրինակ։ Կիրովի անվան գործարանի 30—30 «Ա» ցեխի բանվորներից Ա. Գրիգորյանը և Մ. Մարտիրոսյանը գործընկերների օրինակով մասնակցում են նոր բնակելի տան կառուցմանը, որտեղ իրենք բնակարաններ պետք է ստանան։ Հիվանդության պատճառով նրանք սահմանված օրերին չէին կարողացել մասնակցել շինարարությանը։ Իմանալով այդ մասին, ցեխի հերթափոխության 15 բանվոր նրանց փոխարեն մասնակցեցին շինարարությանը և կատարեցին Թերի աշխատանքը։ Այս և նման բազմաթիվ օրինակները ցույց են տալիս, որ սոցիալիստական հասարակարգում, ուր վերացված է մարդու կողմից մարդու շահագործումը, ուր բոլորն աշխատում են մի նպատակի համար, ուր նյութական բարիքների արտադրությունն ի սպաս է դրված ամբողջ հասարակության պահանջմունքների բավարարմանը, մարդը աստիճանաբար դադարում է միայն իր անձնական շահերի մասին մտածելուց։ Ունենալով լայն մտահորիզոն, նա առաջին հերթին մտածում ու գործում է հօգուտ ընդհանուրի, հօգուտ ամբողջ հասարակության շահերի, զգալով, որ իր բարօրությունն ամենից առաջ կախված է ողջ հասարակության բարօրությունից։*

*Այժմ, երբ ամբողջ երկրով մեկ ծավալուն աշխատանք է կատարվում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար, կարևոր նշանակություն է ստանում խնայողության ռեժիմի պահպանումը, հումքի, էլեկտրաէներգիայի ու միջոցների տնտեսումը, որը նյութական բարիքների արտադրության ավելացման ռեզերվներից մեկն է։ Կոմունիստաբար աշխատանքի դուրս եկած բանվորներն ու բանվորուհիները հրաշալի օրինակներ են ցույց տալիս այդ ռեզերվի օգտագործման ուղղությամբ։ Երևանի ալյումինի գործարանի էլեկտրոլիզի ցեխի Գ. Ադամյանի ղեկավարած բրիգադան իր առջև խնդիր է դրել վառարաններում ամեն կերպ իջեցնել էլեկտրաէներգիայի լարվածությունը և դրանով նպաստել բարձրորակ մետաղի ստացմանն ու էլեկտրաէներգիայի տնտեսմանը։ Այդ ճանապարհով բրիգադան մեկ ամսում խնայել է այնքան էլեկտրաէներգիա, որի հաշվին կարող են աշխատել մեքենաշինական մի քանի ձեռնարկություններ։ Երևանի կարի առաջին ֆաբրիկայի Ս. Ներսիսյանի ղեկավարած ցեխի կոլեկտիվն աշխատանքն օրինակելիորեն կազմակերպելու շնորհիվ առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրել է 98 տոկոսի և արդեն խնայողության ֆոնդն է մուծել 35 հազար ռուբլի։ Կաշվի գործարանի պատրաստման ցեխի՝ Գարուշ Գևորգյանի ղեկավարած բրիգադան մրցության առաջին շաբաթում պլանային առաջադրանքը կատարեց 125 տոկոսով և դրա հետ միասին առաջվա 6 տոկոսի փոխարեն տվեց 9 տոկոս թափթփուկների խնայողություն։ Խնայողության ուղղությամբ առանձնապես աչքի է ընկնում կիրովցիների գովելի աշխատանքը։ Նրանց ստեղծած կաուչուկի նոր տեսակների արմատավորումից երկրի կոշիկի ֆաբրիկաները տարեկան կխնայեն 20 միլիոն ռուբլի և այլն։*

*Եթե նկատի ունենանք, որ ներկայումս ՍՍՌՄ-ում արտադրության ծախ-*



*քերի իջեցման յուրաքանչյուր տոկոսը կազմում է 12 միլիարդ, իսկ 1965 թվականին այն կկազմի 21 միլիարդ ռուբլի, ապա պարզ կլինի, թե ինչպիսի բացառիկ կարևոր նշանակություն ունի ինքնարժեքի իջեցման և խնայողության ռեժիմի համար մղվող պայքարը։ Այդ պայքարի սուր ծայրն ուղղված է անտնտեսվարության, շռայլման, ժողովրդական բարիքի նկատմամբ անփույթ վերաբերմունքի ամեն կարգի դրսևորումների դեմ։*

*ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարին տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց, որ «Առաջիկա յոթնամյակում արդյունաբերության, գյուղատնտեսության և տրանսպորտի զարգացման պլանների իրագործումը, շինարարական ծրագրի կատարումը հնարավոր է տեխնիկայի մակարդակի զգալի բարձրացման և սոցիալիստական ընդլայնված վերարտադրության ու կուտակման գլխավոր աղբյուրի, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման հիմքի՝ հանրային աշխատանքի արտադրողականության բարձրացման դեպքում»։*

*Պարտիան չափազանց լուրջ ուշադրություն է դարձնում աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա, և դա հասկանալի է։ Բավական է ասել, որ 1965 թվականին արդյունաբերական արտադրանքի աճման երեք քառորդը կստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Ահա թե ինչու կյանքի նոր պայմաններում ծնունդ առած սոցիալիստական մրցության առաջամարտիկները՝ կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարողները, իրենց բոլոր ջանքերը թափում են աշխատանքի արտադրողականության բարձրացման վրա։ Երևանի, Լենինականի, Կիրովականի և ռեսպուբլիկայի մյուս քաղաքների մի շարք արդյունաբերական ձեռնարկություններից շատ կոլեկտիվներ դուրս գալով համաժողովրդական սոցիալիստական մրցության, պարտավորվել են 1965 թվականի համար սահմանված աշխատանքի արտադրողականության բարձրացման մակարդակին հասնել մեկից երկու տարի շուտ՝ 1963—1964 թվականներին։ Նրանք որոշել են այդ բանին հասնել տեխնիկական պրոգրեսի, ռացիոնալիզատորական ու գյուտարարական առաջարկությունների արմատավորման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, արտադրության կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման միջոցով։*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացման ուղղությամբ ստանձնած պարտավորությունների կենսագործման համար արդեն որոշակի գործ է կատարվում։ Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի առանձին ցեխերի բրիգադաներ նոր սարքավորումների ու տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման միջոցով կարճ ժամանակում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել են մոտ 15 տոկոսով. շոգեքարշային դեպոյի նորոգման ցեխի բրիգադան շոգեքարշերի նորոգման ժամանակամիջոցը կրճատել է մեկ ժամով. էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանի մեխանիկական ցեխի կեռնաների և շրջանակների պատրաստման տեղամասի՝ Մ. Մխիթարյանի ղեկավարած բրիգադան վերջին երկու ամսում աշխատանքի արտադրողականությունը բարձրացրեց 50 տոկոսով, իսկ ինքնարժեքը իջեցրեց 30 տոկոսով։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար ծավալված պայքարի ընթացքում հատկապես ուսանելի օրինակներ են տալիս երկրի առա-*

ջավոր ձեռնարկությունների այն կոլեկտիվները, որոնք արդեն արժանացել են կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչման։ Այսպես, Խարկովի տրակտորային գործարանի տրակտորային երրորդ ցեխի կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները մանրամասն ուսումնասիրելով իրենց ունեցած հնարավորությունները, եկել են այն եզրակացության, որ իրենց մեխանիկական չորրորդ տեղամասում աշխատանքի արտադրողականությունը յոթնամյակի առաջին տարում կարող են բարձրացնել 20 տոկոսով, երկրորդ տարում՝ 25 տոկոսով, երրորդ տարում՝ 28 տոկոսով, չորրորդ տարում՝ 30 տոկոսով, հինգերորդ տարում՝ 120 տոկոսով, վեցերորդ տարում՝ 25 տոկոսով, յոթերորդ տարում՝ 30 տոկոսով։ Այսպիսով, յոթնամյակի ընթացքում այդ տեղամասում աշխատանքի արտադրողականությունը մեկ աշխատողի հաշվով կաճի 278 տոկոսով, որը 5 անգամով ավելի է, քան սահմանված է յոթնամյա պլանով։ Նրանց հաշվումները մտածված են ու ռեալ։ Այսպես, ընթացիկ տարում տեղամասում վերատեղադրվելու են 4 հաստոց, որով կկատարելագործվի տեխնոլոգիական գիծը, իսկ աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 25 տոկոսով։ Յոթնամյակի հինգերորդ տարում գործող հաստոցների բազայի հիման վրա տեղամասում շարք կմտնի երկու ավտոմատ գիծ, որով կավարտվի աշխատանքի մեքենայացումը։ Դրա միջոցով աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 120 տոկոսով։ Տեղամասում բոլոր բանվորները որոշել են դառնալ ռացիոնալիզատորներ։ Նրանցից ամեն մեկը պարտավորվել է տարեկան անել ոչ պակաս, քան մեկ ռացիոնալիզատորական գործարար առաջարկություն։ Նրանք հաշվել են, որ միայն ռացիոնալիզացիայի հաշվին յոթնամյակի վերջում աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա մոտավորապես 40—50 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացման համար նրանք նշել են նաև այլ ուղիներ, որոնք պարզորոշ կերպով ցույց են տալիս, թե որքան ռեալ է նրանց ստանձնած պարտավորությունը, որի կենսագործման ուղղությամբ լարված աշխատանք են կատարում։

Աշխատել կոմունիստաբար, նշանակում է նաև լինել ազնիվ, այսինքն՝ խստորեն պահպանել պետական օրենքները, կարգ ու կանոն մտցնել սեփական աշխատանքում և անձնական բարձր պատասխանատվությամբ կատարել հանձնարարված գործը։ Ազնվության նոր, վառ օրինակներ են տալիս առաջավոր ձեռնարկությունների կոմունիստական աշխատանքի բրիգադների անդամները։ Նրանցից շատերը արտադրանքը թողարկում են սեփական մարկայով, նրա որակի պատասխանատվությունը ամբողջապես վերցնում են իրենց վրա և առանց որևէ ստուգման պահեստ հանձնում։ Դա հնարավորություն է տալիս կրճատելու արտադրանքի որակն ստուգողների հաստիքները և այսպես կոչված «ստուգողներին» ուղարկել այնպիսի աշխատանքի, որը նյութական արտադրանք է տալիս։ Ավելին, կոմունիստաբար աշխատող առանձին ընկերներ հարց են դնում անձամբ հաշվի առնել սեփական աշխատանքը, որով որոշ հաշվիչներ կազատվեն անարտադրողական աշխատանքից և գործի կանցնեն բուն արտադրության մեջ։

***

Սովետական մարդիկ գիտակցում են, որ կոմունիզմը պահանջում է աշխատանքի ավելի բարձր արտադրողականություն։ Ահա թե ինչու կոմունիստական աշխատանքի բրիգադները մեծապես հոգում են արտադրության հետագա ավտոմատացման ու կոմպլեքսային մեքենայացման, ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի տիրապետման, բոլոր բանվորների կուլտուրական և տեխնիկական մակարդակի բարձրացման համար։ Խոսքը վերաբերում է ոչ միայն նրան, որ շատ արտադրանք տրվի, այլև նրան, որ դա տրվի ավելի քիչ ժամանակի ու միջոցների ծախսումով, որ արտադրական կուլտուրան լինի ավելի բարձր։ Դրան կարելի է հասնել միայն սովետական ամեն մի քաղաքացու կուլտուրական և կրթական մակարդակի բարձրացման, նրան ժամանակակից գիտության հիմունքներով զինելու միջոցով։ Այստեղից էլ պարզ է, թե մեր հասարակության զարգացման արդի էտապում ինչպիսի կարևոր նշանակություն է ստանում աշխատավորների և առանձնապես երիտասարդների կրթության գործը, որի համար պարտիան ու կառավարությունը ստեղծել են բոլոր պայմանները։



Կոմունիստաբար աշխատանքի դուրս եկած առաջավոր բանվորական կոլեկտիվները պարտավորվել են նաև կոմունիստաբար սովորել։ Առանց աշխատանքից կտրվելու, նրանք երեկոյան բաներիտ դպրոցներում, տեխնիկումներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում ընդհանուր և տեխնիկական կրթություն են ստանում, կոնկրետ գիտելիքներ ձեռք բերում, որն իրենց պրակտիկ հարուստ փորձի հետ միասին, նրանց օգնում է բազմակողմանիորեն զարգացած կադրեր դառնալու, տեխնիկային լավ տիրապետելու և արտադրական նորանոր հաջողությունների հասնելու։ Այն բանվորները, որոնք տարրական կրթություն ունեն, ձեռնամուխ են լինում միջնակարգ կրթություն ստանալու, իսկ միջնակարգ կրթություն ստացողները՝ բարձրագույն կրթություն ստանալու։ Այս ուղղությամբ առանձնապես աչքի ընկնող աշխատանք է կատարվում Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանում։ Այստեղ 670 կոմերիտականներ ու երիտասարդներ առանց արտադրությունից կտրվելու սովորում են բաներիտ դպրոցներում, տեխնիկումներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում։

Կոմունիստաբար սովորել, չի նշանակում միայն սահմանափակվել հանրակրթական ու տեխնիկական գիտելիքների ուսումնասիրությամբ։ Իհարկե, դրանք այժմ շատ կարևոր են և շատ անհրաժեշտ։ Բայց կա մի գիտություն, որն անհրաժեշտ է բոլոր կադրերին. դա մարքսիստական-լենինյան գիտությունն է, որը մեզ հնարավորություն է տալիս ճիշտ պատկերացում ունենալ հասարակական կյանքի բարդ պրոցեսների, նրա օրինաչափությունների և մեր զարգացման մասին։ Կադրերին, մեր բոլոր աշխատավորներին այն ճիշտ կողմնորոշում է տալիս պրակտիկ գործունեության մեջ, նպաստակամղում է միշտ դեպի առաջ ընթանալ և ամեն ինչ նվիրաբերել կոմունիստական հասարակարգի կառուցման վսեմ գործին։ Ահա թե ինչու արտադրության շատ ու շատ առաջավորներ քաղդպրոցներում, խմբակներում, սեմինարներում, մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարաններում, կամ քաղաքական ինքնակրթության միջոցով սիստեմատիկաբար ուսումնասիրում են մարքսիզմ-լենինիզմը։ Այդ գործում նրանց լուրջ օգնություն են ցույց տալիս մեր պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական Կոմիտեի որոշումները, որոնք մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական կիրառման ու զարգացման անգնահատելի օրինակներ են։

Ինչպես աշխատանքում, այնպես էլ ուսման մեջ, կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար պայքարող կոլեկտիվների անդամները փոխադարձաբար օգնում են միմյանց և պայմաններ ստեղծում, որպեսզի բոլո-

*րը սովորեն, բոլորը կրթություն ստանան։ Նրանք անտարբեր չեն, երբ այս կամ այն ընկերը ուշանում է դասերից, կամ ժամանակին չի կատարում ուսուցիչների տված հանձնարարությունները։ Նրանք լավ գիտեն, որ դա պատիվ չի բերում կոմունիստական աշխատանքի համար մրցության դուրս եկած կոլեկտիվի անդամին, որը պետք է առաջավոր լինի նաև ուսման մեջ։ Այսպիսի դեպքերում կոլեկտիվն իր նման անդամների նկատմամբ ձեռք է առնում դաստիարակչական միջոցներ։ Օրինակ, Երևանի հաստոցաշինական գործարանի ձուլման ցեխի բանվոր Մ. Մկրտչյանը, որն իր ջանասեր աշխատանքով վայելում է կոլեկտիվի համակրանքը, սովորում է հաստոցաշինական տեխնիկումի առաջին կուրսում։ Դա ուրախություն է պատճառում նրա աշխատանքային ընկերներին։ Բայց վերջերս նրանք իմացան, որ Մկրտչյանը պարապմունքը թողել և 2 ժամ շուտ է տուն գնացել։ Լինելով լավ, իսկական սրտացավ ընկերներ, նրանք դրա համար նախատեցին Մկրտչյանին ու բացատրեցին, որ չի կարելի կոլեկտիվի պատվի հետ խաղալ, որը որոշել է պատասխանատու լինել իր յուրաքանչյուր անդամի թե՛ աշխատանքի և թե՛ ուսման համար։ Այսպիսի դեպքերում ընկերների քննադատությունից ու խստապահանջությունից չեն վիրավորվում. չվիրավորվեց և Մկրտչյանը, որը լավ աշխատելու հետ միասին սկսեց նաև լավ սովորել։*

*Կոմունիստաբար սովորելու պարտավորությունը չափազանց կարևոր նշանակություն ունի մեր երիտասարդության համար։ Նա պետք է տիրապետի գիտությանը, նա պետք է կոմունիզմ սովորի։ Դա մեր մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի պատգամն է, որի համաձայն «...կոմունիզմին անցնել ցանկացող ամբողջ երիտասարդությունն ընդհանրապես պետք է կոմունիզմ սովորի» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 31, էջ 344)։ Վ. Ի. Լենինը նշել է, որ կոմունիզմ պետք է սովորել աշխատանքում ու պայքարում, որ «Առանց աշխատանքի, առանց պայքարի՝ կոմունիստական բրոշյուրներից և աշխատություններից կոմունիզմի գրքային իմացությունը բացարձակապես ոչինչ չարժե, որովհետև դա կշարունակեր թեորիայի և պրակտիկայի հին խզումը, այն հին խզումը, որը կազմում էր հին բուրժուական հասարակության ամենազզվելի գիծը» (նույն տեղ, էջ 346)։*



*Կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչման արժանանալու համար մրցության դուրս եկած շատ ու շատ երիտասարդական կոլեկտիվներ ձգտում են կոմունիստական աշխատանքի ու ապրելակերպի սկզբունքները կյանքում կիրառել միասնաբար։ Կոմունիստաբար աշխատողը, կոմունիստաբար էլ պետք է ապրի. իսկ ապրել կոմունիստաբար, նշանակում է խստորեն պահպանել սոցիալիստական հասարակարգի համակեցության կանոնները, կոմունիստական մորալը, տանը, աշխատանքում և դրսում լինել օրինակելի, կուլտուրական ու կարգապահ, անհաշտ պայքար տանել կապիտալիզմի այնպիսի մնացուկների դեմ, ինչպիսիք են՝ ծամոլությունը, պորտաբուծությունը, խուլիգանությունը և սոցիալիստական համակեցության կանոնների ու բարոյական նորմաների այլ խախտումները։ Անհրաժեշտ է հասարակական ուժեղ կարծիք ստեղծել նրանց դեմ, ովքեր հանդգնում են իրենց անհատական բարեկեցությունը կառուցել հասարակական սեփականության հաշվին, դիմում են*



*կեղծ ու խարդախ գործարքների, ի չարն են գործադրում իրենց պաշտոնական դիրքը։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը սովետական բոլոր մարդկանց համար ստեղծել են բարեկեցիկ ու կուլտուրական կյանքի պայմաններ։ Այդ պայմաններն է՛լ ավելի ու նշանակալից չափով կբարելավվեն յոթնամյակի տարիներին։ Խնդիրն այն է, որ ավելի լավ օգտագործվեն այդ պայմանները հանուն հասարակության բոլոր անդամների բարեկեցության։ Այդ ուղղությամբ բանվորական շատ կոլեկտիվներ հրաշալի օրինակ են տալիս։ Լրջորեն հոգալով իրենց անդամների հոգեկան աշխարհի հարստացման նկատմամբ, նրանք աչքի են ընկնում իրենց կարգապահությամբ, կուլտուրայով, կոլեկտիվի հանգիստը լավ անցկացնելու համար գործադրած ջանքերով։ Ամենօրյա աշխատանքում արտադրական ձեռնարկությունների շատ կոլեկտիվի անդամներ ավելի են մտերմանում իրար հետ, ավելի հոգատար ու ուշադիր են դառնում դեպի աշխատանքային ընկերը։ Առանձին դեպքերում, երբ կոլեկտիվի այս կամ այն անդամը թույլ է տալիս իրեն ոչ վայել արարք, թեկուզ ինչ բնույթի էլ այն լինի, կոլեկտիվը լռությամբ չի անցնում դրա կողքով։ Կոլեկտիվի անդամներն իրենց սրբազան պարտքն են համարում տվյալ ընկերոջը մատնացույց անել թույլ տված անվայել արարքը, քննադատել և ուղղել նրան։ Այլ կերպ ասած, նրանք ստեղծում են այնպիսի մթնոլորտ, որը դաստիարակչական խոշոր նշանակություն է ունենում և հենց սկզբից կանխում է թույլ տված սխալը։ Դա շնորհակալ աշխատանք է, որն ամեն կերպ պետք է խրախուսվի ու ծավալվի։*



*ՍՄԿԿ XXI համագումարում ունեցած իր ելույթում Դոնբասի «Կրասնոդոնուգոլ» տրեստի № 2 ածխահանքի ածխահատների անվանի բրիգադավար Ն. Յա. Մամայը ասաց, որ ընկեր Խրուշչովի զեկուցման թեզիսների քննարկման ժամանակ մենք պարտավորվեցինք ՍՄԿԿ XXI համագումարի բացման օրվա առթիվ և ամբողջ 1959 թվականի ընթացքում յուրաքանչյուր ածխահատի հերթափոխային նորմայից բացի, ամեն օր արդյունահանել 2,5-ական տոննա ածուխ և ածխի մեկ տոննայի ինքնարժեքը իջեցնել 1,5 ռուբլով։ Ես այսօր մեծ բերկրանքով համագումարին զեկուցում եմ, ասաց ընկ. Մամայը, որ մենք մեր պարտավորությունները պատվով ենք կատարում։ Մեր բրիգադայի ածխահատների հաշվին գրանցված է պլանից ավելի արդյունահանված 12,100 տոննա ածուխ։ Բրիգադայի յուրաքանչյուր անդամ նախահամագումարյան օրերին միջին հաշվով օրական նորմայից ավելի արդյունահանում էր երեքական տոննա ածուխ։ Լավ աշխատանքի համար կոլեկտիվին շնորհված է կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչում։*

*Այս օրինակը ցույց է տալիս, թե ինչպիսի աշխատանքի ու ինչպիսի արդյունքի դեպքում է այս կամ այն կոլեկտիվին տրվում կոմունիստական աշխատանքի բրիգադայի բարձր կոչումը։ Հաշվի առնելով այդ, մրցության դուրս եկած յուրաքանչյուր կոլեկտիվ պետք է հետևողական ու լարված աշխատանք կատարի և այնպիսի արդյունքների հասնի, որոնք նրան իրավունք կտան ստանալու կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչում։ Այս գործում չպետք է թույլ տալ շաբլոն մոտեցում կամ անտեղի շտապողա-*

*կանություն։ Անհրաժեշտ է կոմունիստական աշխատանքի բրիգադների փորձը լայնորեն մասսայականացնել և նրանց օրինակով ցույց տալ, թե ինչ ճանապարհներով ու միջոցներով է հնարավոր հասնել այդ կոչման։ Տարակույս չկա, որ մեր պանծալի կոմերիտմիությունը պարտիական կազմակերպությունների օգնությամբ առաջ կմղի այդ գործը և գնալով կկրկնապատկի ու կեռապատկի կոմունիստական աշխատանքի բրիգադների թիվը։*

*Արդյունաբերության, տրանսպորտի ու գյուղատնտեսության բնագավառներում աշխատող երիտասարդական առաջավոր կոլեկտիվները պայքարելով կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման արժանանալու համար, լուրջ և պատասխանատու պարտավորություններ են ստանձնել։ Սխալ կլիներ կարծել, որ ստանձնած պարտավորությունների կատարումը միայն իրենց՝ երիտասարդների գործն է։ Մեր բոլոր կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները պետք է կոմունիստաբար աշխատելու, սովորելու և ապրելու համար պայքարի դուրս եկած ընկերներին, մեր պանծալի կոմերիտականներին ու երիտասարդներին բազմակողմանի օգնություն ցույց տան։ Նրանք պետք է համապատասխան միջոցներ ձեռք առնեն, որպեսզի բրիգադները ժամանակին ստանան անհրաժեշտ քանակությամբ հումք և սարքավորում, արագորեն արմատավորեն ռացիոնալիզատորական արժեքավոր առաջարկությունները և ապահովեն բարձր արտադրողականությամբ աշխատանքը, որն անգնահատելի ավանդ է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու և գերակատարելու համար սովետական ողջ ժողովրդի մղած հայրենասիրական պայքարում։*

---

# ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՏՎԱՐԸ ԵՎՐՈՊԱՅՈՒՄ

*Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ*

*Հիտլերյան ֆաշիզմի ջախջախումից հետո Գերմանիայի արևելյան մասում հակաֆաշիստական ժողովրդական ուժերի համառ պայքարի հետևանքով ստեղծվեց հակաֆաշիստական դեմոկրատական կարգ։*

*Արևելյան Գերմանիայի աշխատավորները բանվոր դասակարգի գլխավորությամբ 1949 թվականի հոկտեմբերի 7-ին հիմնադրեցին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան՝ Գերմանիայի բանվորա-գյուղացիական պետությունը։ ԳԴՌ-ի կառավարությունն անհապաղ խոշոր միջոցառումներ կիրառեց երկրի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքում արմատական վերափոխություններ կատարելու ուղղությամբ։ Հողային ռեֆորմի իրականացման շնորհիվ կալվածատերերին ու յունկերներին պատկանող հողը բաժանվեց հողազուրկ և սակավահող գյուղացիներին։ Ազգայնացվեցին մոնոպոլիստների, բանկիրների և պատերազմի հանցագործների արդյունաբերական ձեռնարկությունները և դրանք ի սպաս դրվեցին ժողովրդական տնտեսության զարգացման պահանջներին։ Երկրի աշխատավոր բնակչությունը մեծ խանդավառությամբ ձեռնամուխ եղավ պատերազմի հետևանքով երկրի ավերված տնտեսության վերականգնմանը և հետագա զարգացմանը։ Թե ինչպիսի խոշոր դժվարություններ էին կանգնած այդ ժամանակ ԳԴՌ-ի աշխատավորության առջև՝ այդ մասին են խոսում հետևյալ փաստերը։*

*1946 թվականին ներկայիս ԳԴՌ-ի տերիտորիայում արդյունաբերական արտադրանքի թողարկումը, 1936 թվականի համեմատությամբ, կազմում էր մոտ 43 տոկոս, այդ թվում՝ մեքենաշինության բնագավառում՝ 30 տոկոս, իսկ մետալուրգիայի բնագավառում՝ մոտ 20 տոկոս։ Արևելյան Գերմանիայի արդյունաբերության մի շարք կարևոր ճյուղեր զրկվել էին այնպիսի ձեռնարկություններից, որոնք Արևմտյան Գերմանիայում գտնվելու հետևանքով ԳԴՌ-ին չէին մատակարարում անհրաժեշտ հումք և արդյունաբերական սարքավորում և ոչ էլ ներմուծում էին ԳԴՌ-ի հումքը՝ հետագա վերամշակման ենթարկելու համար։ Այսպես, օրինակ, 1936 թվականին ներկայիս ԳԴՌ-ի տերիտորիայում արտադրվում էր ամբողջ Գերմանիայում թողարկվող մարդատար ավտոմոբիլների մոտ 37 տոկոսը։ Բայց մատակարարող այն ձեռնարկությունների արտադրանքը, որոնք ավտոմոբիլային արդյունաբերությունը ապահովում էին էլեկտրատեխնիկայով, առանցքակալներով, ռետինով և ապակիով, ներկայիս ԳԴՌ-ի տերիտորիայում կազմում էին միայն 14 տոկոս։ Անհրաժեշտ էր ստեղծել այնպիսի ճյուղեր, որոնք արտադրանք մատակարարեին արդյունաբերության համապատասխան ճյուղերին։ Դա մեծ դժվարություն էր, որի հաղթահարումը պահանջում էր ժամանակ, միջոցներ և մեծ ջանքեր։*

ԳԴՌ-ի աշխատավորությունը հայրենասիրական մեծ պայքար ծավալեց դժվարությունները հաղթահարելու և ժողովրդա-տնտեսական այդ կարևոր խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիայի Կենտկոմը և ԳԴՌ-ի կառավարությունը ժողովրդի ջանքերն առաջին հերթին ուղղեցին դեպի արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծումը, ինչպես նաև դեպի երկրի էկոնոմիկայի էներգետիկ և հումքային բազայի ընդլայնումը:

Անցած ինն տարիները փայլուն կերպով ապացուցեցին ո՛չ միայն ԳՍՄՊ-ի և ԳԴՌ-ի կառավարության տնտեսական քաղաքականության ճշտությունը, այլև վիթխարի ուժով դրսևորեցին ԳԴՌ-ի աշխատավորության մեծ վճռականությունը այդ քաղաքականությունը հաստատակամորեն իրականացնելու գործում: Ժողովրդատնտեսական պլանների հաջող կենսագործման շնորհիվ ռեսպուբլիկայում ստեղծվեց հզոր արդյունաբերություն: Արդեն 1950 թվականին երկամյա պլանի (1949—1950 թթ.) կենսագործման շնորհիվ արդյունաբերական արտադրությունը հասավ նախապատերազմյան մակարդակին: Այնուհետև առաջին հնգամյա պլանի (1951—1955 թթ.) կատարումը արդյունաբերական արտադրությունը հասցրեց մի նոր խոշոր վերելքի: Ռեսպուբլիկայի առաջին հնգամյա պլանի վերջին տարում, 1955 թվականին, երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը, նախապատերազմյան 1936 թվականի համեմատությամբ, կրկնապատկվեց: Իսկ ներկայումս ԳԴՌ-ն արդյունաբերական համախառն արտադրանքով եվրոպական պետությունների մեջ հաստատապես գրավել է հինգերորդ տեղը:

Ռեսպուբլիկայի արդյունաբերության բնագավառում տեղի ունեցած սոցիալիստական վերափոխությունների շնորհիվ սոցիալիստական ձեռնարկությունների արտադրանքի բաժինը արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ 1955 թվականի 87,3 տոկոսի փոխարեն, 1957 թվականին կազմեց 88,7 տոկոս: Վերջին չորս տարիների ընթացքում պողպատի արտադրությունն ավելացել է 29,7 տոկոսով, չուգունինը՝ 32,4 տոկոսով, էլեկտրաէներգիայինը՝ 34 տոկոսով: Միայն 1958 թվականի առաջին կիսամյակում ռեսպուբլիկայում արտադրվել էր 1,5 միլիոն տոննա պողպատ և 860 հազար տոննա չուգուն: Էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1954 թվականի 26,044 միլիարդ կիլովատ ժամի փոխարեն, 1958 թվականին հասավ 34,828 միլիարդ կիլովատ ժամի: Ռեսպուբլիկայի մետալուրգիական բազայի ընդլայնման գործում վիթխարի դեր խաղաց «Օստ» մետալուրգիական կոմբինատի կառուցումը Ստալինշտադտ քաղաքում: Արդեն կոմբինատում աշխատում են վեց դոմենյան վառարաններ, որոնք տարեկան տալիս են մոտավորապես մեկ միլիոն տոննա չուգուն:

Մեծ հաջողություններ կան քարածխի արդյունահանման և քիմիական նյութերի արտադրության բնագավառում: Աշխարհում առաջին անգամ ԳԴՌ-ում հաջողվեց գորշ ածխից ստանալ բարձր ջերմային կոքս, որի արտադրության համար կառուցվեց խոշոր կոմբինատ: Քիմիական արդյունաբերության անհրաժեշտ ծծմբաթթու ստանալու համար (մինչ պատերազմը դրա 80 տոկոսը արտադրվում էր այժմյան Արևմտյան Գերմանիայի տերիտորիայում) լայնորեն օգտագործվեց գիպս, որը ծծմբաթթվի ստացման հիանալի հումք դարձավ: Ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա հաջողությունների թվին պետք է դասել նաև 10 հազար տոննա ջրատարողություն ունեցող ծովա-



յին նավերի կառուցումը, ինչպես նաև ուրանի հանքի հանույթի արդյունաբերության զարգացումը:

Լայպցիգի 1958 թվականի գարնանային տոնավաճառը վառ կերպով ցուցադրեց արդյունաբերության հաջողությունները: Արևմտա-գերմանական խոշոր կապիտալին պատկանող «Ֆրանկֆուրտեր ալգեմեյնե ցայտունգ» թերթը տոնավաճառի օրերին ԳԴՌ-ի և նրա արտադրած իրերի մասին գրել է. «Նրա մեքենաները, չափիչ սարքավորումները, օպտիկական գործիքները և նրա ինքնաթիռաշինությունը իրոք որ իսկական տնտեսական հրաշք են»:

ԳԴՌ-ի արդյունաբերության հզոր վերելքի բնորոշ կողմը ո՛չ միայն արտադրանքի նոր տեսակների արտադրության կազմակերպումն է ու թողարկվող արտադրանքի անընդհատ ընդլայնվող ծավալը, այլև, որն ամենից ավելի կարևորն է՝ բանվոր դասակարգի սոցիալիստական գիտակցության աճը, նրա՝ որպես պետական իշխանությունն իրականացնողի դերի ու ազդեցության վիթխարի աճը երկրի ամբողջ հասարակական կյանքում: Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիայի անմիջական ղեկավարությամբ ԳԴՌ-ի բանվոր դասակարգը ո՛չ միայն ինքն է դաստիարակվում, այլև դաստիարակում է տնտեսական կադրերին, պետական ապարատի աշխատողներին և ինտելիգենցիային: Սա է ԳԴՌ-ի առաջընթացի գլխավոր հաջողություններից մեկը՝ երկրում սոցիալիզմի կառուցման հուսալի երաշխիքը:

Ռևոլյուցիոն խոր վերափոխություններ են տեղի ունեցել նաև ԳԴՌ-ի գյուղատնտեսության մեջ: Նախկին մանր, մեկուսացված մասնավոր սեփականատիրական գյուղացիական տնտեսությունների փոխարեն այսօր երկրի գյուղերում վստահորեն իր իրավունքների մեջ է մտնում գյուղատնտեսական կոոպերատիվը: ԳԴՌ-ի գյուղացիությունը օրըստօրե է՛լ ավելի է համոզվում գյուղացիական խոշոր տնտեսությունների օգտավետության և մեծ առավելությունների մեջ: 1958 թվականի տվյալներով, գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների բաժինը օգտագործվող բոլոր ցանքատարածությունների մեջ կազմեց 34 տոկոս: Խնդիր է դրված, մինչև 1960 թվականը այդ բաժինը հասցնել առնվազն 50 տոկոսի:

ԳԴՌ-ում ներկայումս գոյություն ունեն կոոպերատիվների երեք տարբեր ձևեր: Առաջին ձևը՝ ամենապարզ և ամենից հեշտ իրականացվող ձևն է: Դրա էությունն այն է, որ նման կոոպերատիվները հենվում են միայն հողի համատեղ մշակման և համատեղ օգտագործման սկզբունքի վրա: Երկրորդ ձևի տարբերությունն առաջինից այն է, որ հողի համատեղ օգտագործման սկզբունքին ավելանում է նաև քաշող ուժի և գյուղատնտեսական գործիքների համատեղ օգտագործումը: Իսկ երրորդ ձևին պատկանող կոոպերատիվներում նախորդ երկու ձևերին ավելանում է նաև անասունները համատեղ պահելու սկզբունքը:

Կոոպերատիվների փորձը ակնառու կերպով ցույց տվեց, որ գյուղատնտեսությունը վարելու նման ձևը մեծ հնարավորություններ է ստեղծում կոոպերատիվի անդամների եկամուտների անընդհատ ավելացման համար: 1956 թվականին կոոպերատիվների անդամների եկամուտները գյուղատնտեսական ցանքատարածությունների մեկ հեկտարի հաշվով կազմեցին 186 մարկ, 1957 թվականին՝ արդեն 270 մարկ:

Գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման գործում մեծ դեր են կատարում ԳԴՌ-ի մեքենա-տրակտորային կայանները, որոնց թիվը ներ-

կայումս 600-ից ավելի է։ ՄՏ կայանները մեծ չափով նպաստում են մենատնտեսների ընդգրկմանը կոոպերատիվներում։

1958 թվականին ռեսպուբլիկայի դաշտերում աճեցվեց հացահատիկի հիանալի բերք։ Ժողովրդական կալվածքներում հացահատիկի յուրաքանչյուր հեկտարից ստացվող միջին բերքը կազմեց 28,1 ցենտներ, գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների դաշտերում՝ 26,4 ցենտներ, մենատնտես գյուղացիների դաշտերում՝ 25,6 ցենտներ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության սոցիալիստական զարգացման հաջողությունները Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում հիմնովին հերքեցին Արևմուտքում տարածվող բուրժուական հերյուրանքները ԳԴՌ-ի էկոնոմիկայի «փլուզման» և այնտեղ սոցիալիզմի կառուցման իբր թե անհնարինության մասին։ Սոցիալիզմի կառուցումը ԳԴՌ-ում ընթանում է նույնպիսի հաջողությամբ, ինչպես և եղբայրական մյուս ժողովրդա-դեմոկրատական երկրներում։ Այդ իրողությունն է՛լ ավելի ակնառու դարձնելու համար բերենք մի քանի ընդհանուր փաստեր ԳԴՌ-ի էկոնոմիկայում սոցիալիստական և մասնավոր սեկտորների ընդհանուր հարաբերակցության մասին։ 1958 թվականի սկզբին սոցիալիստական սեկտորի տեսակարար կշիռը ԳԴՌ-ի արդյունաբերական համախառն արտադրանքի մեջ կազմեց 88,8 տոկոս, տրանսպորտում՝ 92,7 տոկոս, գյուղատնտեսության մեջ՝ 33,7 տոկոս, առևտրի մեջ՝ 82 տոկոս։ 1956 թվականին սոցիալիստական ձեռնարկությունների և կոոպերատիվների տեսակարար կշիռը կազմում էր ընդամենը 72 տոկոս (1950 թվականին՝ 53 տոկոս)։ Այս թվերը խոսում են այն մասին, որ սոցիալիստական արտադրահարաբերությունները ԳԴՌ-ում զարգանում են մեծ հաջողությամբ, իսկ սոցիալիստական սեկտորը օրըստօրե ընդլայնվում է և ամրապնդվում։

Մեծ են ԳԴՌ-ի նվաճումները կուլտուրայի, գիտության և տեխնիկայի զարգացման ասպարեզում։ Ռեսպուբլիկայի գիտնականները վերջին տարիներս այնպիսի հաջողություններ ձեռք բերեցին, որոնք անմիջապես մեծ ճանաչում գտան ամբողջ աշխարհում։ Դրանց թվին են պատկանում՝ ամբողջ Գերմանիայում առաջին ատոմային ռեակտորի կառուցումը, առաջին մարդատար ռեակտիվ ինքնաթիռների արտադրության կազմակերպումը, բարձր արտադրողական գործիքային հաստոցների պատրաստումը, ռադիոտեխնիկայի, հեռուստատեսության և հեռախոսա-հեռագրային տեխնիկայի զարգացումը, բարձր պոլիմերային պլաստիկ մասսաների ստեղծումն ու որակի բարելավումը, տեքստիլ արդյունաբերության աննախընթաց զարգացումը և այլն։

Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիայի և ԳԴՌ-ի կառավարության մշտական հոգատարության առարկա է ժողովրդական կրթության գործը։ Ժողովրդական կրթության հիմնարկների առջև պատվավոր խնդիր է դրված՝ ստեղծել բանվորա-գյուղացիական իշխանությանը, սոցիալիզմի գործին, ինտերնացիոնալիզմի սկզբունքներին մինչև վերջ հավատարիմ նոր ինտելիգենցիա։

Ռեսպուբլիկայի համալսարաններում և մյուս բարձրագույն ուսումնական հաստատություններում ներկայումս սովորող ուսանողների 60 տոկոսը բանվորների և գյուղացիների երեխաներ են։ Դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը բարձրագույն դպրոցում դարձել է տիրապետող աշխարհայացք։

Ռեսպուբլիկայի տնտեսական և կուլտուրական հաջողությունների հիման



վրա անշեղորեն աճում է բնակչության կենսամակարդակը։ Եթե մինչև 1950 թվականը ռեալ աշխատավարձը Արևմտյան Գերմանիայում աճում էր ավելի արագ, քան ԳԴՌ-ում, ապա սկսած 1950 թվականից տեղի է ունենում հակառակ երևույթ։ 1953—1954 թվականներին ԳԴՌ-ում ռեալ աշխատավարձը ո՛չ միայն հասավ 1936 թվականի մակարդակին, այլ անցավ դրանից։ 1936 թվականի համեմատությամբ, 1956 թվականին ռեալ աշխատավարձը կազմեց 126,8 տոկոս։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման նպատակին են ուղղված այն մեծ հատկացումները, որ կատարում է ԳԴՌ-ի կառավարությունը կուլտուրայի, առողջապահության, սոցիալական ապահովության, ժողովրդական կրթության և այլ բնագավառներում։ 1951 թվականից մինչև 1956 թվականը այդ կարգի հատկացումների աճը կազմել է 183 տոկոս։

Արդյունաբերական ձեռնարկություններում աշխատանքային օրվա տևողությունը 7 և կես ժամ է։ ԳԴՌ-ի ժողովրդական պալատը ընդունել և իրականացրել է կենսաթոշակների ավելացման օրենքը։ Լրիվին վերացված է քարտային սիստեմը։

## ՀԻՄՆԱԿԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԽՆԴԻՐԸ

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերջին տարիների խոշոր հաջողությունները Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիայի Կենտրոնական Կոմիտեին և ԳԴՌ-ի կառավարությանը հնարավորություն տվին մշակելու և ռեսպուբլիկայի աշխատավորության առջև դնելու երկրի հետագա տնտեսական զարգացման առավել բարդ և պատասխանատու խնդիրներ։ Այդ խնդիրներն իրենց վերջնական ձևակերպումն ստացան ԳՍՄՊ V համագումարում, որը տեղի ունեցավ անցյալ տարվա հուլիսին։ Համագումարի որոշումները պատմական նշանակություն ունեն ԳԴՌ-ի սոցիալիստական էկոնոմիկայի հետագա զարգացման և ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ բարելավման գործում։

Համագումարի առաջադրած երկրի հիմնական տնտեսական խնդրի էությունն այն է, որ մի քանի տարվա ընթացքում ԳԴՌ-ի ժողովրդական տնտեսությունն այնպես պետք է զարգանա, որ ակնհայտ լինի ԳԴՌ-ի սոցիալիստական հասարակարգի գերազանցությունը առեմտագերմանական կապիտալիստական իրավակարգի նկատմամբ, որ պարենային ու սպառողական ապրանքների բոլոր տեսակների գծով ԳԴՌ-ի աշխատավոր բնակչության յուրաքանչյուր շնչի սպառման մակարդակը հասնի և անցնի ամբողջ Արևմտյան Գերմանիայում բնակչության մեկ շնչի սպառած մակարդակից։

Այս խնդրի իրագործման կարևոր նախապայմանն է երկրի արդյունաբերության հիմնական ճյուղերի և ամբողջ սոցիալիստական լագերում աշխատանքի միջազգային բաժանման և պլանաչափ համագործակցության արագ զարգացումը։

ԳԴՌ-ն իր տնտեսական և քաղաքական զարգացման բոլոր էտապներում անշահախնդիր օգնություն է ստացել սոցիալիզմի լագերի բոլոր երկրներից և, մասնավորապես, Սովետական Միությունից։ Այդ օգնությունը հիմնված է սոցիալիստական լագերի երկրների համերաշխության, եղբայրական բարեկամության և փոխադարձ օգնության մեծ սկզբունքների վրա։ Դա պրոլետարա-

կան ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության լենինյան սկզբունքների հետևողական կիրառման վառ արտահայտությունն է։

Անցյալ տարի կայացած տնտեսական բանակցությունների հետևանքով Սովետական Միության և ԳԴՌ-ի կառավարությունների միջև համաձայնություն կայացվեց մինչև 1965 թվականը երկու երկրների միջև տնտեսական հարաբերությունների զարգացման մասին։ Սովետական Միությունն առաջիկա 7 տարիների ընթացքում մի քանի անգամ ավելացնելու է մատակարարումները ԳԴՌ-ին։ Նավթի մատակարարումները, 1957 թվականի 1.040 հազար տոննայի փոխարեն, 1965 թվականին հասցվելու են 4.800 հազար տոննայի, չուգունինը՝ 417 հազար տոննայի փոխարեն՝ 1.600 հազար տոննայի, մետալուրգիական կոքսինը՝ 928 հազար տոննայի փոխարեն՝ 1.550 հազար տոննայի, ալյումինինը՝ 18 հազար տոննայի փոխարեն՝ 85 հազար տոննայի և այլն։

ԳԴՌ-ը կառավարությունը պարտավորվել է Սովետական Միությանը մատակարարել մեքենաշինական, քիմիական, թեթև և արդյունաբերական այլ ճյուղերի սարքավորում և արտադրանք։

Ելնելով ԳՍՄՊ V համագումարի առաջադրած հիմնական տնտեսական խնդրից, ԳՍՄՊ Կենտրոնական Կոմիտեն և ԳԴՌ-ի կառավարությունը ռեսպուբլիկայի արդյունաբերության առջև կոնկրետ խնդիր են դրել՝ 1960 թվականին քիմիական արդյունաբերության արտադրանքն ավելացնել 1,9 միլիարդ մարկով, մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը՝ ընդհանուր առմամբ 2,2 միլիարդ մարկով և այլն։

Երրորդ հնգամյակի ընթացքում էլ ավելի է ընդլայնվելու արդյունաբերական օբյեկտների և հասարակական-արտադրական խոշոր նշանակություն ունեցող այլ օբյեկտների շինարարությունը։ Կառուցվելու են տեխնիկայի վերջին խոսքով սարքավորված երկու հզոր էլեկտրակայաններ Լիբենաուում և Ֆեչաուում։ Դրանք լինելու են գործ ածխով աշխատող ամենախոշոր էլեկտրակայաններն աշխարհում։ Երկու էլեկտրակայանները միասին տարեկան արտադրելու են մոտ 15 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն՝ 1957 թվականին ԳԴՌ-ում արտադրված ամբողջ էլեկտրաէներգիայի կեսը, որը հավասար է Հոլանդիայի ամբողջ մեկ տարվա էլեկտրաէներգիայի արտադրությանը։

Սովետական Միությունից ներմուծվող նավթի հիման վրա կառուցվելու է խոշոր նավթավերամշակման գործարան, որտեղ մյուս անհրաժեշտ նյութերի հետ մեկտեղ արտադրվելու են մինչ այդ արտասահմանից ներմուծվող բենզոլ, քսիլոլ, էթիլեն և այլ նյութեր։ Սանկտ-Էգիդիենում ավարտվելու է նիկելի գործարանի շինարարությունը, որը հնարավորություն կտա դադարեցնելու նիկելի ներմուծումը արտասահմանից։ Մեծ չափով ընդլայնվելու է Ռոստոկ նավահանգիստը։ Խոշոր մասշտաբներով շարունակվելու են վերանորոգման աշխատանքները Բեռլինում։

Երրորդ հնգամյա պլանով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ուղղությամբ սահմանված են հետևյալ առաջադրանքները (հեկտարի հաշվով). հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը հասցնել 30 ցենտների, կարտոֆիլինը՝ 245 ցենտների, շաքարի ճակնդեղինը՝ 375 ցենտների, սիլոսի եգիպտացորենինը՝ 600 ցենտների։ Զգալիորեն մեծանալու է անասունների գլխաքանակը և ավելանալու է դրանց մթերատվությունը։



Ռեսպուբլիկայում բուռն կերպով զարգանալու են ժողովրդական կուլտուրան, գիտությունը և արվեստը։

Սոցիալիստական շինարարության հաջողությունները և մասսաների շրջանում ԳՍՄՊ-ի տարած խոշոր դաստիարակչական աշխատանքը մեծ չափով փոխեցին մարդկանց մտածելակերպը։ ԳԴՌ-ի բնակչությունն այժմ էլ ավելի է համախմբված Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիայի և հարազատ ժողովրդական կառավարության շուրջը։

Դեմոկրատական Գերմանիայի Ազգային ճակատը, որը ԳԴՌ-ի նոր հասարակական կարգի ամուր հենարանն է, միավորում է երկրի բնակչության բոլոր խավերին։ Այդ ճակատի մեջ մտնում են հինգ պարտիաներ՝ Գերմանիայի Սոցիալիստական Միացյալ պարտիան, Գերմանիայի լիբերալ-դեմոկրատական պարտիան, Քրիստոնեա-դեմոկրատական միությունը, Գերմանիայի ազգային դեմոկրատական պարտիան և Գերմանիայի դեմոկրատական գյուղացիական պարտիան։ Ազգային ճակատը վիթխարի աշխատանք է տանում բնակչության մեջ նոր կարգի ամրապնդման և ժողովրդի բարոյա-քաղաքական միասնության ապահովման ուղղությամբ։

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՎԵՐԱՄԻԱՎՈՐՈՒՄԸ ԳԵՐՄԱՆԱՑԻՆԵՐԻ ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾՆ Է

Սոցիալիզմի կառուցման ասպարեզում ԳԴՌ-ի աշխատավորության խոշոր հաջողություններն էլ ավելի բարձրացրին և ամրապնդեցին Ռեսպուբլիկայի միջազգային հեղինակությունը։ ԳԴՌ-ի կառավարությունը հետևողականորեն վարելով խաղաղության և բոլոր երկրների միջև բարեկամական համագործակցության պահպանման քաղաքականություն, նվաճել է բոլոր խաղաղասեր ժողովուրդների ջերմ համակրանքը։ Ռեսպուբլիկան տնտեսական ու քաղաքական սերտ կապերի մեջ է գտնվում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրների հետ և այդ կապերի ամրապնդումը համարում է իր ինտերնացիոնալ պարտքը։

ԳԴՌ-ի կառավարությունը հետևողականորեն վարելով խաղաղության և ժողովուրդների անվտանգության քաղաքականություն, միաժամանակ իրեն պարզ հաշիվ է տալիս, որ Արևմտյան Գերմանիայի ռեանշիստական շրջանները, որոնց թիկունքում առաջին հերթին կանգնած են ԱՄՆ-ի իմպերիալիստները, մոլեգնորեն պատրաստվում են ԳԴՌ-ն զավթելու և խաղաղասեր ժողովուրդների վզին նոր ավերիչ պատերազմ փաթաթելու համար։ Ելնելով իրենց իմպերիալիստական, ռեանշիստական քաղաքականության շահերից, արևմտագերմանական միլիտարիստները ոչ միայն երկիրը ներքաշեցին ագրեսիվ Հյուսիս-Ատլանտյան ռազմական դաշինքի մեջ, այլև իրականացնում են բունդեսվերի ատոմային սպառազինման չափազանց վտանգավոր պլանները։ Այժմ Գերմանիայի ֆեդերատիվ ռեսպուբլիկան հանդիսանում է ՆԱՏՕ-ի գլխավոր հենարանը Եվրոպայում։

Նման պայմաններում, ԳԴՌ-ի կառավարությունը ելնելով ամբողջ գերմանական ժողովրդի ազգային կենսական շահերից, էլ ավելի է ուժեղացնում իր պայքարը դեմոկրատական և խաղաղասիրական սկզբունքների հիման վրա Գերմանիայի միասնությունը վերականգնելու համար։ ԳԴՌ-ի պետական և

քաղաքական գործիչները պարզ հաշիվ են տալիս, որ ներկա էտապում գերմանական հարցի հաջող լուծման ուղին առաջին հերթին այն է, որպեսզի բոլոր միջոցներով արգելակվի արևմտագերմանական բանակի ատոմային սպառազինումը և համառ պայքար տարվի լարվածության թուլացման ու բոլոր վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու համար։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունն այդ ուղղությամբ մեծ աշխատանք է տարել։ Վճռականորեն մերժելով գերմանական հարցի լուծման գործում ուրիշ պետությունների միջամտությունը, նա բազմիցս առաջարկել է, որպեսզի գերմանական երկու պետությունների ներկայացուցիչները հանդիպեն և քննարկեն Գերմանիայի միասնականության հարցը։ ԳԴՌ-ի կառավարությանը լավ հայտնի է, թե ինչու են Արևմտյան տերությունները մեծ շահագրգռվածություն հանդես բերում գերմանական հարցի լուծմանը միջամտելու գործում։ Նրանց նպատակն է ԳԴՌ-ն մեխանիկորեն միացնել արևմտագերմանական պետությանը և դրանով իսկ զերոյի հավասարեցնել ԳԴՌ-ի աշխատավորության նվաճումները սոցիալիզմի կառուցման ուղղությամբ։ Այդ պատճառով էլ ԳԴՌ-ի կառավարությունը գտնում է, որ Գերմանիայի միասնության վերականգնումը միայն գերմանացիների ներքին գործն է, որ այդ հարցի լուծման ժամանակ պետք է ելնել գերմանական երկու պետություններում տարբեր սոցիալական և քաղաքական կարգերի գոյության ռեալ փաստից և հարցը լուծել ոչ թե մեկ կողմի հաշվին, այլ երկու կողմերում տիրող վիճակի անվերապահ ճանաչման հիման վրա։ ԳԴՌ-ի կառավարությունն իր մի շարք հայտարարությունների մեջ նշել է, որ գերմանական հարցի ճիշտ լուծման ուղին՝ իրենց հասարակական-պետական սիստեմների պահպանումով հանդերձ երկու գերմանական պետությունների միավորումն է կոնֆեդերացիայի սկզբունքներով։

ԳԴՌ-ի կառավարությունը 1958 թվականի սեպտեմբերի 5-ին առաջարկեց, որպեսզի չորս մեծ տերությունների և երկու գերմանական պետությունների ներկայացուցիչների մասնակցությամբ մշակվի Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի նախագիծը։ Այդ առաջարկությունը թեև մեծ արձագանք գտավ ամբողջ աշխարհում, բայց հապճեպորեն մերժվեց Ադենաուերի կառավարության կողմից։

Սովետական կառավարությունը և ամբողջ սովետական ժողովուրդը խոր ըմբռնելով գերմանական ժողովրդի ազգային ձգտումները, ամեն կերպ պաշտպանում են ԳԴՌ-ի կառավարության առաջարկությունները, որոնք իսկապես ռեալ ուղիներ են նշում գերմանական հարցի ճիշտ և խաղաղ լուծման համար։

Գերմանական հարցի նկատմամբ Սովետական կառավարության դիրքորոշումը լիովին համապատասխանում է գերմանական ժողովրդի ազգային կենսական շահերին։ Այդ են ապացուցում Սովետական կառավարության բազմաթիվ առաջարկությունները գերմանական հարցի լուծման վերաբերյալ։ Այդ են ապացուցում նաև Սովետական կառավարության վերջերս հրապարակած առաջարկությունները Բեռլինի հարցի մասին։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի, ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի կառավարություններին ուղղած իր նոտաներում Սովետական կառավարությունը 1958 թվականի նոյեմբերի 28-ին հայտարարեց, որ պետք է վերջնականապես վերացնել այն աննորմալ վիճակը, որն ավելի քան 13 տարի է, ինչ գոյություն ունի Եվրոպայի կենտրոնում։ «Արևմտյան տերությունների համար Արևմտյան Բեռլինը հարմար վայր է Գերմանական



Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների դեմ ագրեսիվ քաղաքականություն վարելու համար։ Արևմտյան տերությունների որոշակի քաղաքականության հետևանքով, որոնք Արևմտյան Գերմանիայում բորբոքում են ռևանշիստական տրամադրություններ, աջակցում են այնտեղ ֆաշիստական, ռեակցիոն կազմակերպությունների ու ուժերի վերականգնմանը, Արևմտյան Բեռլինը վեր է ածվել յուրահատուկ չարորակ ուռուցքի։ Եվ եթե այն չվերացվի, ապա դա սպառնում է այնպիսի վտանգով, որը կարող է հասցնել բավականաչափ անցանկալի հետևանքների» (Ն. Ս. Խրուշչով)։

Այդ պատճառով էլ Սովետական կառավարությունն առաջարկեց կես տարի հետո դադարեցնել օկուպացիայի պայմանները Բեռլինում։ Սովետական կառավարությունը գտնում է, որ Բեռլինի երկու մասերը չպետք է մեխանիկորեն միացվեն, որ Արևմտյան Բեռլինին պետք է տրվի ազատ և ապառազմականացված քաղաքի ստատուս։ Արևմտյան Բեռլինը պետք է ունենա իր՝ կառավարությունը և ինքնավարման մյուս օրգանները։ Դրանով իսկ նորմալ պայմաններ կստեղծվեն Բեռլինի հարցի լուծման համար այն հաշվով, որպեսզի Արևմտյան Բեռլինում բնակվող մարդիկ, որոնք ունեն տարբեր հայացքներ և համոզմունքներ, ստիպված չլինեն իրենց կամքին հակառակ ընդունելու այն սիստեմը, որը նրանց համար դուրեկան չէ։

Գերմանական հարցի վերաբերյալ Սովետական կառավարության առաջարկություններն արժանացան ՍՄԿԿ XXI արտահերթ համագումարի ջերմ հավանությանը։ Համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովը մեկ անգամ ևս հաստատելով Սովետական կառավարության վճռականությունը գերմանական հարցը բանակցությունների միջոցով, խաղաղ ճանապարհով լուծելու գործում, նշեց, որ Սովետական կառավարությունը չի առարկում նույնիսկ Գերմանիայում ազատ ընտրություններ անցկացնելու առաջարկին, եթե Գերմանիայի երկու մասերի գերմանացիները համաձայն են դրան, և եթե ընտրություններն անցկացվեն առանց օտարերկրյա պետությունների միջամտության։ Միաժամանակ, Սովետական կառավարության ղեկավարը հայտարարեց, որ Սովետական Միությունը պատրաստ է քննարկելու ամեն մի այլ առաջարկություն ևս, եթե այն խելացի է և կարող է հիմք հանդիսանալ փոխադարձ համաձայնության հասնելու համար։



Մեծ են Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի աշխատավորության ձեռք բերած նվաճումները կյանքի բոլոր բնագավառներում։ Եվ ամենագլխավոր նվաճումն այն ուրախալի փաստն է, որ ԳԴՌ-ում հաջողությամբ դրվել է սոցիալիզմի կառուցման հիմքը։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, ամբողջ Գերմանիայի աշխատավորությունը լայնորեն նշեց 1918 թվականի նոյեմբերյան ռևոլյուցիայի և Գերմանիայի Կոմունիստական պարտիայի հիմնադրման 40-ամյակը։ Քառասուն տարի առաջ գերմանական բանվոր դասակարգը ոտքի ելավ, որպեսզի զենքի ուժով տապալեր կապիտալիստների և յունկերների ատելի տիրապետությունը, որպեսզի ստեղծեր մի այնպիսի հասարակարգ, որտեղ հավիտյան բացառված լինեին մարդու շահագործումը մարդու կողմից, բնակ-

*ւության աշխատավոր մասսաների քաղաքական և մյուս իրավունքների ոտնահարումը և ագրեսիվ պատերազմների սանձազերծումը։ 1918 թվականի այդ օրերին գերմանական պրոլետարիատը զենքի դիմեց, որպեսզի ստեղծեր իր սեփական իշխանությունը և իր հայրենիքում իրականացներ մարքսիստական-լենինյան մեծ գաղափարները։ Սակայն այդ անել նրան չհաջողվեց, որովհետև նրա դեմ միացյալ արշավի ելան Գերմանիայի և մյուս կապիտալիստական երկրների բոլոր սև ուժերը՝ մոլի իմպերիալիստներից սկսած մինչև նրանց հլու կամակատար աջ սոցիալ-դեմոկրատները։*

*Գերմանական պրոլետարիատի թափած արյունը, սակայն, իզուր չանցավ։ Դասակարգային կատաղի մարտերում ծնունդ առավ և հետագա բազմաթիվ դաժան փորձություններում կոփվեց ու հզոր ուժ դարձավ Գերմանիայի Կոմունիստական պարտիան, որի գլխավորությամբ Գերմանիայի բանվորներն ու մյուս բոլոր աշխատավորական խավերը շարունակեցին համառ պայքարը կապիտալիզմի ճիրաններից վերջնականապես ազատագրվելու համար։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների աշխատավորության եղբայրական օգնությամբ այդ պայքարը պսակվեց պատմական հաղթանակով։ Գերմանիայի արևելյան մասում ստեղծվեցին ժողովրդա-դեմոկրատական կարգեր, որտեղ կենսագործվեցին նոյեմբերյան ռևոլյուցիայի անմահ լոզունգները։ Գերմանիայի այդ մասում, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում, որն արդեն թևակոխել է իր գոյության տասնամյակը, իրականացվեցին այն գաղափարները, որոնց համար մղված մարտերում, 1918 թվականի նոյեմբերին զոհվեցին Գերմանիայի լավագույն զավակները։*

*Այսօրվա ԳԴՌ-ն ամբողջ Գերմանիայի աշխատավորության լուսաշող ապագայի հիմքն ու երաշխիքն է։ Ամրապնդելով իր եղբայրական դաշինքը ՍՍՌՄ-ի և մյուս սոցիալիստական երկրների հետ, նա դարձել է խաղաղության և դեմոկրատիայի հզոր, անխորտակելի պատվարը Եվրոպայի կենտրոնում։*

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

## Գ Լ Ո Ւ Խ VII

## ՊԱՐՏԻԱՆ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՈԳԵՇՆՉՈՂ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ

(1917 թվականի մարտ—հոկտեմբեր)

### 1. ԵՐԿՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԵՎ ՆԵՐՔԻՆ ԴՐՈՒԹՅՈՒՆԸ ՑԱՐԻԶՄԻ ՏԱՊԱԼՈՒՄԻՑ ՀԵՏՈ։ ՊԱՐՏԻԱՅԻ ԴՈՒՐՍ ԳԱԼԸ ԸՆԴՀԱՏԱԿԻՑ։

*1917 թվականի Փետրվարյան ռևոլյուցիան փոխեց Ռուսաստանի միջազգային դրությունը։ Ամբողջ աշխարհի աշխատավորները ցնծությամբ ողջունեցին ռուսական բանվոր դասակարգին, որն իմպերիալիստական պատերազմի տարիներին առաջինը բարձրացրեց ապստամբության դրոշը։ Ռուսական ռևոլյուցիայի ազդեցության տակ ուժեղացավ բանվորական և հակապատերազմական շարժումը մյուս երկրներում, հատկապես պատերազմող պետություններում։*

*Բայց իմպերիալիստական երկու բլոկների — Անտանտի և Գերմանիայի՝ իր դաշնակիցների հետ միասին — տիրապետող դասակարգերի մոտ ռևոլյուցիան առաջ բերեց ուժեղ տագնապ։ Իմպերիալիստները վախենում էին, որ ռուսական ռևոլյուցիայի օրինակը կարող է ազդել ամբողջ աշխարհի աշխատավորների վրա։ Եվ այս տեսակետից նրանք չսխալվեցին։*

*Պատերազմող տերությունների դրությունը միատեսակ չէր։ Գերմանիան մեծ հաջողությունների էր հասել ռազմաճակատում, բայց նրա ուժերը խիստ լարված էին. արդյունաբերությունը հազիվ էր կարողանում գլուխ բերել ռազմաճակատի մատակարարումը, ժողովուրդը սոված էր։ Երկու ճակատում՝ թե՛ Անգլիայի ու Ֆրանսիայի դեմ, թե՛ Ռուսաստանի դեմ պատերազմը շարունակելը Գերմանիային կատարյալ պարտություն էր սպառնում։ Գերմանիայի և նրա դաշնակիցների կառավարությունները որոշեցին օգտվել Ռուսաստանում տեղի ունեցած ռևոլյուցիայից, որպեսզի նրան սեպարատ հաշտություն պարտադրեն, իսկ հետո բոլոր ուժերն ուղղեն Անտանտի դեմ։ Երկյուղ կրելով, որ ռևոլյուցիայի խորացումը կսրբի-կտանի Ռուսաստանի բուրժուական կառավարությունը, և այդպիսով կուժեղացնի ռևոլյուցիոն շարժումը ամբողջ աշխարհում, Գերմանիայի կառավարողները ուզում էին հաշտություն կնքել ժամանակավոր կառավարության հետ։*

*Անգլիայի և Ֆրանսիայի դրությունը մի փոքր ավելի լավ էր, քան Գերմանիայի և նրա դաշնակիցների դրությունը։ Ամերիկայի Միացյալ Նահանգները*

*հետապնդելով սեփական իմպերիալիստական նպատակներ, իրենց հսկայական արդյունաբերական հզորությամբ 1917 թվականի ապրիլին հանդես եկան Անտանտի կողմում։ Բայց Անտանտը վախենում էր, թե ռևոլյուցիայի զարգացումը կհասցնի այն բանին, որ Ռուսաստանը դուրս կգա պատերազմից և, հետևապես, կդժվարացնի հաղթանակը Գերմանիայի դեմ։ Անտանտի իմպերիալիստներն իրենց առաջ խնդիր էին դրել՝ պաշտպանել Ժամանակավոր կառավարությանը և Ռուսաստանին ստիպել շարունակելու պատերազմը։ Դրա հետ միասին Անտանտի իմպերիալիստները նկատի ունեին օգտագործել պատերազմում Ռուսաստանի թուլացումը, երկիրը տնտեսապես է՛լ ավելի ստրկացնելու համար, այն բանի համար, որ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի կապիտալիստները է՛լ ավելի մեծ չափով շահագործեն Ռուսաստանի ժողովուրդներին։*

*Այսպիսով, պատերազմող բոլոր երկրների բուրժուազիան ձգտում էր օգնել Ժամանակավոր կառավարությանը՝ ճնշելու ռևոլյուցիան Ռուսաստանում և դրանով իսկ կանխելու ռևոլյուցիան մյուս երկրներում։*

*Ռուսաստանի աշխատավորները, կատարելով ռևոլյուցիա, հույս ունեին ձեռք բերել խաղաղություն, հող, հաց և ազատություն։ Բայց բուրժուական կառավարությունը չէր էլ մտածում պատերազմը դադարեցնելու մասին, այլ, ընդհակառակը, ցանկանում էր ռևոլյուցիան օգտագործել իր զավթողական պլանները իրականացնելու համար։ Ժամանակավոր կառավարությունը հաստատեց հին ցարական այն պայմանագրերը, որոնք Ռուսաստանը կապում էին Անտանտի հետ։ Բուրժուազիան հույս ուներ, թե պատերազմի շարունակումը կօգնի ոչնչացնելու երկիշխանությունը երկրում, և ամբողջ իշխանությունը կանցնի իր ձեռքը։ Ուստի բուրժուազիայի լոզունգն էր՝ «Պատերազմ մինչև հաղթական վախճանը»։*

*Ժամանակավոր կառավարությունը չէր ուզում վճռել նաև ագրարային հարցը։ Հողը գյուղացիներին տալ՝ նշանակում էր հարված հասցնել ո՛չ միայն կալվածատիրական սեփականությանը, այլև կապիտալիստական սեփականությանը, որովհետև կալվածատիրական հողերի մեծ մասը գրավ էր դրված կապիտալիստական բանկերում։ Կալվածատիրական հողերի բռնագրավումը նշանակում էր բազմամիլիարդ բանկային կապիտալների կորուստ։ Չհամարձակվելով բացահայտորեն հայտարարել, որ ինքը չի ցանկանում հողը տալ գյուղացիներին, Ժամանակավոր կառավարությունը գյուղացիներին խաբում էր նրանով, որ հարցի լուծումը հետաձգում էր մինչև Սահմանադիր ժողովի հրավիրումը, ճնշելով կալվածատիրական հողը վերցնելու գյուղացիների ամեն մի փորձ։*

*Բուրժուազիան չէր մտածում աշխատավորների դրությունը բարելավելու մասին։ Ստանալով իշխանություն, բուրժուազիան բոլոր միջոցները ձեռք առավ իր շահույթներն ավելացնելու համար։ Բուրժուական կառավարությունը վերացրեց այն բոլոր հին օրենքները, որոնք արգելակում էին բանկերի զարգացումը, բաժնետիրական ընկերությունների ստեղծումը, մոնոպոլիաների զարգացումը։ Սանձարձակ դարձած բուրժուազիան սկսեց այնպիսի շահույթներ դիզել, որոնք մեծ չափով գերազանցեցին անցյալի՝ ցարիզմի ժամանակվա խայտառակ շահույթները։*

*Ժամանակավոր կառավարությունը մտադիր չէր վերացնելու ազգային ճնշումը։ Իր բնույթով լինելով իմպերիալիստական, այդ կառավարությունը*



*ազգային հարցում շարունակում էր ցարական գաղութակալական քաղաքականությունը։ Տեղերում ամբողջ ճնշող ապարատը մնաց անփոփոխ։*

*Ժամանակավոր կառավարությունը, սակայն, ռևոլյուցիայի պայմաններում չէր կարող բացահայտ պայքարի մեջ մտնել Սովետների դեմ, որոնց կողմում կանգնած էին մասսաները։ Ժամանակավոր կառավարությունը ծածուկ պայքար էր մղում մասսաների ռևոլյուցիոն շարժման դեմ, աշխատելով ժամանակ շահել, որպեսզի ուժեր հավաքի բացահայտ ելույթի համար։*

*Իր միշխանության համար մղած պայքարում բուրժուազիան հույս ուներ էսեռների և մենշևիկների աջակցության վրա, որոնք գտնում էին, թե քանի որ ցարիզմը տապալվել է, և իշխանությունը գտնվում է բուրժուազիայի ձեռքին, ապա ռևոլյուցիան ավարտված է, իսկ նրա նպատակը կատարված։ Էսեռներն ու մենշևիկները ժողովրդին հավատացնում էին, թե ռևոլյուցիայի հաղթանակով փոխվել է պատերազմի բնույթը, թե իբր պատերազմը դադարել է իմպերիալիստական լինելուց, և կոչ էին անում պաշտպանել բուրժուական հայրենիքը։ Ժողովրդին խաբելով, նրանք իրենց անվանում էին «ռևոլյուցիոն պաշտպանողականներ»։ Ժողովրդական մասսաների մեծ մասը, որը հենց նոր էր ընդգրկվել քաղաքականության մեջ, միանգամից չհասկացավ խաբեությունը և հավատաց էսեռների ու մենշևիկների հավաստիացումներին։*

*Լենինը միլիոնավոր գյուղացիներին ու բանվորներին համակած մասսայական «պաշտպանողական» տրամադրությունը խստորեն տարբերում էր մենշևիկների ու էսեռների պարտիայի պաշտպանողականությունից։ Բանվորներն ու աշխատավոր գյուղացիները շահագրգռված չէին պատերազմով։ Մասսաների «պաշտպանողական» տրամադրությունները, ինչպես նշում էր Լենինը, նրանց բարեխիղճ մոլորության արդյունքն էր։ Այլ էր էսեռների և մենշևիկների հարցը։ Այդ պարտիաների պաշտպանողականության տնտեսական բազան նրանց ներկայացրած մանր բուրժուազիայի որոշ մասի շահագրգռվածությունն էր այն գերշահույթների մի որոշ բաժնի նկատմամբ, որպիսիք կապիտալիստներն ստանում էին պատերազմից, ճնշված ժողովուրդների կողոպուտից։*

*Չգտնելով քողարկել իրենց դավաճանական անցումը բուրժուազիայի կողմը, էսեռներն ու մենշևիկները խոստանում էին վերահսկողություն սահմանել Ժամանակավոր կառավարության գործունեության նկատմամբ։ Նրանք առաջ քաշեցին «այնքանով, որքանով» ֆորմուլան, ասելով՝ որքանով որ կառավարությունը կլուծի ռևոլյուցիայի խնդիրները, այնքանով էլ նրան պետք է պաշտպանել, իսկ եթե կառավարությունը փորձ կանի վերադառնալ ետ, դեպի հին կարգը, պետք է նրան քննադատել, բայց ոչ մի դեպքում չտապալել։ Դա նշանակում էր խաբել մասսաներին, որովհետև չի կարելի վերահսկել առանց իշխանության։ Իրականում այդպիսի վերահսկողություն նշանակում էր համաձայնություն բուրժուական կառավարության հետ, վստահություն և աջակցություն նրան։*

*Էսեռներն ու մենշևիկները, ինչպես և բուրժուական Ժամանակավոր կառավարությունը ժողովրդին հորդորում էին խաղաղության, հողի, հացի հարցերի լուծման համար սպասել մինչև Սահմանադիր ժողովը, բայց նրանք չէին էլ շտապում հրավիրել այդ ժողովը։ Մի խոսքով, էսեռներն ու մենշևիկները բացահայտորեն դարձան բուրժուազիայի հետ համաձայնության գալու պար-*

*տիաներ։ Նրանք իրենց առաջ խնդիր էին դրել պահպանել և ամրապնդել կապիտալիստական կարգը։*

*Բոլշևիկների պարտիան ընդհատակից դուրս եկավ։ Իր ստեղծման ժամանակներից սկսած, պարտիան առաջին անգամ հնարավորություն ստացավ բացահայտորեն և ազատ ծավալելու իր գործունեությունը։*

*Ցարիզմի տապալումը ավարտեց երկրի պատմության մի ժամանակաշրջան և բացեց նոր ժամանակաշրջան։ Իսկ նոր իրադրությունը պահանջում էր նաև նոր կողմնորոշում, նոր ստրատեգիական պլան, այլ տակտիկա և ուրիշ լոզունգներ։ Ռևոլյուցիայի առաջին իսկ օրերին, գտնվելով էմիգրացիայում, Լենինը գրեց այն հոդվածները, որ ինքը անվանել էր «Նամակներ հեռվից», որոնցում ցույց էր տալիս, թե ինչ գիծ պետք է կիրառի պարտիան ռևոլյուցիայից հետո։ Լենինը գրում էր, որ ռևոլյուցիան դեռևս չի վերջացել, ավարտվել է միայն նրա առաջին էտապը, որ բանվորները պետք է ցուցաբերեն հերոսություն և հաղթանակի հասնեն ռևոլյուցիայի երկրորդ էտապում։ Լենինն առաջ քաշեց բանվորական միլիցիա կամ բանվորական աշխարհազոր ստեղծելու խնդիրը, որպեսզի բուրժուական կառավարությանը թույլ չտրվեր վերականգնել ոստիկանությունը և փրկել միապետությունը։ Լենինը Կենտրոնական Կոմիտեի արտասահմանյան անդամների անունից պնդում էր հետևյալ տակտիկան, որ շարադրված է Ռուսաստանի բոլշևիկների համար հատուկ հեռագրում՝*

> *«...լիակատար անվստահություն, ո՛չ մի աջակցություն նոր կառավարությանը, առանձնապես կասկածում ենք Կերենսկուն, պրոլետարիատի զինումը միակ երաշխիքն է, Պետրոգրադի դումայի անհապաղ ընտրություն, ո՛չ մի մերձեցում մյուս պարտիաների հետ»* (Երկեր, հատ. 23, էջ 392)։

*Լենինը առանձնապես խիստ խարազանում էր ամեն մի տրամադրություն, որը տանում էր դեպի միավորում մենշևիկների հետ։ Միավորիչ տրամադրությունները, որոնք թեև տարածված էին պարտիական կազմակերպությունների փոքր մասում, լուրջ վտանգ էին ռևոլյուցիոն պայքարի զարգացման մեջ։*

*Զինված սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսությամբ, պարտիան պայքարում էր փետրվարյան օրերին ձեռք բերված հաղթանակն ամրապնդելու, ռևոլյուցիան է՛լ ավելի խորացնելու համար։ Պարտիան հանդես եկավ բուրժուական ժամանակավոր կառավարությանը վստահություն հայտնելու դեմ։ Կենտկոմի բյուրոն մարտի 4-ին բանաձև ընդունեց խոշոր բուրժուազիայի և ազնվականության ներկայացուցիչներից կազմված կառավարության հետ որևէ համաձայնության գալու դեմ։ Պարտիան մերկացրեց կառավարության նկատմամբ վերահսկողության էսեռա-մենշևիկյան լոզունգը։ «Վերահսկողությո՞ւն ժամանակավոր կառավարության նկատմամբ — այդպես էր գրում «Պրավդա»-ն (№ 4),— ի՞նչ կտա դա նրանց (այսինքն բանվորներին)։ Չէ՞ որ ակներև է, որ բուրժուազիան, նույնիսկ բանվորների վերահսկողության տակ, չի կարող իր վրա վերցնել պրոլետարական ծրագրերի կատարումը, և բանվորներն իրավունք էլ չունեն հույս դնել բուրժուազիայի օրինակով ուրիշի ձեռքով կրակից շագանակներ հանելու վրա, այլ պետք է իրենք գործեն»։*

*Բոլշևիկների պարտիան պայքար էր մղում հաշտության համար, ընդդեմ պատերազմի, որը նոր կառավարության օրոք էլ մնում էր իմպերիալիստական։ «Պրավդա»-ի առաջին համարի առաջնորդողը բանվորներին կոչ էր անում*



*շարունակել ռևոլյուցիան, ստեղծել բանվորական գվարդիաներ։ «Պրոլետարիատը պետք է հիշի,— գրում էր «Պրավդա»-ն, որ ինքը միայն զենքը ձեռքին կարող է ամրապնդել իր հաջողությունները և ռևոլյուցիայի գործը հասցնել իր վախճանին»։*

*Պարտիական կոմիտեները վերակազմվեցին դեմոկրատական ցենտրալիզմի հիման վրա։ Սահմանվեց պարտիական օրգանների ընտրովիություն վարից վեր։ Մարտի 5-ին լույս տեսավ բոլշևիկների պարտիայի Կենտրոնական և Պետերբուրգի կոմիտեների օրգան «Պրավդա» թերթի առաջին համարը։ Մոսկվայում և մյուս արդյունաբերական շրջաններում սկսեցին լույս տեսնել բոլշևիկյան թերթեր։ Բանտերից ազատվեցին ցարական իշխանությունների բանտարկած բոլշևիկները։ Աքսորից ու բանտերից վերադարձան Կենտկոմի անդամներ և պարտիայի ականավոր գործիչներ Վ. Վ. Կույբիշևը, Ֆ. Է. Ձերժինսկին, Ե. Մ. Յարոսլավսկին, Ս. Գ. Շահումյանը, Պ. Ա. Ջափարիձեն, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը, Գ. Կ. Օրջոնիկիձեն, Պետական դումայի դեպուտատներ՝ Գ. Ի. Պետրովսկին, Մ. Կ. Մուրանովը, Ա. Ե. Բադաևը և ուրիշներ։*

*Բոլշևիկները հսկայական ագիտացիոն աշխատանք ծավալեցին մասսաների մեջ։*

*Պարտիան գլխավոր ուշադրությունը դարձնում էր հասարակության առաջավոր ուժի՝ պրոլետարիատի կազմակերպման ու համախմբման վրա։ Բոլշևիկները կոչ էին անում Սովետներ ստեղծել ամբողջ Ռուսաստանում և ակտիվորեն մասնակցեցին բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետների, բանակում՝ կոմիտեների, գյուղերում՝ գյուղացիական կազմակերպությունների կազմակերպմանը։ Պետրոգրադի, Մոսկվայի շատ ձեռնարկություններում, Ուրալում, Դոնբասում և մյուս արդյունաբերական շրջաններում բոլշևիկները բանվորներից ստեղծում էին Կարմիր գվարդիայի ջոկատներ՝ ռևոլյուցիայի մարտական զորամասեր։*

*Պարտիան կոչ էր անում ստեղծել արհմիություններ, որպես մասսայական կազմակերպություններ, որոնք ընդգրկում էին հնարավորին չափ մեծ թվով բանվորներ։ Բոլշևիկները ձգտում էին հասնել այն բանին, որ արհմիությունները իրենց աշխատանքը տանեն պրոլետարիատի գաղափարական և քաղաքական ղեկավարի՝ պարտիայի հետ սերտ միասնության մեջ։*

*Մեծ աշխատանք էր տարվում ֆաբրիկա-գործարանային կոմիտեներում։ Նրանք ընդգրկում էին ձեռնարկության բոլոր բանվորներին, անկախ նրանց արհմիութենական պատկանելությունից (այդ ժամանակաշրջանում ձեռնարկություններում կային մի քանի արհմիություններ. մետաղագործները, օրինակ, ունեին իրենց միությունը, հյուսները մտնում էին ատաղձագործների միության մեջ։ Պետրոգրադում, Մոսկվայում և մյուս քաղաքներում ու շրջաններում ֆաբգործկոմները ռևոլյուցիայի հենց սկզբից գտնվում էին բոլշևիկների պարտիայի ղեկավարության տակ։*

*Բոլշևիկները հսկայական աշխատանք տարան բանակում։ Ռևոլյուցիայի առաջին իսկ օրերին բանակում պարտիայի աշխատանքը ղեկավարելու համար Կենտկոմին և Պետրոգրադի կոմիտեին կից ստեղծվեց «Ռազմական կազմակերպություն»՝ Ն. Ի. Պոդվոյսկու գլխավորությամբ։*

*Լայն աշխատանք ծավալվեց կանանց մեջ։ Վերսկսվեց բոլշևիկյան «Ռաբոտնիցա» ժուռնալի հրատարակությունը։ Երիտասարդության մեջ սկսվեց կազմակերպությունների ստեղծումը։*

Պարտիան հավատարիմ էր իր սկզբունքին՝ աշխատել այնտեղ, որտեղ
մասսաներ կան։

Փետրվարյան ռեւոլյուցիայից հետո պարտիան հանդիպեց պատմության
մեջ այնպիսի մի հազվագյուտ դրության, ինչպիսին երկիշխանությունն էր։
Սովետների դասակարգային նշանակությունն ու դերը հասկացան ո՛չ բոլորը
և ո՛չ միանգամից։ Բոլշևիկների առաջ խնդիր էր ծառացած կազմակերպել
միլիոնավոր մասսաներին, մերկացնել Ժամանակավոր կառավարության քա-
ղաքականությունը և համաձայնողականների դավաճանական դերը։ Վիթխարի
խնդիրները միանգամից չէ, որ պարզ դարձան ամբողջ պարտիային։

Նոր պայմաններում բոլշևիկյան որոշ կոմիտեներ և պարտիայի որոշ
անդամներ Ժամանակավոր կառավարության նկատմամբ ճիշտ դիրք չը-
գրավեցին։ Նրանք պրոլետարիատին կոչ էին անում վերահսկողության են-
թարկել Ժամանակավոր կառավարության յուրաքանչյուր քայլը, մերկացնել
նրա ամեն մի փորձ, որի նպատակն է իշխող դասակարգերի օգտին ճնշելու
ռեւոլյուցիայի հետագա զարգացումը։ Այդպիսի դիրքը կնշանակեր, որ իշխա-
նությունը մնում է Ժամանակավոր կառավարության ձեռքին, և մասսաների
մեջ ստեղծում էր այն կեղծ պատկերացումը, թե իբր Ժամանակավոր կա-
ռավարությունը կարող է գործել հօգուտ ռեւոլյուցիայի։

Ժամանակավոր կառավարության վրա ճնշում գործ դնելու հարցում
սխալ դիրք գրավեց Ի. Վ. Ստալինը, որը պահանջում էր անհապաղ հաշտու-
թյան բանակցություններ սկսել, բայց նա շուտով հրաժարվեց իր դիրքից և
միացավ Լենինին։

«...դա խորապես սխալ դիրք էր,— ասում էր հետագայում
Ստալինը,— որովհետև նա ծնում էր պացիֆիստական ցնորքներ,
ջուր էր լցնում պաշտպանողականության ջրաղացին և դժվարաց-
նում էր մասսաների ռեւոլյուցիոն դաստիարակությունը։ Այդ սխալ
դիրքին ես այն ժամանակ համամիտ էի պարտիայի այլ ընկերների
հետ միասին և նրանից լիովին հրաժարվեցի միայն ապրիլի կեսին՝
միանալով Լենինի թեզիսներին» (Երկեր, հատ. 6, էջ 385):

Վերադառնալով աքսորից՝ Կամենևը գրավեց կիսամենշևիկյան դիրք։ Նա
«Պրավդա»-ում հանդես եկավ հոդվածներով, որոնց մեջ պաշտպանում էր
«այնքանով, որքանով» ֆորմուլան։ Պատերազմի հարցի կապակցությամբ
Կամենևը, ոչ մի խոսք չասելով, որ պատերազմը մնացել է իմպերիալիստա-
կան նաև Ժամանակավոր կառավարության օրոք, զինվորներին կոչ էր անում
«գնդակին՝ գնդակով և արկին՝ արկով» պատասխանել, այսինքն՝ պատերազմը
շարունակել։ Կամենևի դիրքը պատերազմի ժամանակաշրջանի նրա օպորտու-
նիստական գծի շարունակությունն էր։ Բոլշևիկները հակահարված տվին
Կամենևին։ Թերթում այլևս պաշտպանողական հոդվածներ չերևացին։

Ապրիլի 3-ին Լենինը եկավ Պետրոգրադ։ Ժողովրդական մասսաները
խանդավառությամբ դիմավորեցին իրենց առաջնորդին։ Մայրաքաղաքի բոլոր
շրջանները բազմաթիվ բանվորական պատվիրակություններ առանձնացրին։
Բանվորական կազմակերպությունների գլուխ անցած գնում էին Կարմիր
գվարդիայի ջոկատները։ Կայազորի գնդերը ուղարկեցին զինվորական պատ-
վիրակություններ։ Զրահադիվիզիոնի զինվորները բերին զրահապատներ։
Կրոնշտադտից ժամանեցին ծովայիններ։ Ապրիլի 3-ի երեկոյան ֆինլանդա-
կան կայարանի հրապարակը լցվել էին ժողովրդի վիթխարի բազմություններ,



որոնք եկել էին դիմավորելու առաջնորդին, որն ինն տարի տանջվել էր էմի-
գրացիայում։ Լենինը զրահապատի վրայից արտասանեց ճառ, որով ողջունեց
ռեւոլյուցիայի մասնակիցներին և կոչ արեց պայքարել սոցիալիստական
ռեւոլյուցիայի հաղթանակի համար։

## 2. ԼԵՆԻՆԻ «ԱՊՐԻԼՅԱՆ ԹԵԶԻՍՆԵՐԸ»: ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ VII (ԱՊՐԻԼՅԱՆ) ԿՈՆՖԵՐԵՆՑԻԱՆ: ԲՈՒՐԺՈՒԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՐԱԾԵԼՈՒ ՊԱՐՏԻԱՅԻ ԿՈՒՐՍԸ:

Լենինի ժամանելը հսկայական նշանակություն ունեցավ ռեւոլյուցիայի
բախտի համար։ 1917 թվականի ապրիլի 4-ին Լենինը պարտիայի Կենտրոնա-
կան Կոմիտեի, Պետրոգրադի կոմիտեի անդամների և բանվորների ու զինվոր-
ների դեպուտատների Սովետների Համառուսաստանյան խորհրդակցության
բոլշևիկյան պատգամավորների առաջ հանդես եկավ «Պրոլետարիատի խըն-
դիրների մասին տվյալ ռեւոլյուցիայում» զեկուցումով։ Զեկուցման թեզիսները
1917 թվականի ապրիլի 7-ին հրապարակվեցին «Պրավդա»-ում։ Դրանք հան-
ճարեղ «Ապրիլյան թեզիսներն» էին, որոնց մեջ որոշված է բուրժուա-դեմոկրա-
տական ռեւոլյուցիան սոցիալիստական ռեւոլյուցիայի վերաճելու պարտիայի
կուրսը:

Իր թեզիսներում Լենինը մշակեց պարտիայի քաղաքական և տնտեսական
պլատֆորմը ռեւոլյուցիայի զարգացման նոր էտապում։ Ռեւոլյուցիայի հիմնա-
կան հարցը իշխանության հարցն է։ Թե որ դասակարգի դեմ է ուղղված ռեւո-
լյուցիան, որ դասակարգի ձեռքն է անցնում իշխանությունը՝ այդ հիմնական
հատկանիշով է որոշվում ռեւոլյուցիայի բնույթը։ Փետրվարյան ռեւոլյուցիայից
հետո Ռուսաստանում հաստատվեց երկիշխանություն։ Բայց պատմությունը
սովորեցնում է, որ հասարակության մեջ իրենց դրությամբ թշնամական, հա-
կամարտ երկու դասակարգերի երկու դիկտատուրաները միաժամանակ երկար
գոյություն ունենալ չեն կարող։ Երկիշխանությունն անխուսափելիորեն պետք
է ավարտվի կամ բուրժուազիայի դիկտատուրայով, կամ պրոլետարիատի
դիկտատուրայով։ Դասակարգերի պայքարը կվճռի, թե հատկապես որ դիկ-
տատուրայով կվերջանա երկիշխանությունը։ Պնդելով Ժամանակավոր կառա-
վարությանը բոլորովին չվստահելու և նրան որևէ աջակցություն ցույց տալուց
հրաժարվելու վրա, Լենինը պարտիային կոչ էր անում գլխավորել մասսաների
պայքարը և դա ուղղել սոցիալիստական ռեւոլյուցիայի նպատակին։

«Ռուսաստանում ընթացիկ մոմենտի առանձնահատկությունը,— գրում
էր Լենինը թեզիսներում,— անցումն է ռեւոլյուցիայի առաջին էտապից,
որը պրոլետարիատի բավականաչափ գիտակից և կազմակերպված չլի-
նելու պատճառով իշխանությունը տվեց բուրժուազիային, դեպի նրա
երկրորդ էտապը, որն իշխանությունը պետք է տա պրոլետարիատի և
գյուղացիության ամենաչքավոր խավերի ձեռքը» (Երկեր, հատ. 24, էջ 4):

Ռեւոլյուցիայի նոր էտապում ստեղծվեց նաև դասակարգերի նոր հարաբե-
րակցություն։ Սոցիալիստական ռեւոլյուցիայի շարժիչ ուժերը, այսինքն՝ ռեւո-
լյուցիան մինչև վերջը հասցնելու մեջ շահագրգռված դասակարգերը պրոլետա-
րիատը և չքավոր գյուղացիությունն էին։ Միջակը որպես աշխատավոր հակ-
վում էր դեպի չքավորությունը, իսկ որպես սեփականատեր՝ պաշտպանում էր
կուլակին։ Իր երկակի դրության պատճառով նա տատանվող դիրք էր գրա-

վում։ Գյուղացիության վերաբերմամբ պարտիան անցավ նոր լոզունգի, որը համապատասխանում էր նոր ստրատեգիական էտապի խնդիրներին։ Նոր էտապում այդ լոզունգի անհրաժեշտությունը Լենինն ապացուցեց դեռևս «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան դեմոկրատական ռևոլյուցիայի մեջ» աշխատությունում։ Սոցիալիստական ռևոլյուցիայում պրոլետարիատն ընթանում է գյուղացիական չքավորության հետ ընդդեմ բուրժուազիայի քաղաքում և գյուղում՝ չեզոքացնելով միջակ գյուղացիությանը։

Ընդ որում նկատի էր առնվում, որ միջակի չեզոքացումը սոցիալիստական ռևոլյուցիայում ամենևին էլ այն չէ, ինչը բուրժուազիայի չեզոքացումն է բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայում։ Ռուսական առաջին ռևոլյուցիայում բուրժուազիայի չեզոքացումը նշանակում էր ցարիզմի հետ նրա համաձայնության մերկացում, նրա մեկուսացում, որպեսզի նրան թույլ չտրվեր «ժողովրդական ազատության պարտիայի» կեղծ անունով խաբելու գյուղացիությանը։ Միջակի չեզոքացումը ամենևին էլ չէր նշանակում նրան վանել ռևոլյուցիայից։ Ընդհակառակը, պարտիան անում էր ամեն բան, որ միջակին ներգրավեր ռևոլյուցիայի մեջ, նրան նվաճեր համաձայնողականներից, կտրեր կուլակից, միջակին դարձներ պրոլետարիատի դաշնակիցը, բայց չէր մոռանում նրա երկակի բնույթի մասին, հաշվի էր առնում նրա տատանման հնարավորությունը։

«Ապրիլյան թեզիսներ»-ում նախանշելով բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու կուրսը և բնութագրելով նոր ռևոլյուցիայի շարժիչ ուժերը, Լենինը որոշեց նաև իշխանության կազմակերպման քաղաքական ձևը։ Մարքսը, ելնելով Փարիզի Կոմունայի փորձից, խոսում էր «Փարիզի Կոմունայի տիպի» պետական իշխանության նոր ձևի մասին։ Բայց II Ինտերնացիոնալի առաջնորդներ Կաուցկին, Պլեխանովը և ուրիշներ խեղաթյուրեցին Մարքսի գաղափարները պետության մասին, պաշտպանելով բուրժուական պառլամենտական ռեսպուբլիկան, որպես պետության լավագույն ձև՝ սոցիալիզմին անցնելու համար։ Փարիզի Կոմունայի և 1905 թվականի ռևոլյուցիայի փորձի հիման վրա Լենինը մերկացրեց օպորտունիստներին, ապացուցելով, որ կյանքն առաջ է քաշել նոր, «դեմոկրատական պետության ավելի բարձր տիպ» պառլամենտական դեմոկրատական ռեսպուբլիկայի համեմատությամբ. այդ նոր պետության սաղմերը Փարիզի Կոմունան և Սովետներն էին։ 1905 և 1917 թվականների ռևոլյուցիաների փորձի ուսումնասիրման հիման վրա Լենինն առաջ քաշեց Սովետների ռեսպուբլիկան՝ որպես պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձև։

«Ոչ թե պառլամենտական ռեսպուբլիկա,— ասում էր Լենինը,— Բ. Դ. Սովետներից դրան վերադառնալը կլիներ մի քայլ դեպի ետ,— այլ բանվորների, բատրակների և գյուղացիների դեպուտատների Սովետների ռեսպուբլիկա ամբողջ երկրում, վարից մինչև վեր» (Երկեր, հատ. 24, էջ 6)։

Դա նոր պայմաններում՝ կապիտալիզմից կոմունիզմի անցնելու ժամանակաշրջանում հասարակության քաղաքական կազմակերպության ձևերի վերաբերյալ մարքսիստական ուսմունքի հետագա զարգացումն էր Լենինի կողմից։ Դա մեծագույն գիտական հայտնագործություն էր, որը հսկայական դեր խաղաց Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթական գործում։

«Ամբողջ իշխանությունը Սովետներին», այդ էր պարտիայի տված լոզունգը։



«Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը չէր նշանակում կառավարությունից սոսկ հեռացնել բուրժուական մինիստրներին և նրա կազմի մեջ մտցնել Սովետներում մեծամասնություն կազմող պարտիաների ներկայացուցիչներին՝ էսեռներին ու մենշևիկներին։ Լոզունգի նման ըմբռնման դեպքում կմնար ամբողջ հին պետական ապարատը, միայն մինիստրները կփոխվեին։ Իսկ հին ապարատի պահպանումը, ամեն տեսակ մինիստրի գլխավորությամբ, որը թեկուզ առաջադրված լիներ Սովետի կողմից, իրականում կնշանակեր նաև բուրժուազիայի իշխանության պահպանում։ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լենինյան լոզունգը չէր հանգում այն բանին, որ ժամանակավոր կառավարության մեջ փոփոխեն անհատներին, կադետներին փոխարինեն էսեռներով և մենշևիկներով։ Այդ լոզունգը նշանակում էր երկիշխանության վերացում և Սովետների միիշխանության ու լիակատար իշխանության հաստատում, նոր տիպի պետության կազմակերպում, ժողովրդի գլխին կանգնած հին պետական մեքենայի ոչնչացում և Սովետների բազայի հիման վրա, վերից վար, ամբողջապես ժողովրդի շահերին համապատասխանող նոր պետական ապարատի ստեղծում։

«Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը այն ժամանակվա պայմաններում չէր նշանակում կոչ անել անհապաղ տապալելու ժամանակավոր կառավարությունը, դիմելու զինված ապստամբության։ Ժամանակավոր կառավարությունը ուժով տապալել՝ կնշանակեր հանդես գալ նաև Սովետների դեմ, որոնք համաձայնության էին եկել բուրժուական կառավարության հետ և պաշտպանում էին նրան։ Լենինը, ինչպես և Մարքսը, ռևոլյուցիան, զինված ապստամբությունը, համարում էր ընդհանուր կանոն, որովհետև իր դարն ապրած ոչ մի դասակարգ իր իշխանությունը կամովին, առանց զինված պայքարի չի զիջում իրեն փոխարինելու եկած մյուս դասակարգին։ Բայց Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Ռուսաստանի կոնկրետ պատմական պայմաններում, «բացառության կարգով»,—ինչպես գրում էր Լենինը,—ստեղծվեց ամբողջ իշխանությունը խաղաղ ճանապարհով Սովետներին անցնելու հնարավորություն։ Բուրժուազիան դեռևս չէր համարձակվում մասսաների նկատմամբ բռնություն գործադրել։ Ուժը ժողովրդի կողմն էր։ Բոլշևիկների պարտիան կարող էր ազատ կերպով աշխատել մասսաների մեջ։ Ի տարբերություն անցյալ բոլոր ռևոլյուցիաների, ժողովրդի ձեռքին գտնվում էր իշխանության պատրաստի ապարատ՝ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետները։ Եթե Սովետները, որոնք ներկայացնում էին բանվորներին և գյուղացիներին, ժողովրդի ճնշող մեծամասնությանը, հայտարարեին, թե իրենց ձեռքն են վերցնում ամբողջ իշխանությունը, ոչ ոք չէր համարձակվի նրանց հակառակել։

Առաջին էտապում «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը նշանակում էր ամբողջ իշխանության անցում Սովետներին, այն ժամանակվա Սովետների միիշխանություն, որոնցում մեծամասնությունը պատկանում էր էսեռներին ու մենշևիկներին։ Ավելին, ռևոլյուցիայի խաղաղ զարգացումը նշանակում էր ոչ միայն իշխանության խաղաղ անցում տվյալ Սովետներին։ Դասակարգերի ու պարտիաների պայքարը Սովետների ներսում, իշխանություն ունեցող պարտիաների փոփոխվելը, Սովետների միիշխանության և անսահման իշխանության դեպքում կարող էին ընթանալ խաղաղ։ Բուրժուա-դե-

մոկրատական ռևոլյուցիայի հետագա վերաճումը սոցիալիստական ռևոլյուցիայի կարող էր խաղաղ տեղի ունենալ։

Իշխանությունը էսեռա-մենշևիկյան Սովետներին հանձնելու սուսկ փաստը չէր փոխի այդ պարտիաների էությունը։ Էսեռների ու մենշևիկների տատանումները, նրանց համաձայնողականությունը կպահպանվեին, բայց դա տեղի կունենար բուրժուազիայից խզված Սովետներում, աշխատավոր լայն մասսաների աչքի առաջ, որոնք իրավունք ունեին Սովետների կազմից հետ կանչելու վստահությունը չարդարացրած պատգամավորներին։ Իշխանության գլուխ անցած և ժողովրդին խաղաղություն, հող, հաց, ազատություն տալու անընդունակ մանրբուրժուական պարտիաների տատանումները կվարկաբեկեին էսեռներին և մենշևիկներին։ Սովետներում գտնվող բոլշևիկները, չմտնելով կառավարության մեջ, մնալով օպոզիցիայի պարտիա, կքննադատեին և կմերկացնեին էսեռներին ու մենշևիկներին։ Բոլշևիկները մենշևիկա-էսեռական կառավարությունից կպահանջեին լուծելու ռևոլյուցիայի բոլոր հիմնական հարցերը։ Բայց մենշևիկներն ու էսեռները անընդունակ էին լուծելու այդ հարցերը։ Ժողովրդական մասսաներն իրենց փորձով և բոլշևիկների բացատրական աշխատանքի ազդեցության տակ կցրեին իրենց պատրանքները մենշևիկների ու էսեռների նկատմամբ, կհամոզվեին նրանց դավաճանական դերի մեջ և պետության ղեկավարությունը կհանձնեին բոլշևիկյան պարտիային, որը միայն ընդունակ է հասնել խաղաղության, աշխատավորներին տալ հող, հաց և ազատություն։ Կառավարությունը կփոխվեր պետական իշխանության միակ և լիիշխան օրգաններ դարձած Սովետների ներսում՝ խաղաղ պայքարի կարգով։ Այսպիսով, պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան կվերաճեր պրոլետարիատի սոցիալիստական դիկտատուրայի։

Լենինը ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորությունը համարում էր «չափազանց հազվադեպ պատմության մեջ և չափազանց արժեքավոր»։ Բայց այն իրադրությունը, որ ստեղծել էր այդպիսի հնարավորություն, կարող էր փոխվել, և պարտիան կկանգներ իշխանությունը զինված ճանապարհով վերցնելու անհրաժեշտության առաջ, ինչպես որ այդ տեղի ունեցավ։ Պնդելով խաղաղ զարգացման հնարավորության լիակատար օգտագործման վրա, Լենինը ոչ մի րոպե չէր մոռանում ռևոլյուցիայի զարգացման նաև մյուս ուղին, երբ հարկ կլինի բուրժուազիայի դիկտատուրան տապալել զինված ապստամբությամբ։

Լենինը համառորեն պահանջում էր ստեղծել Կարմիր գվարդիա, ամրապնդել և համախմբել պրոլետարիատին, կազմակերպել գյուղի պրոլետարական և կիսապրոլետարական տարրերին, զինվորներին նվաճել բոլշևիկների կողմը։ Պարտիան ռևոլյուցիայի խաղաղ զարգացման պայմաններում ևս զինված պայքարի համար անդուլ կերպով նախապատրաստում էր ուժերը հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի, աշխատում էր քաղաքական բանակ ստեղծել ռևոլյուցիան իրականացնելու համար։

Իշխանությունը Սովետներին անցնելու իմաստով և Սովետների ներսում պրոլետարիատի դիկտատուրայի համար հետագա պայքարի իմաստով ռևոլյուցիայի խաղաղ զարգացման հնարավորության ընդունումը նշանակում էր, որ պարտիան ժամանակավորապես հետաձգում էր իմպերիալիստական պատերազմը քաղաքացիական պատերազմի վերածելու վերաբերյալ պատերազմի



ժամանակաշրջանում առաջադրած լոզունգը։ Այդ լոզունգի պահպանումը կըհակասեր ռևոլյուցիայի խաղաղ զարգացման վերաբերյալ պարտիայի կուրսին։ Գլխավոր խնդիրն այն էր, որ պարտիան Սովետներում իր կողմը նվաճեր մեծամասնությունը։ Լենինը գրում էր, որ ռևոլյուցիայի տվյալ ժամանակաշրջանում «քաղաքացիական պատերազմը մեզ համար վերածվում է խաղաղ, տևական և համբերությամբ մղվող դասակարգային պրոպագանդայի» (Երկեր, հատ. 24, էջ 283)։

«Ապրիլյան թեզիսներ»-ում Լենինը տվեց ցարիզմի տապալումից հետո պատերազմի նկատմամբ բոլշևիկների վերաբերմունքի գնահատականը։ Պատերազմը չէր դադարել Ռուսաստանի կողմից իմպերիալիստական լինելուց նաև նոր կառավարության ժամանակ, վերջինիս բուրժուական բնույթի և նրա հափշտակողական նպատակների պատճառով։ Ուստի բոլշևիկները պետք է պայքարեն կողոպտչական պատերազմը շարունակելու դեմ, հանուն իսկական դեմոկրատական հաշտության՝ առանց ամեն տեսակ անեքսիաների և ռազմատուգանքների։ Բայց Փետրվարյան ռևոլյուցիայից հետո բոլշևիկները դադարեցին պարտվողականներ լինելուց, որովհետև ինքնակալությունը տապալված էր, Ռուսաստանում ստեղծված էին Սովետներ, որոնք ներկայացնում էին պատերազմով չշահագրգռված բանվորներին ու գյուղացիներին։ Վերցնելով իշխանությունը, Սովետները կարող էին վերջ տալ պատերազմին։ Սակայն պարտիան չկանգնեց նաև պաշտպանողականության դիրքի վրա, որովհետև դա կնշանակեր աջակցել իմպերիալիստական պատերազմին, պաշտպանել բուրժուա-կալվածատիրական իշխանությունը։ Պատերազմի հարցում պարտիայի լոզունգը ամբողջ իշխանությունը Սովետներին հանձնելու պահանջն էր։ Միայն նրանք, որպես ժողովրդի ամենալայն մասսաների ներկայացուցիչներ, կկարողանան ապահովել հաշտության կնքումը հանուն ժողովրդի, այլ ոչ թե կապիտալիստների շահերի։ Հարկավոր էր բարեխիղճ «պաշտպանողականներին» համբերությամբ բացատրել կապիտալի անխզելի կապը իմպերիալիստական պատերազմի հետ և դեմոկրատական հաշտությամբ, առանց կապիտալի իշխանությունը տապալելու պատերազմը վերջացնելու անհնարինությունը։ Պատերազմի բնույթի պարզաբանման ուղղությամբ ամենալայն աշխատանք պետք է կատարվեր բանակում. հարկավոր էր ամեն կերպ խրախուսել զինվորների եղբայրացումը ռազմաճակատում, որովհետև դա ռևոլյուցիոնացնում էր պատերազմող երկրների զինվորական մասսաներին։

Լենինյան թեզիսներում տնտեսական պլատֆորմը արդյունաբերության բնագավառում հանգում էր հետևյալ պահանջներին՝ Սովետների կողմից վերահսկողություն իրականացնել հասարակական արտադրության և արտադրանքի բաշխման նկատմամբ, երկրի բոլոր բանկերն անհապաղ միացնել մեկ ընդհանուր համազգային բանկի մեջ և սովետական վերահսկողություն մտցնել նրա գործունեության նկատմամբ։ Ագրարային հարցում Լենինը առաջարկում էր բռնագրավել բոլոր կալվածատիրական հողերը և այդ հիման վրա ազգայնացնել երկրի բոլոր հողերը, հողերի տնօրինումը հանձնել գյուղացիների և բատրակների Սովետներին։

Պարտիական կյանքի բնագավառում լենինյան թեզիսներում առաջարկվում էր անհապաղ հրավիրել պարտիայի համագումար, վերանայել պարտիայի ծրագիրը այն ամեն մի նորը հաշվի առնելու նպատակով, ինչ որ կուտակվել էր 1903 թվականից։ Լենինն առաջարկում էր փոխել պարտիայի անունը.

սոցիալ-դեմոկրատական անվան փոխարեն պարտիան անվանել կոմունիստական, քանի որ գրեթե ամբողջ աշխարհում սոցիալ-դեմոկրատիայի լիդերները դավաճանել էին սոցիալիզմին և անցել բուրժուազիայի կողմը։ Այդպիսի անվանումը ճիշտ է բնորոշում պարտիայի պայքարի նպատակը՝ կոմունիզմի կառուցումը։ Լենինը կոչ էր անում ստեղծել Նոր, III Կոմունիստական ինտերնացիոնալ՝ զերծ օպորտունիզմից, սոցիալ-շովինիզմից։

Լենինյան թեզիսներն ընդգրկում էին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու համար մղվող պայքարի բոլոր կողմերը։ Թեզիսները որոշում էին պրոլետարական ռևոլյուցիայի շարժիչ ուժերը, նշում էին անցման էտապները, տալիս էին պարտիայի տնտեսական, այդ թվում ագրարային պլատֆորմը։ Լենինյան թեզիսներում որոշված է պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևը՝ Սովետների ռեսպուբլիկա։ Թեզիսները տալիս էին սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու տեսականորեն հիմնավորված, կոնկրետ պլան։

Լենինյան թեզիսներին ավյուններով դիմավորեցին բուրժուական և համաձայնողական բոլոր պարտիաները։ Բուրժուազիան փորձում էր հավատացնել ժողովրդին, թե իբր Լենինը հաշվի չի նստում պատմության և երկրի շահերի հետ։ Լենինի նկատմամբ և սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան գաղափարի նկատմամբ իր ատելության մեջ բուրժուազիան մենշևիկների և էսեռների լիդերների աջակցությամբ հասավ հրեշավոր զրպարտության, թե իբր Լենինը կապված է գերմանացիների հետ։ Մենշևիկները գոռում էին, թե Լենինը իբր «ռեակցիային ծառայություն» է մատուցում, թե «ռևոլյուցիային անդառնալի վտանգ է սպառնում» և «անհրաժեշտ է ամենավճռական հակահարված տալ Լենինին ու նրա համախոհներին»։ Պլեխանովը հասավ այնտեղ, որ «Ապրիլյան թեզիսներն» անվանեց զառանցանք։ Տրոցկին Փետրվարյան ռևոլյուցիայից հետո էլ պաշտպանում էր իր հին՝ «առանց ցարի, բայց կառավարությունը բանվորական» գաղափարը, որը ռևոլյուցիան դեպի պարտություն էր տանում, որովհետև խզում էր բանվորների և գյուղացիների դաշինքը։ Լենինը «Նամակներ տակտիկայի մասին» հոդվածում հատկապես ընդգծեց, որ իր թեզիսներն ուղղված են ընդդեմ Տրոցկու, որը պերմանենտ ռևոլյուցիայի իր սխեմայում թռչում էր բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու պրոցեսի վրայից։ Պարտիայի շարքերում «Ապրիլյան թեզիսների» դեմ հանդես եկան Կամենևը, Ռիկովը, Պյատակովը և նրանց կողմնակիցների մի փոքր խումբ, որոնք պնդում էին, թե Ռուսաստանը սոցիալիստական ռևոլյուցիայի համար չի հասունացել։

Ամբողջ պարտիան երկու-երեք շաբաթվա ընթացքում համախմբվեց լենինյան գաղափարների շուրջը։ Պարտիան այդ բանին նախապատրաստված էր ամբողջ նախորդ պատմությամբ, օպորտունիզմի դեմ իր ամբողջ վճռական պայքարով։ Բոլշևիկները զինված էին բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու մասին Լենինի տեսությամբ։ Պարտիան հենվում էր մեկ, առանձին վերցրած, երկրում սոցիալիզմի հաղթանակի մասին Լենինի ուսմունքի վրա։

Պարտիայի գաղափարական համախմբվածությունը վառ կերպով ցույց տվեց Պետրոգրադի համաքաղաքային կոնֆերենցիան, որը բացվեց ապրիլի 14-ին, Լենինի կողմից իր թեզիսները հռչակելուց 10 օր անց։ Պետրոգրադի կոնֆերենցիայի պատգամավորների ճնշող մեծամասնությունը, լսելով Լենինի



զեկուցումը, արտահայտվեց հօգուտ Լենինի բանաձևի, որը կազմված էր նրա թեզիսների ոգով։

Ամբողջ երկրի մասշտաբով լենինյան թեզիսների շուրջը պարտիայի համախմբումն ավարտեց բոլշևիկների պարտիայի Համառուսաստանյան VII (Ապրիլյան) կոնֆերենցիան, որը կայացավ Պետրոգրադում 1917 թվականի ապրիլի 24—29-ին։ Կոնֆերենցիայում ներկա էին վճռական ձայնով 133 պատգամավոր և խորհրդակցական ձայնով՝ 18 պատգամավոր, որոնք ներկայացնում էին պարտիայի 80 հազար անդամներ։ Կոնֆերենցիան քննարկեց հետևյալ հարցերը՝ ընթացիկ մոմենտի մասին (պատերազմը և ժամանակավոր կառավարությունը և այլն). վերաբերմունքը բանվորների և զինվորների դեպուտատների Սովետների նկատմամբ, պարտիական ծրագրի վերանայումը, դրությունը ինտերնացիոնալում և մեր խնդիրները, ագրարային հարցը, ազգային հարցը և այլն։ Հիմնական հարցերի շուրջը՝ ընթացիկ մոմենտի, ագրարային հարցի և պարտիական ծրագրի վերանայման մասին զեկուցումներ տվեց Լենինը։ Այդ զեկուցումների հիմքում դրված էին «Ապրիլյան թեզիսներ»-ի դրույթները։ Այն համերաշխությունը, որով Համառուսաստանյան կոնֆերենցիան ընդունեց լենինյան բանաձևերը, վկայում էր պարտիայի տեսական և քաղաքական միաձուլության մասին։

Լենինի դեմ հարակից զեկուցումով հանդես եկավ Կամենևը։ Մենշևիկներին հետևելով, նա ասում էր, թե Ռուսաստանում բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան չի ավարտվել, իսկ երկիրը դեռ չի հասունացել սոցիալիստական ռևոլյուցիայի համար։ Կամենևը հանդես եկավ Ժամանակավոր կառավարությունից կապերը խզելու դեմ և պաշտպանեց կառավարությանը վերահսկելու մենշևիկյան առաջարկությունը, որը նշանակում էր իշխանությունը պահել բուրժուազիայի ձեռքում։ Կամենևը օրակարգից հանում էր սոցիալիստական ռևոլյուցիայի հարցը, ժխտելով սոցիալիզմի հաղթանակի հնարավորությունը մեկ, առանձին վերցրած երկրում՝ Ռուսաստանում։ Կամենևին պաշտպանեց Ռիկովը, որը հայտարարեց, թե սոցիալիստական ռևոլյուցիայի համար Ռուսաստանում օբյեկտիվ պայմաններ չկան, թե սոցիալիստական ռևոլյուցիայի ազդակը պետք է Արևմուտքը տա։ Լենինը մերկացրեց Կամենևի, Ռիկովի և նրանց փոքրաթիվ կողմնակիցների կապիտուլյանտական դիրքը, խիստ հանդես գալով Ռուսաստանում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության ժխտման դեմ.

«...Ռիկովն ասում է, թե սոցիալիզմը պետք է գա ուրիշ, ավելի զարգացած արդյունաբերություն ունեցող երկրներից։ Բայց դա այդպես չէ։ Չի կարելի ասել, թե ով կսկսի և ով կվերջացնի։ Դա մարքսիզմ չէ, այլ մարքսիզմի պարոդիա է» (Երկեր, հատ. 24, էջ 296)։

Կոնֆերենցիան Լենինի զեկուցման առթիվ միահամուռ կերպով բանաձև ընդունեց ընթացիկ մոմենտի վերաբերյալ։ Նշելով, որ կապիտալիզմի զարգացումն ամբողջ աշխարհում օրակարգի հարց է դարձրել պետական իշխանության անցումը պրոլետարիատի ձեռքը՝ սոցիալիզմի կառուցման համար, կոնֆերենցիայի բանաձևը ընդգծում էր ռուսական պրոլետարիատի ղեկավար դերը՝ «սոցիալիզմի ուղղությամբ գործնականորեն հասունացած մի շարք քայլերի անհետաձգելիությունը» ժողովրդին պարզաբանելու գործում։ Այդպիսի քայլեր են հանդիսանում հողի ազգայնացումը, պետական վերահսկողության սահմանումը բոլոր բանկերի նկատմամբ՝ դրանք միավորելով մեկ միասնական կենտ-

*բոնական բանկում, վերահսկողության սահմանումը ապահովագրական հիմնարկությունների և կապիտալիստների խոշորագույն սինդիկատների նկատմամբ: Նշված միջոցառումների հետ մեկտեղ Սովետները կարող էին անցնել ընդհանուր աշխատանքային պարհակի կիրառմանը:*

*«Բոլոր մատնանշված և նման միջոցառումները,—ասվում էր բանաձևում,— կարող են և պետք է ոչ միայն քննարկվեն ու նախապատրաստվեն՝ դրանք համապետական մասշտաբով անցկացնելու համար այն դեպքում, երբ ամբողջ իշխանությունն անցնի պրոլետարներին ու կիսապրոլետարներին, այլև իրականացվեն համաժողովրդական իշխանության տեղական ռևոլյուցիոն օրգանների կողմից, երբ դրա համար հնարավորություն է ստեղծվում»* (ՍՄԿՊ-ն... բանաձևերում, մաս I, էջ 441—442):

*Կոնֆերենցիայի բանաձևը հաստատեց լենինյան ուսմունքը մեկ, առանձին վերցրած երկրում՝ Ռուսաստանում, սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին: Այդ բանաձևը ուղղված էր թե՛ Կամենևի, թե՛ նրա կողմնակիցների կիսամենշևիկյան գծի դեմ, որոնք հրաժարվում էին սոցիալիստական ռևոլյուցիայից, թե՛ Տրոցկու ավանտյուրիստական, սոցիալիզմի հաղթանակի համար կործանարար քաղաքականության դեմ:*

*Ապրիլյան կոնֆերենցիան ընդունեց Լենինի գրած բանաձևը պատերազմի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի մասին: Կոնֆերենցիան նշեց, որ Ռուսաստանում իշխանության անցումը կալվածատերերի ու կապիտալիստների կառավարությանը չփոխեց պատերազմի իմպերիալիստական բնույթը: Ուստի պրոլետարական պարտիան չպետք է պաշտպանի ո՛չ պատերազմը, ո՛չ կառավարությանը, ո՛չ էլ նրա փոխառությունները: Կոնֆերենցիան բողոքեց կապիտալիստների կողմից տարածվող այն զրպարտանքի դեմ, թե իբր բոլշևիկները համակրում են սեպարատ հաշտությանը Գերմանիայի հետ: «Մենք գերմանական կապիտալիստներին համարում ենք նույնպիսի ավազակներ,— ասում է բանաձևը,— ինչպես և ռուսական, անգլիական, ֆրանսիական և այլ կապիտալիստներին, իսկ կայսր Վիլհելմին՝ նույնպիսի թագակիր ավազակ, ինչպես Նիկոլայ II-ին և անգլիական, իտալական, ռումինական ու մյուս բոլոր միապետներին»* (ՍՄԿՊ-ն... բանաձևերում, մաս I, էջ 422): *Պատերազմը կարելի է վերջացնել միայն մեկ ճանապարհով՝ ամբողջ պետական իշխանությունը բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետների ձեռքն անցնելու միջոցով:*

*Ագրարային հարցի վերաբերյալ զեկուցման մեջ Լենինը հատկապես կանգ առավ կալվածատիրական հողերը բռնագրավելու և ամբողջ հողերն ազգայնացնելու պահանջի դասակարգային իմաստի վրա: Կալվածատիրական հողերի անհատույց բռնագրավումը նախ և առաջ բավարարում էր գյուղացիության դարավոր երազանքը, բայց դրա հետ միասին քայքայում էր կալվածատերերի ու բուրժուազիայի տիրապետության հիմունքները: Կալվածատիրական սեփականությունը ճորտատեր-կալվածատերերի հենարանն էր և միապետության հնարավոր վերականգնման գրավականը: Կալվածատիրական հողի բռնագրավումը երաշխիք է ընդդեմ միապետության վերականգնման: Իսկ քանի որ կալվածատիրական հողերը գրավ են դրված բանկերում, ապա կալվածատերերի հողերի բռնագրավումը ծանրագույն հարված է նաև բուրժուական սեփականությանը: Ամբողջ հողի ազգայնացումը հողօգտագործումը կազատի ամեն տեսակ ճորտատիրական մնացորդներից:*



*Բացի դրանից, ինչպես գրված է Լենինի առաջարկած բանաձևում, «...հողի ազգայնացումը, իբրև հողի մասնավոր սեփականության վերացում, գործնականում կնշանակեր այնպիսի ուժգին հարված ընդհանրապես արտադրության բոլոր միջոցների մասնավոր սեփականությանը, որ պրոլետարիատի պարտիան պետք է ամեն տեսակ աջակցություն ցույց տա նման վերափոխությանը»* (ՍՄԿՊ-ն ...բանաձևերում, մաս I, էջ 426): *Պարտիան վճռականապես հանդես եկավ ագրարային հարցի լուծումը մինչև Սահմանադիր ժողովը հետաձգելու ժամանակավոր կառավարության ու համաձայնողականների փորձի դեմ և գյուղացիներին խորհուրդ տվեց հողը վերցնել անհապաղ և կազմակերպված:*

*Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը մեծապես կախված էր այն բանից, թե պրոլետարիատին կհաջողվի՞ արդյոք իր հետևից տանել ճնշված ազգությունների աշխատավորներին: Կոնֆերենցիայում ազգային հարցի վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ Ի. Վ. Ստալինը: Նա շարադրեց պարտիայի ազգային քաղաքականությունը՝ հիմնված լենինյան սկզբունքների վրա: Ստալինը ցույց տվեց, որ ազգերի ինքնորոշման իրավունքի համար՝ ընդհուպ մինչև անջատումը, պարտիայի հետևողական պայքարը այն վճռական պայմանն է, որը պարտիայի համար ապահովում է ճնշված ազգերի աջակցությունը: Մերկացնելով բունդականների կուլտուր-ազգային ավտոնոմիայի նացիոնալիստական լոզունգը, Ստալինը շարադրեց պարտիայի ազգային քաղաքականության հետևյալ դրույթները՝ 1) ժողովուրդների անջատման իրավունքի ճանաչում. 2) տվյալ պետության սահմաններում մնացած ժողովուրդների համար՝ մարզային ինքնավարություն. 3) ազգային փոքրամասնությունների համար՝ նրանց ազատ զարգացումը երաշխավորող հատուկ օրենքներ. 4) տվյալ պետության բոլոր ազգերի պրոլետարիատի համար՝ միասնական, անբաժան պրոլետարական կոլեկտիվ, միասնական պարտիա:*

*Պարտիայի ազգային քաղաքականության դեմ հանդես եկավ Պյատակովը, որը կրկնում էր նույն այն փաստարկումները, որպիսիք նա առաջ էր քաշում Լենինի դեմ պատերազմի տարիներին: Պյատակովը կոնֆերենցիայում պնդում էր, թե ազգերի ինքնորոշման լոզունգը՝ ընդհուպ մինչև անջատումը, իբր թե ռեակցիոն լոզունգ է, որովհետև ազգային պետությունը անցած էտապ է, որը անհնարին է իմպերիալիզմի պայմաններում: Հարկավոր է պայքար մղել ազգային շարժումների դեմ: Լենինը ջախջախիչ քննադատության ենթարկեց այդ տեսակետը, որն իրականում նշանակում էր պրոլետարիատի հրաժարումն ռևոլյուցիայի ազգային ռեզերվներն օգտագործելուց և որը ռևոլյուցիան դատապարտում էր պարտության:*

*Կոնֆերենցիան ընդունեց Լենինի գրած բանաձևը: Բանաձևի հիմնական կետը Ռուսաստանի կազմի մեջ մտնող բոլոր ազգերի ազատ անջատման և ինքնուրույն պետություն կազմելու իրավունքի ճանաչման դրույթն է: Միայն այդպիսի իրավունքի ճանաչումն էր ապահովում տարբեր ազգերի բանվորների համերաշխությունը: Դրա հետ մեկտեղ բանաձևում խոսվում էր այն մասին, որ անթույլատրելի է* ինքնորոշման իրավունքը *խառնել այս կամ այն ազգի անջատման նպատակահարմարության հարցի հետ: Յուրաքանչյուր առանձին դեպքում պարտիան այդ հարցը պետք է լուծի ամբողջ հասարակական զար-*

*գացման և սոցիալիզմի համար պրոլետարիատի պայքարի շահերի տեսակետից։*

*Այն ժողովուրդների համար, որոնք կցանկանան մնալ միասնական պետության սահմաններում, պարտիան պահանջում էր ամենալայն ինքնավարություն և հատուկ օրենքների հրատարակություն, որոնք երաշխավորեին ազգային փոքրամասնությունների ազատ զարգացում, անվավեր հայտարարեին ազգերից մեկի որևէ արտոնություն, ազգային փոքրամասնությունների իրավունքների որևէ խախտում։*

*Կոնֆերենցիան դատապարտեց մենշևիկա-բունդական «կուլտուր-ազգային ավտոնոմիան», որն արհեստականորեն սահմանազատում էր միևնույն բնակավայրում ապրող և նույնիսկ միևնույն ձեռնարկությունում աշխատող բանվորներին և ուժեղացնում էր բանվորների կապը առանձին ազգերի բուրժուական կուլտուրայի հետ։ Բանաձևը նշում էր, որ բանվոր դասակարգի շահերը պահանջում են բոլոր ազգությունների բանվորների միաձուլում միասնական պրոլետարական կազմակերպություններում՝ քաղաքական, արհմիութենական, կոոպերատիվ-լուսավորական և այլ կազմակերպություններում,*

> *«Միասնական կազմակերպություններում տարբեր ազգությունների բանվորների այդպիսի միաձուլումն է միայն,— ասվում էր բանաձևում,— որ պրոլետարիատին հնարավորություն է տալիս հաղթական պայքար մղելու միջազգային կապիտալի դեմ և բուրժուական նացիոնալիզմի դեմ»* (ՍՄԿՊ-Ն... բանաձևերում, մաս I, էջ 434—435)։

*Լենինի զեկուցման առթիվ կոնֆերենցիան անհրաժեշտ համարեց վերանայել պարտիական ծրագիրը, նշելով, թե որ ուղղությամբ պետք է ընթանա այդ վերանայումը։ Մոտալուտ սոցիալիստական ռևոլյուցիայի կապակցությամբ անհրաժեշտ էր տալ իմպերիալիզմի և իմպերիալիստական պատերազմների դարաշրջանի գնահատականը, ծրագրում ուղղել պետության վերաբերյալ դրույթը, մտցնել Սովետների ռեսպուբլիկա ստեղծելու պահանջը, հանել կամ ուղղել ծրագրի մնացած մասերը, մասնավորապես վերամշակել ագրարային ծրագիրը՝ ագրարային հարցի առթիվ ընդունած բանաձևի համապատասխան, մտցնել այն մի շարք մոնոպոլիաների ազգայնացման պահանջը, որոնք ամենից ավելի են նախապատրաստված դրա համար և այլն։*

*Ինտերնացիոնալի հարցի առթիվ Լենինն առաջարկում էր կապերը խզել Ցիմմերվալդյան միավորումից և անհապաղ սկսել նոր Ինտերնացիոնալի կառուցումը։ Ծայրահեղ դեպքում հարկավոր է միավորման մեջ մնալ միայն ինֆորմացիոն նպատակով։ Այդ առաջարկության դեմ դուրս եկավ Զինովևը, պնդելով պահպանել բլոկը ցիմմերվալդականների հետ, որոնք կապերը չէին խզել պաշտպանողականներից։*

*Կոնֆերենցիան որոշեց մնալ ցիմմերվալդյան բլոկում, այնտեղ պաշտպանելով ցիմմերվալդյան ձախի տակտիկան։ Լենինն այդ որոշումը սխալ էր համարում։ Հետագայում Լենինի տեսակետը ճիշտ ճանաչվեց։ Մայիսի սկզբին Կենտկոմը միաձայն որոշեց պատգամավորներ ուղարկել հրավիրվելիք ցիմմերվալդյան կոնֆերենցիան, նրանց իրավունք տալով անհապաղ հեռանալ կոնֆերենցիայից և դուրս գալ Ցիմմերվալդյան միությունից, եթե կոնֆերենցիան արտահայտվի սոցիալ-շովինիստների հետ որևէ մերձեցման կամ նրանց հետ գործեր քննելու օգտին։*

*Կոնֆերենցիան հանձնարարեց Կենտկոմին ձեռնամուխ լինել III Ինտեր-*



*նացիոնալի ստեղծմանը։ Կոնֆերենցիայում ընտրվեց Կենտկոմ Լենինի գլխավորությամբ։*

*Ապրիլյան կոնֆերենցիան բոլշևիկյան պարտիայի առաջին լեգալ կոնֆերենցիան էր, որ անցկացվեց Ռուսաստանում։ Կոնֆերենցիան իր նշանակությամբ հավասարազոր էր համագումարի։ Կոնֆերենցիան պարտիային զինեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու պայքարի պլանով։ Նա մերկացրեց և մերժեց Կամենևի, Պյատակովի և մյուսների օպորտունիստական գիծը, որոնք ռևոլյուցիան պարտության էին մատնում։ Ապրիլյան կոնֆերենցիայի որոշումները բանվոր դասակարգին և բոլոր աշխատավորներին ցույց տվին, թե որն է երկիրը պատերազմից և ավերածությունից դուրս բերելու, շահագործումից ազատելու և օտարերկրյա իմպերիալիստների կողմից Ռուսաստանի ստրկացման սպառնալիքը վերացնելու միակ ուղին, Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի համար պայքարի ուղին։*

## 3. ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՅՔԱՐԸ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԱՄԱՐ ԵՐԿԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ։ ՀՈՒԼԻՍՅԱՆ ՕՐԵՐԸ։

*Զինված Ապրիլյան կոնֆերենցիայի որոշումներով, պարտիան հսկայական աշխատանք ծավալեց մասսաների մեջ։ Նա դեպի ժողովուրդն էր գնում պարզ և ամբողջական ծրագրով, որը խոսում էր այն մասին, թե ինչպես նվաճել հաշտություն, հող, հաց։*

*Բոլշևիկների պարտիան հանդես եկավ բոլոր շահագործվողների և ընչազուրկների շահերի պաշտպանի ու ղեկավարի դերում։ Բոլշևիկները պայքարի էին հանում աշխատավորների բոլոր խավերին և տարբեր ռևոլյուցիոն հոսանքները ուղղում էին կապիտալիզմի դեմ սոցիալիզմի համար մղած պայքարի միասնական հունի մեջ։*

*Ամբողջ իշխանությունը Սովետներին անցնելու համար մղված պայքարում աշխատավորների ուղղակի և գլխավոր դասակարգային թշնամին, ինչպես ընդգծում էր Լենինը, բուրժուազիան էր։ Բայց բուրժուազիան հենվում էր Սովետներում գերակշռություն ստացած համաձայնողականների աջակցության վրա։ Էսեռներն ու մենշևիկները բուրժուազիայի հիմնական սոցիալական հենարանն էին։ Խնդիրը բուրժուազիայի ոտքի տակից այդ հենարանը ոչնչացնելն էր։ Հարկավոր էր Սովետներում և մյուս մասսայական կազմակերպություններում ղեկավարությունը խլել էսեռների և մենշևիկների ձեռքից, նրանց մեկուսացնել մասսաներից։ Ուստի բուրժուազիային ջախջախելու նպատակով բոլշևիկները հիմնական հարվածները հասցնում էին բուրժուազիայի սոցիալական հենարանին՝ «ամենամոտիկ թշնամիներին», ինչպես գրում էր Լենինը՝ համաձայնողականներին։*

*Պարտիայի հիմնական աշխատանքը տարվում էր մասսայական կազմակերպություններում, ամենից առաջ բանվորների և զինվորների դեպուտատների Սովետներում, գյուղացիների դեպուտատների Սովետներում և զինվորների կոմիտեներում։ Բանվորների դեպուտատների Սովետներն արդեն մարտ ամսվա ընթացքում ստեղծվել էին համարյա ամբողջ երկրում, արդյունաբերական բոլոր կենտրոններում և քաղաքներում։ Նահանգային, գավառային քաղաքներում ու արդյունաբերական կենտրոններում ստեղծվել էին մոտ 400*

Սովետներ, չհաշվելով այն Սովետները, որոնք ստեղծվել էին Դոնբասի շատածխահանքերում և մի քանի ուրիշ շրջաններում: Գյուղացիների դեպուտատների Սովետներն ավելի ուշ երևան եկան, քան բանվորական դեպուտատների Սովետները: Ամառվա սկզբներին մոտ 400 Սովետներ կային: Բանակի շատ վաշտերում, գնդերում և բարձր միավորումներով, ինչպես ռազմաճակատում, այնպես էլ կայազորներում ստեղծվեցին զինվորների կոմիտեներ: Եթե հաշվելու լինենք միայն գնդային կոմիտեները, ապա դրանց թիվը մի քանի հարյուրից անցնում էր: Բանակի համար հրատարակվում էին «Սոլդատսկայա պրավդա» և «Օկոպնայա պրավդա» թերթերը: Հսկայական աշխատանք էր տարվում արհմիություններում, ֆաբգործկոմներում և այլ մասսայական կազմակերպություններում: Այսպիսով, պարտիան քայլ առ քայլ ստեղծում էր քաղաքական բանակ կապիտալիզմի վրա գրոհելու համար:

Պարտիան աշխատավորներին համոզում էր, որ բոլշևիկյան գաղափարները ճշմարտացի են: Բոլշևիկների ճշմարտացիությունը ցույց տվեցին այն իրադարձությունները, որոնք ծավալվել էին երկրում դեռ Ապրիլյան կոնֆերենցիայի նախօրյակին և կոնֆերենցիայի ժամանակ:

Ապրիլի 18-ին (հին տոմարով) Ռուսաստանի աշխատավորները նշեցին Մայիսի 1-ի տոնը: Բանվորներն ու զինվորները առաջին անգամ ազատորեն դուրս եկան ցույցի: Դրոշների ու պլակատների մեծ մասը նվիրված էր դեմոկրատական հաշտության պահանջին: Հենց այդ օրը արտաքին գործերի մինիստր Միլյուկովը դաշնակից տերություններին ուղարկեց նոտա, որով հաստատում էր, թե ժամանակավոր կառավարությունը պահպանելու է ցարական կառավարության բոլոր պայմանագրերը և Ռուսաստանը պատերազմը շարունակելու է մինչև վճռական հաղթանակը: Ապրիլի 20-ին բանվորներն ու զինվորները, որոնք դրանից ընդամենը 2 օր առաջ ցույցի էին դուրս եկել հաշտության լոզունգով, իմացան Միլյուկովի նոտայի մասին: Ցերեկը փողոց դուրս եկան Պետրոգրադի կայազորի զինվորները և շարժվեցին դեպի Մարիինսկի պալատը, որտեղ նիստ էր անում ժամանակավոր կառավարությունը: Ցուցարարների ձեռքին կային պլակատներ «Ամբողջ իշխանությունը Սովետներին», «Կորչի՛ պատերազմը», «Կորչի՛ Միլյուկովը», «Կորչի՛ Գուչկովը» պահանջներով: Զինվորներին սկսեցին միանալ բանվորները: Քաղաքում միտինգներ սկսվեցին:

Ի պատասխան բանվորների ու զինվորների ելույթի ժամանակավոր կառավարության կողմնակիցները հակացույց կազմակերպեցին կառավարությանը վստահություն հայտնելու լոզունգով:

Նույն օրը, ապրիլի 20-ին, գումարվեց բոլշևիկների Կենտրոնական Կոմիտեն: Կենտկոմի բանաձևում, որ գրել էր Լենինը, նշվում էր, որ իր դասակարգային բնույթով բուրժուական ժամանակավոր կառավարությունը չի կարող վերջացնել իմպերիալիստական պատերազմը: Դրա հետ միասին Կենտկոմը նախազգուշացնում էր այնպիսի լոզունգներից, ինչպիսին են՝ «Կորչի՛ Միլյուկովը» կամ «Կորչի՛ Գուչկովը»: Բուրժուազիան և նրա էսեռա-մենշևիկյան դաշնակիցները կարող են դիմել մանյովրի. նրանք որոշ տեղափոխություններ կկատարեն կառավարության կազմում և ժողովրդին կասեն, թե այդպիսով փոխվել է նաև կառավարության քաղաքականությունը: Միայն ռևոլյուցիոն պրոլետարիատը, ժողովրդի մեծամասնության աջակցությամբ իր ձեռքը վերցնելով պետական իշխանությունը, հանձին Սովետների կստեղծի այնպիսի



կառավարություն, որին կհավատան ամբողջ աշխարհի բանվորները և որը միայն ի վիճակի է արագորեն վերջացնել պատերազմը:

Բոլշևիկների պարտիայի կոչով Պետրոգրադի բանվորները ապրիլի 21-ին դադարեցրին աշխատանքը և ցույցի դուրս եկան: Ավելի քան 100 հազար ցուցարարներ հաշտություն էին պահանջում:

Բուրժուական ու մանրբուրժուական ամբողջ մամուլը սկսեց բոլշևիկներին մեղադրել այն բանում, թե նրանք քաղաքացիական պատերազմ են պատրաստում: Դա նշանակում էր մեղքը ուրիշի վրա գցել, քաղաքացիական պատերազմի սանձազերծման նախաձեռնողները դրանում մեղադրում էին նրանց, որոնց դեմ իրենք գրոհ էին նախապատրաստում: Ապրիլի 21-ին բոլշևիկների Կենտկոմը ընդունեց մի բանաձև, որի մեջ վճռականապես ժխտեց բուրժուական և էսեռա-մենշևիկյան թերթերի այն զրպարտությունը, թե իբր բոլշևիկները սպառնում են քաղաքացիական պատերազմով: Կենտկոմը բոլոր բանվորներին կոչ արեց Սովետների պատվիրակների վերընտրություն կատարել, վռնդել համաձայնողականներին և այնտեղ ուղարկել ժողովրդի իսկական ներկայացուցիչներին:

Ցույցի ժամանակ Պետրոգրադի կոմիտեի անդամների մի փոքր խումբ (Ս. Բոգդատևը և ուրիշներ), առանց կոմիտեի հետ համաձայնեցնելու, առաջադրեց «Կորչի՛ ժամանակավոր կառավարությունը» լոզունգը: Կենտրոնական Կոմիտեն ապրիլի 22-ին ընդունեց Լենինի բանաձևը, որի մեջ դատապարտվում էր այդ լոզունգը որպես սխալ, ավանտյուրիստական, որովհետև դա նշանակում էր ապստամբության կոչ անել և հակասում էր ռևոլյուցիայի խաղաղ զարգացման, Սովետներում մեծամասնությունը խաղաղ կերպով պրոլետարիատի կողմը նվաճելու պարտիայի կուրսին:

Ցույցեր տեղի ունեցան Մոսկվայում, Ուրալում, Ուկրաինայում և երկրի այլ քաղաքներում ու շրջաններում:

Ապրիլյան իրադարձությունները սովորական ցույցեր չէին: Ապրիլյան օրերին պրոլետարիատը և բուրժուազիան հանդես եկան միաժամանակ, լայն մասսաների առաջ հարց դնելով՝ ո՞ւմ հետ գնալ: «Բարեխիղճ մոլորվածներից» և համաձայնողականներին հավատացողներից շատերը համոզվեցին, որ միայն պրոլետարիատը, վերցնելով իշխանությունը, կարող է վերջ տալ պատերազմին: Ապրիլյան ցույցը Լենինի բնորոշմամբ, առաջ բերեց միջին տարրերի «լվացում», այսինքն՝ արագացրեց տատանվող տարրերի անցումը ռևոլյուցիոն պրոլետարիատի կողմը: Դրանով իսկ ապրիլյան ցույցը նպաստեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստականի վերաճելու արագացմանը:

Ապրիլյան ցույցը իշխանության ճգնաժամի սկիզբը դրեց: Ժամանակավոր կառավարությունը, որը ենթադրում էր դավադրության միջոցով հասնել միիշխանության, անզոր գտնվեց: Նա որոշեց դիմել նոր մանյովրի, որ թելադրել էին նրան օտարերկրյա իմպերիալիստները, այն է՝ ընդլայնել կառավարության կազմը, ժողովրդին խաբելու համար այնտեղ մտցնելով էսեռներին և մենշևիկներին: Ժամանակավոր կառավարության և Պետրոգրադի Սովետի էսեռա-մենշևիկյան գործկոմի միջև մայիսի 5-ին համաձայնություն կայացավ էսեռների ու մենշևիկների պարտիաների ներկայացուցիչներին կառավարության կազմի մեջ մտցնելու մասին: Ստեղծվեց, այսպես կոչված, կոալիցիոն կառավարություն, որի կազմի մեջ մտան համաձայնողականներ Վ.

Չեռնովը — էսեռներից, Ի. Ծերեթելին և Մ. Սկոբելևը — մենշևիկներից և
ուրիշներ: Մենշևիկները, որոնք ռուսական առաջին ռևոլյուցիայում ժխտում
էին ռևոլյուցիոն կառավարության մեջ բանվորների ու գյուղացիների մաս-
նակցության թույլատրելիությունը, այս անգամ մտան բուրժուազիայի հակա-
ռևոլյուցիոն կառավարության մեջ: Այդ կոալիցիան ամրապնդեց խոշոր և
մանր բուրժուազիայի բլոկը, որը փաստորեն կազմավորվել էր դեռևս ռևոլյու-
ցիայի սկզբին: Բուրժուական կառավարությունը փրկվեց էսեռների ու մենշե-
վիկների կողմից, որոնք բացահայտորեն անցել էին բուրժուազիայի կողմը:

Կոալիցիոն կառավարությունը ճգնաժամի պատճառները չվերացրեց:
Ռևոլյուցիայի և ոչ մի խնդիր չլուծվեց: Քայքայումը, որ սկսվել էր ռևոլյու-
ցիայից շատ առաջ, շարունակում էր ուժեղանալ: Մայիսին բոլոր արդյունա-
բերական շրջաններում անընդհատ գործադուլներ էին տեղի ունենում տնտե-
սական դրության բարելավման լոզունգներով. բանվորները, կտրելով կապի-
տալիստների դիմադրությունը, առանց համաձայնեցնելու, սեփական նախա-
ձեռնությամբ, մտցնում էին ութժամյա աշխատանքային օր: Գործադուլային
ալիքը ուղեկցվում էր գնալով աճող ագրարային հուզումներով: Գյուղերում,
չսպասելով Սահմանադիր ժողովին, գյուղացիներն իրենք էին սահմանում կալ-
վածատերերից վարձակալած հողերի վարձաչափը, նրանցից խլում էին
պարապ մնացած հողերը և ցանում: Հուլիսի սկզբներին արդեն 43 նահանգ-
ներ ընդգրկված էին գյուղացիների շարժումով: Հակառակ Սովետներում նըս-
տած էսեռական ղեկավարների, նրանք ոտքի էին ելնում կալվածատերերի
դեմ: Գյուղացիական լայն մասսաներին նվաճելու գործում հսկայական դեր
խաղաց Լենինի ելույթը մայիսի 22-ին գյուղացիական դեպուտատների Համա-
ռուսաստանյան I համագումարում, որտեղ Լենինը շարադրեց ագրարային
հարցի վերաբերյալ բոլշևիկյան պլատֆորմը: Բանվորական և գյուղացիական
շարժումը ազդում էր բանակի վրա. պատերազմի շարունակումը առաջ էր բե-
րում զինվորների վրդովմունքը և ուժեղացնում նրանց ռևոլյուցիոն տրամա-
դրությունը:

Որքան խորանում էր ռևոլյուցիան, այնքան ավելի էր բուրժուազիան փոր-
ձում օգտագործել փրկության, նրա կարծիքով, միակ եղանակը՝ ստիպել բա-
նակին հարձակվել ռազմաճակատում: Բուրժուազիայի նպատակը պարզ էր:
Հաջողության դեպքում հարձակումը կամրապնդեր կառավարության իշխա-
նությունը, նրան հնարավորություն կտար հարձակվել բոլշևիկների վրա և
ցրել Սովետները: Հարձակման անհաջողության դեպքում՝ կարելի կլինի մեղ-
քը գցել բոլշևիկների վրա, մեղադրել նրանց բանակի քայքայման մեջ, արգե-
լել նրանց գործունեությունը, և ապա՝ ցրել նաև Սովետները:

Բայց բուրժուազիան հասկանում էր, որ միմիայն ուժով չի հաջողվի
ստիպել զինվորներին շարունակել պատերազմը: Կերենսկին, որն այդ ժամա-
նակ նշանակվել էր ռազմական մինիստր, նախապես պատրաստել էր հար-
ձակման հրամանը, բայց չէր նշել, թե երբ այն սկսել: Նա ցանկանում էր, որ
իր որոշումը հաստատի Սովետների Համառուսաստանյան I համագումարը,
որը գումարվեց հունիսի 3-ին: Համագումարի աշխատանքներին մասնակցում
էին ավելի քան 1000 պատգամավոր, նրանցից միայն 105-ն էին բոլշևիկներ:
Պատգամավորների գերակշռող մեծամասնությունը էսեռներ ու մենշևիկներ
էին: Օրակարգի կարևորագույն հարցը ժամանակավոր կառավարության
նկատմամբ ունենալիք վերաբերմունքի հարցն էր: Էսեռներն ու մենշևիկները



հանդես եկան բուրժուական կառավարության հետ բլոկի պահպանման օգտին: Պաշտպանելով կոալիցիան, մենշևիկների լիդեր Ծերեթելին հայտարարեց, թե Ռուսաստանում չկա ոչ մի քաղաքական պարտիա, որ միայն ինքը վերցներ ամբողջ իշխանությունը: Ի պատասխան դրան Լենինը հայտարարեց. «Կա այդպիսի պարտիա»: Խոսք ստանալով, Լենինը պատվիրակների առաջ մանրամասն շարադրեց բոլշևիկյան ծրագիրը, կոչ անելով ամբողջ իշխանությունը հանձնել Սովետներին:

Համաձայնողականները իրենց ամբողջ ուժերը մոբիլիզացրին ապացուցելու, թե «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը անիրագործելի է: Նրանք անցկացրին մի բանաձև, որը հավանություն էր տալիս բուրժուազիայի հետ կոալիցիային և ճիշտ էր համարում ժամանակավոր կառավարության քաղաքականությունը:

Բոլշևիկները որոշեցին համագումարին ցույց տալ, թե նրա մեծամասնության դիրքը որքան է տարբերվում պրոլետարիատի և բանակի առաջավոր խավերի կարծիքից: Բոլշևիկների պարտիայի Կենտկոմը Պետրոգրադի բանվորներին ու զինվորներին կոչ արին հունիսի 10-ին ցույցի դուրս գալ «Ամբողջ իշխանությունը Սովետներին», «Կորչե՛ն տասը կապիտալիստ-մինիստրները», «Բանվորական վերահսկողություն արտադրության վրա», «Ընդդեմ հարձակման քաղաքականության» լոզունգներով:

Բայց հունիսի 9-ին, ցույցի նախօրյակին, էսեռներն ու մենշևիկները որոշեցին թույլ չտալ ցույցը: Նրանց կողմից ղեկավարվող համագումարը բանաձև ընդունեց ցույցը արգելելու մասին:

Դժվար էր ցույցը բեկանել: Իսկ չենթարկվել համագումարի որոշմանը, նշանակում էր հակադրվել համագումարին: Հունիսի 9-ի ուշ գիշերը բոլշևիկյան պարտիայի Կենտկոմը որոշեց ենթարկվել համագումարի որոշմանը և բանվորներին ու գյուղացիներին կոչ արեց հրաժարվել հանդես գալուց: Կենտկոմի, Պետրոգրադի կոմիտեի անդամները, պարտիայի ակտիվ աշխատողները ամբողջ գիշերը շրջագայում էին շրջանները, ֆաբրիկաներն ու գործարանները, այցելում զորանոցները, բանվորներին ու զինվորներին բացատրում էին պարտիայի որոշումը և կոչ անում կատարել այդ որոշումը: Ոչ մի գործարան, ոչ մի զորագունդ դուրս չեկավ ցույցի: Դա վկայում էր, որ աճել է պարտիայի ազդեցությունը, որ նա կարողանում է մասսաների հետ կապ պահպանել և անհրաժեշտ պահին նահանջել:

Հաջորդ օրը բոլոր թերթերը հալածանք սկսեցին բոլշևիկների դեմ: Մենշևիկների լիդերները համագումարում բոլշևիկներին մեղադրում էին դավադրության մեջ և պահանջում էին զինաթափել նրանց: Բեկանելով ցույցը, համագումարը իր պատգամավորներին հանձնարարեց այցելել գործարաններն ու ֆաբրիկաները և այնտեղ նրանք համոզվեցին, որ բանը ոչ թե բոլշևիկների դավադրության մեջ է, այլ մայրաքաղաքի ամբողջ պրոլետարիատի և կայազորի տրամադրության մեջ: Երկյուղ կրելով մասսաների մեջ իր ազդեցությունը լիովին կորցնելուց, համագումարի նախագահությունը որոշեց կազմակերպել ցույց, բայց իր ղեկավարությամբ: Ցույցը նշանակվեց հունիսի 18-ին: Համագումարի լիդերները ցույցի օրը պատահաբար չէին ընտրել: Վստահ համագումարի աջակցության վրա, Կերենսկին հրաման տվեց հարավ-արևմտյան ռազմաճակատում հարձակում սկսել հունիսի 18-ին: Հենց նույն օրը նախա-

տեսված ցույցը պետք է քողարկեր բուրժուազիայի պլանները, հավանություն տար ռազմաճակատում սկսված հարձակմանը։

Նախատեսված օրը՝ հունիսի 18-ին Պետրոգրադում ծավալվեց մասսայական ցույց, որին մասնակցեց մոտ 500 հազար մարդ։ Բոլշևիկները որոշում ընդունեցին մասնակցել ցույցին իրենց լոզունգներով։ Ցուցարարների ճնշող մեծամասնությունն ընթանում էր «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգով։ Միայն մի փոքր խումբ դուրս եկավ ժամանակավոր կառավարության վստահություն հայտնելու լոզունգով։

Ցույցի վիթխարի թափը և նրանում բոլշևիկյան լոզունգների գերակշռությունը վկայում էին, որ մայրաքաղաքի պրոլետարիատը և կայազորը գնում են բոլշևիկների հետևից։ Ցույցը ապացուցեց, որ մասսաները չեն վստահում ոչ միայն ժամանակավոր կառավարությանը, այլև բուրժուազիայի հետ համաձայնություն կնքելու քաղաքականությանը, որը կիրառում էին էսեռներն ու մենշևիկները։

Ռազմաճակատում ռուսական զորքերի հարձակումը ձախողվեց, և հակառևոլյուցիան անհապաղ սկսեց կիրառել անհաջողության դեպքում ամբողջ մեղքը բոլշևիկների վրա բարդելու իր հղացած պլանը։

Հուլիսի 2-ին, հենց որ Պետրոգրադում տեղեկություններ ստացվեցին հարձակման անհաջողության մասին, կառավարության անդամ կադետները հայտարարեցին, որ իրենք դուրս են գալիս կառավարությունից։ Այդ քայլը հաշվի էր առնված այն նկատառումով, թե էսեռների ու մենշևիկների լիդերները կվախենան միայնակ գլխավորել իշխանությունը և կհամաձայնվեն կադետների պայմաններին՝ բանվորների զինաթափմանը, ռևոլյուցիոն զորքերի դուրսբերմանը Պետրոգրադից, իսկ որ գլխավորն է՝ բոլշևիկյան պարտիայի արգելմանը։

Բայց կադետները հաշվի չէին առել ժողովրդի տրամադրությունը. նրանք մտածում էին կառավարության մեջ ստեղծել ճգնաժամ և չէին տեսնում, թե ինչպես է հասունացել քաղաքական ճգնաժամը մայրաքաղաքում, իսկ ապա նաև երկրում։ Հուլիսի 3-ի առավոտյան Պետրոգրադում, առաջին գնդացրային գնդում, վաշտային և գնդային կոմիտեների ժողովում, որը նվիրված էր Սովետի գործկոմի պատգամավորների ընտրություններին, զինվորները զայրույթով ասում էին, որ ատելի պատերազմը շարունակվում է, որ ժողովուրդը սոված է, իսկ բուրժուազիան հարստանում է, որ կառավարությունը երկիրը տանում է դեպի աղետ։ Պահանջներ էին լսվում զինված ելույթի հարցը քննարկելու և ժամանակավոր կառավարությունը տապալելու մասին։ Որոշվեց պատվիրակներ ուղարկել մյուս գնդերն ու գործարանները՝ ելույթին մասնակցելու առաջարկությամբ։ Պատվիրակները ամենուրեք աջակցություն էին գտնում։

Պարտիան պաշտպանում էր մասսաների ռևոլյուցիոն տրամադրությունները, բայց դեմ էր անհապաղ ելույթին։ Պետրոգրադի բանվորներն ու զինվորները ուժ կունենային տապալել ժամանակավոր կառավարությանը և վերցնել պետական իշխանությունը, բայց այդ իշխանությունը նրանք չէին կարող պահել, որովհետև այդ ժամանակ երկրում ժողովրդի մեծամասնությունը գնում էր էսեռների և մենշևիկների հետևից։ Այդ պատճառով հուլիսի 3-ին Կենտրոնական Կոմիտեն որոշեց ձեռնպահ մնալ ելույթներից ու ցույցերից։ Բայց մասսաներին ետ պահել արդեն անհնարին էր։ Գործարաններում, զո-



րագնդերում և Բալթիական նավատորմիղի ռազմանավերում ունկնդրում էին պարտիայի ներկայացուցիչներին, բայց պահանջում էին ելույթ ունենալ։ Սպառնալիք կար, որ մասսաները փողոց դուրս կգան և բուրժուական կառավարությունը կգնդակոծի ցույցը, դա հայտարարելով զինված ապստամբություն։

Կենտրոնական Կոմիտեն վերացրեց իր որոշումը և վճռեց մասնակցել ելույթին, նպատակ ունենալով այն վերածել խաղաղ և կազմակերպված ցույցի՝ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգով։ Հաջորդ օրը ծավալվեց վիթխարի ցույց, որին մասնակցեց 500 հազարից ավելի մարդ։ Բանվորներն ընթանում էին զինված Կարմիր գվարդիայի պահպանության տակ, զինվորները գնում էին զենքը ձեռքներին։ Ցույցին մասնակցում էին Կրոնշտադտի մի քանի հազար ծովայիններ։

Ցուցարարներն առանձնացրին 90 ներկայացուցիչների, որոնք Տավրիկյան պալատում նիստեր անող Սովետի Կենտրոնական Գործադիր Կոմիտեին հանձնեցին ամբողջ իշխանությունը Սովետների ձեռքը վերցնելու պահանջը։ Բայց էսեռներն ու մենշևիկներն ուրիշ բան էին մտածում։ Նրանք կառավարության հետ համաձայնության էին գալիս ցույցը ջախջախելու մասին։ Կարգադրվեց ռազմաճակատից բերել ժամանակավոր կառավարությանը հավատարիմ զորքեր։ Մի քանի շրջաններում՝ Նևայի պողոտայի և Սադովայայի անկյունում, Լիտեյնի պողոտայում և այլ վայրերում յունկերներն ու կազակները գնդակոծեցին ցուցարարներին։

Ռազմաճակատից եկան հատուկ կանչված զորքերը։ Բուրժուական կառավարությունը անցավ ռեպրեսիաների։ Բանվորական թաղամասում համատարած խուզարկություններ էին կատարվում։ Հակառևոլյուցիոներները բանվորներից խլում էին զենքը։ Սկսվեց ցույցին մասնակցած գնդերի զինաթափումը։ Հակառևոլյուցիան առանձին ատելությամբ հարձակվեց բոլշևիկների վրա։ Հուլիսի 6-ին ավերվեց «Տրուդ» տպարանը, որը ձեռք էր բերվել այն փողերով, որ բանվորները հավաքել էին բոլշևիկների պարտիայի համար։ «Պրավդա» թերթն արգելվեց։ Նույն օրը հակառևոլյուցիոներները բանվոր Վոինովին սպանեցին միայն այն պատճառով, որ նա տպարանից դուրս էր բերում «Լիստոկ պրավդի»-ն, որը պարտիան լույս էր ընծայել փակված «Պրավդա»-ի փոխարեն։

Հակառևոլյուցիոն իշխանությունները սկսեցին ձերբակալել պարտիայի ակտիվիստներին։ Հրամայված էր ինչ կերպ լինի գտնել և ձերբակալել Լենինին։ Ժամանակավոր կառավարությունը, որի մեջ մտնում էին իրենց ռևոլյուցիոներներ ներկայացնող էսեռներն ու մենշևիկները, չխորշեց Լենինին որոնելու գործին ներգրավել նախկին ցարական պահնորդական բաժանմունքի պաշտոնյաներին։ Գործի դրվեց Գերմանիայի հետ բոլշևիկների կապերի վերաբերյալ վաղուց պատրաստված կեղծիք-զրպարտանքը։ Դատախազը կարգադրեց ձերբակալել և պատասխանատվության ենթարկել Լենինին և մի շարք այլ բոլշևիկների՝ իբր թե դավաճանության և զինված ապստամբություն կազմակերպելու համար։ Պետրոգրադի զինվորական օկրուգի հրամանատար գեներալ Պոլովցևը Լենինին փնտրելու համար հատկապես ստեղծված ջոկատի հրամանատարին հրամայեց նրան տեղն ու տեղը գնդակահարել։ Պարտիան իր առաջնորդին թաքցրեց ընդհատակում։ Լենինն սկզբում թաքնվում էր Պետրոգրադում, իսկ այնուհետև՝ քաղաքից դուրս, Ռազլիվ լճի մյուս կողմում։

Բուրժուազիան փորձում էր թակարդ սարքել։ Կադետական ու էսեռա-մենշևիկյան ամբողջ մամուլը պահանջում էր, որ Լենինը ներկայանա դատարանին։ Հակառևոլյուցիան էսեռների ու մենշևիկների աջակցությամբ ձգտում էր գլխատել պարտիան։ Ամբողջ երկրում սկսվեց հակառևոլյուցիայի սանձարձակությունը։ Ռազմական մինիստր Կերենսկին ռազմաճակատում մահապատիժ մտցրեց։ Էսեռա-մենշևիկյան կոմիտեների օգնությամբ իշխանությունները սկսեցին զինաթափել ռևոլյուցիոն զորամասերին ոչ միայն ռազմաճակատում, այլև թիկունքում։ Ռեպրեսիաներն առանձնապես ուժեղացան գեներալ Կոռնիլովին գլխավոր գերագույն հրամանատար նշանակելուց հետո։

Հուլիսյան օրերը փոխեցին իրադրությունը և դասակարգային ուժերի հարաբերակցությունը երկրում։ Մենշևիկներն ու էսեռները բուրժուազիայի հետ համաձայնության գալու իրենց քաղաքականությունն ավարտեցին վերջնականապես հակառևոլյուցիայի լագերն անցնելով։ Բուրժուազիայի հետ համաձայնության եկող պարտիայից էսեռները և մենշևիկները դարձան հակառևոլյուցիայի գործակիցների պարտիա։ Երկիշխանությունը վերջացավ։ Բուրժուազիան հասավ միիշխանության։ Ամբողջ իշխանությունն անցավ նրա ձեռքը։ Էսեռա-մենշևիկյան Սովետները դարձան բուրժուական կառավարության կցորդը։

Բայց բուրժուազիային չհաջողվեց ճնշել ռևոլյուցիոն մասսաներին։ Բոլշևիկները կարողացան ժամանակին նահանջել և հարվածի տակից դուրս բերել իրենց հիմնական ուժերը։

## 4. ՊԱՐՏԻԱՅԻ VI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ։ ՊԱՐՏԻԱՅԻ ԿՈՒՐՍԸ ԴԵՊԻ ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅՈՒՆ։

Երկրում իրադրության և ուժերի հարաբերակցության փոփոխման հետ միասին պետք է փոփոխվեին պարտիայի թե՛ տակտիկան, և թե՛ լոզունգները։ «Լոզունգների առթիվ» վերնագիրը կրող հոդվածում Լենինը ցույց տվեց, որ հուլիսի 4-ից հետո Ռուսաստանում ստեղծված քաղաքական դրությունը արմատապես տարբերվում է փետրվարի 27-ից մինչև հուլիսի 4-ը ընկած ժամանակաշրջանի դրությունից։ Վերջացավ ռևոլյուցիայի խաղաղ զարգացման էտապը, որն այն ժամանակ հնարավոր էր և ամենից ավելի ցանկալի։ Էսեռներն ու մենշևիկները իրենց դավաճանությամբ ձախողեցին զարգացման խաղաղ ուղին։ Այժմ, ամբողջ իշխանությունը հակառևոլյուցիայի ձեռքն անցնելուց հետո, բանվոր դասակարգը իշխանությունը վերցնել կարող էր միայն զինված ապստամբության միջոցով։

Դրա հետ միասին Լենինը նախազգուշացնում էր, որ կառավարության դեմ անհապաղ ելույթը սխալ կլիներ։ Վճռական գրոհը հնարավոր է միայն հենց մասսաների խորքերում առաջացած ռևոլյուցիոն նոր վերելքի պայմաններում։

Լենինն առաջարկեց ժամանակավորապես հանել «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Դա չէր նշանակում հրաժարվել Սովետական ռեսպուբլիկայից, որպես պետության նոր տիպից։ Խոսքն այն մասին էր, որ Սովետները, որոնց ղեկավարում էին բացահայտորեն հակառևոլյուցիոն բուրժուազիայի լագերն անցած և իրենց ձեռքերը ժողովրդի արյան մեջ թաթախած էսեռներն ու մենշևիկները, տվյալ կազմով չեն կարող ժողովրդի իշխանության օրգաններ լինել։



«Սովետները կարող են և պետք է հանդես գան այդ նոր ռևոլյուցիայի մեջ,— գրում էր Լենինը,— բայց ո՛չ այժմյան Սովետները, ո՛չ դեպի բուրժուազիան համաձայնողականություն ցուցաբերող օրգանները, այլ նրա դեմ ռևոլյուցիոն պայքար մղող օրգանները։ Որ մենք այն ժամանակ էլ կողմնակից կլինենք ամբողջ պետության կառուցմանը Սովետների տիպով, այդ այդպես է։ Դա Սովետների հարց չէ ընդհանրապես, այլ տվյալ կոնտրռևոլյուցիայի դեմ և տվյալ Սովետների դավաճանության դեմ պայքար մղելու հարց» (Երկեր, հատ. 25, էջ 231—232)։

Ռևոլյուցիայի հարցերի, այդ թվում փոփոխված իրադրության հետևանքով առաջացած նոր տակտիկայի հարցերի մշակումով զբաղվեց պարտիայի VI համագումարը։ Համագումարը տեղի ունեցավ Պետրոգրադում 1917 թվականի հուլիսի 26-ից մինչև օգոստոսի 3-ը։ Նա հարկադրված էր աշխատել կիսալեգալ պայմաններում։ Բուրժուական և մանրբուրժուական մամուլում ուժեղացավ բոլշևիկների հալածանքը։ Ժամանակավոր կառավարությունը ռազմական և ներքին գործերի մինիստրներին իրավունք տվեց արգելել ամեն տեսակ համագումարներ, այսինքն՝ կարգադրեց արգելել VI համագումարը։ Բանն այնտեղ հասավ, որ օտարերկրյա իմպերիալիստները բացահայտորեն պահանջում էին ցրել համագումարը և ձերբակալել պատգամավորներին։

Բայց հակառևոլյուցիայի պլանները ձախողվեցին։ Բանվորները ուշի-ուշով պահպանում էին իրենց պարտիայի համագումարը։

Լենինը չէր կարող ներկա գտնվել համագումարին, բայց նա ղեկավարում էր նրա աշխատանքը։ Լենինի մոտ՝ Ռազլիվ լճի մյուս ափն էին մեկնում Կենտկոմի անդամները։ Լենինը պատրաստեց քաղաքական դրության վերաբերյալ թեզիսները։ Լենինի «Լոզունգների առթիվ», «Ռևոլյուցիայի դասերը» և այլ հոդվածներ դրվեցին համագումարի բանաձևերի հիմքում։

Որպես առաջին հարցերից մեկը համագումարը քննարկեց Լենինի դատարան ներկայանալու հարցը։ Համագումարն արտահայտվեց Լենինի դատարան չներկայանալու օգտին և իր բողոքը հայտնեց ռևոլյուցիոն պրոլետարիատի առաջնորդի դեմ սկսված վրդովեցուցիչ հալածանքի դեմ։

Համագումարի հիմնական հարցերն էին Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունը և քաղաքական դրության հարցը։ Երկու հարցերի մասին էլ զեկուցում տվեց Ի. Վ. Ստալինը։ Զեկուցումների հիմքում դրված էին Լենինի ցուցումները։

«Ներկայումս,— ասվում էր քաղաքական դրության վերաբերյալ զեկուցման առթիվ համագումարում ընդունած բանաձևում,— խաղաղ զարգացումը և իշխանության անցավարգին անցումը Սովետների ձեռքը անհնարին է, որովհետև իրականում իշխանությունն արդեն անցել է հակառևոլյուցիոն բուրժուազիայի ձեռքը։

Ներկայումս ճիշտ լոզունգ կարող է լինել միայն հակառևոլյուցիոն բուրժուազիայի դիկտատուրայի լիակատար վերացումը։ Միայն ռևոլյուցիոն պրոլետարիատն է ի վիճակի, եթե նրան աջակցի չքավոր գյուղացիությունը, կատարել այդ խնդիրը, որը հանդիսանում է նոր վերելքի խնդիրը» («ՍՄԿՊ-ն... բանաձևերում», մաս 1, էջ 474)։

Այսպիսով, պարտիայի VI համագումարը նշեց, որ իշխանությունը պրո-

*լետարիատի ու չքավոր գյուղացիության ձեռքն անցնել կարող է միայն զինված ապստամբության միջոցով, բուրժուազիայի դիկտատուրայի տապալման միջոցով:*

*Պարտիայի՝ սոցիալիստական ռևոլյուցիայի կուրսի դեմ հանդես եկավ Բուխարինը, որը պնդում էր, թե գյուղացիները բուրժուազիայի հետ բլոկի մեջ են և բանվոր դասակարգի հետևից չեն գնա: Ի. Վ. Ստալինը, հերքելով այդ օպորտունիստական պնդումը, ցույց տվեց, որ Բուխարինը, գյուղացիությանը մոտենալով առանց դասակարգային վերլուծության, հեռացել է մարքսիզմի հողից: Կան տարբեր գյուղացիներ. ունևորները պաշտպանում են իմպերիալիստական բուրժուազիային, իսկ գյուղացիական չքավորությունը պաշտպանում է պրոլետարիատին՝ ռևոլյուցիայի հաղթանակի համար նրա մղած պայքարում: Համագումարում Ի. Վ. Ստալինը հակահարված տվեց Պրեոբրաժենսկուն, որն առաջարկում էր բանաձևի մեջ մտցնել այնպիսի ուղղում, որով ժխտվում էր Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հնարավորությունը և ասվում էր, թե Արևմուտքում պրոլետարական ռևոլյուցիայի առկայությամբ միայն կարելի է երկիրը տանել սոցիալիստական ուղիով:*

*«Բացառված չէ այն հնարավորությունը,— ասում էր Ստալինը,— որ հենց Ռուսաստանը հանդիսանա սոցիալիզմի ուղին հարթող երկիրը... Պետք է դեն շպրտել այն հնացած պատկերացումը, թե միայն Եվրոպան կարող է ուղի մատնանշել մեզ»* (Երկեր, հատ. 3, էջ 212—213):

*Համագումարը մերժեց Պրեոբրաժենսկու և Բուխարինի տրոցկիստական առաջարկությունները: Բանաձևն ընդունվեց միաձայն, չորսի ձեռնպահությամբ:*

*Կենտկոմի կազմակերպական աշխատանքի վերաբերյալ հաշվետու զեկուցումը տվեց Յա. Մ. Սվերդլովը: Ապրիլյան կոնֆերենցիայի ժամանակից անցած երեք ամսվա ընթացքում պարտիան աճել էր երեք անգամ: Ապրիլյան կոնֆերենցիայում ներկայացված էին պարտիայի 78 կազմակերպություն 80 հազար անդամներով, իսկ պարտիայի VI համագումարի մոտերքին պարտիան ուներ 162 կազմակերպություն 240 հազար անդամներով: Կենտրոնական Կոմիտեն կարճ ժամանակամիջոցում կարողացավ համախմբել ամբողջ պարտիային:*

*Համագումարը դեմ արտահայտվեց պաշտպանողականների հետ որևէ միավորման, նշելով, որ միասնություն հնարավոր է միայն մենշևիկ-ինտերնացիոնալիստների հետ, որոնք իրականում կապերը խզել են մենշևիկ-պաշտպանողականներից:*

*Համագումարը պարտիայի մեջ ընդունեց «մեժռայոնցիներին» Տրոցկու գլխավորությամբ, որոնք հայտարարեցին, թե իրենք համաձայն են բոլշևիզմի բոլոր դրույթներին: Այդ խումբը կազմավորվել էր դեռևս մինչև պատերազմը օպորտունիստների վերաբերմամբ հաշտվողականորեն տրամադրված բոլշևիկների ու մենշևիկ-տրոցկիստների տատանվող մասից: Պատերազմի ժամանակ «մեժռայոնցիները» գրավում էին ցենտրիստական դիրք, տատանվելով բոլշևիկների ու մենշևիկների միջև: «Մեժռայոնցիները» պատերազմը համարում էին իմպերիալիստական, դեմ էին պաշտպանողականությանը, բայց միևնույն ժամանակ չէին համաձայնում կապերը լիովին խզել մենշևիկնե-*



*րից: Այժմ նրանք կապերը խզել են պաշտպանողականներից: Ինչպես կյանքը ցույց տվեց, որոշ «մեժռայոնցիներ», օրինակ՝ Վոլոդարսկին, Ուրիցկին, իսկապես հրաժարվել էին իրենց ցենտրիստական տատանումներից, իսկ Տրոցկին իր կողմնակիցների մի փոքր խմբով միայն մի առ ժամանակ դադարեցրեց պայքարը բոլշևիզմի դեմ և մտավ պարտիայի մեջ, որպեսզի, գտնվելով պարտիայում, պայքարի լենինիզմի դեմ և պարտադրի իր օպորտունիստական, հակասոցիալիստական քաղաքականությունը:*

*Ընդհատակից դուրս գալուց հետո պարտիայի աշխատանքի պայմանների փոփոխությունը և նրա արագ աճումը պահանջում էին որոշ լրացումներ մտցնել պարտիական կանոնադրության մեջ: Կանոնադրության առաջին պարագրաֆում, որը սահմանում էր, թե պարտիայի անդամ համարվում է ամեն ոք, ով ընդունում է պարտիայի ծրագիրը, մտնում է նրա կազմակերպություններից մեկի մեջ և տալիս է անդամավճար, ավելացվեց. «ով ենթարկվում է պարտիայի բոլոր որոշումներին»: Պարտիայի կանոնադրության մեջ մտցվեց կետ. պարտիայի նոր անդամներ ընդունվում են տեղական պարտիական կազմակերպությունների կողմից պարտիայի երկու անդամների երաշխավորությամբ և հաստատվում են կազմակերպության անդամների ընդհանուր ժողովի կողմից: Նոր կանոնադրության մեջ ընդգծվում էր, որ պարտիայի բոլոր կազմակերպությունները կառուցվում են դեմոկրատական ցենտրալիզմի հիմունքներով, ցույց էր տրվում, որ պարտիական կազմակերպությունները միավորվում են ըստ շրջանների և մարզերի: Նախատեսվեց կանոնավոր կերպով հրավիրել համագումարներ (ամեն տարի) և Կենտկոմի պլենումներ (ոչ ուշ, քան 2 ամիսը 1 անգամ):*

*Համագումարը լսեց զեկուցում և ընդունեց բանաձև պարտիայի ու արհմիությունների փոխհարաբերությունների մասին: Հաստատելով պարտիայի որոշումները արհմիությունների չեզոքության մենշևիկյան տեսության դեմ, համագումարը որոշեց ամեն կերպ աջակցել բոլոր բանվորների համախմբմանը միություններում, պարտիայի բոլոր անդամներին՝ մտնել միությունները և դրանցում ստեղծել իրենց ֆրակցիաները, պայքարել ստեղծելու միջազգային կազմակերպություն, որի մեջ կմտնեն այն միությունները, որոնք չեն պաշտպանում իմպերիալիստական պատերազմը և կանգնած են դասակարգային պայքարի տեսակետի վրա:*

*Համագումարն առանձնապես կանգ առավ երիտասարդության մեջ տարվելիք աշխատանքի վրա, արտահայտելով կազմակերպորեն պարտիային չենթարկվող, բայց պարտիայի կողմից գաղափարապես ղեկավարվող երիտասարդական միություններ ստեղծելու օգտին: Համագումարը ընդգծեց, որ պարտիան պետք է ձգտի սկզբից ևեթ այդ կազմակերպությունները դարձնել սոցիալիստական, որոնց խնդիրն է զարգացնել երիտասարդ բանվորների ու բանվորուհիների դասակարգային ինքնագիտակցությունը և տանել նրանց պրոլետարիատի ռևոլյուցիոն ավանգարդի հետ համընթաց:*

*VI համագումարը քննարկեց պարտիայի տնտեսական պլատֆորմը: Համագումարի բանաձևում նշվում էր, որ երկիրն ապրում է խոր տնտեսական ճգնաժամ և «ընկնում է վերջնական տնտեսական քայքայման ու խորտակման անդունդը»: Բուրժուազիան գիտակցաբար այդ ճգնաժամը խորացնում է՝ ռևոլյուցիայի դեմ դա օգտագործելու համար: Ճգնաժամային դրությունից դուրս*

գալու միակ ելքը իշխանության անցումն է պրոլետարիատի և չքավոր գյուղացիության ձեռքը։ Միայն այդ դասակարգերը, վերցնելով իշխանությունը, կարող են երկիրը փրկել հետևյալ ռևոլյուցիոն միջոցառումներով՝ բանկային գործի ազգայնացում և կենտրոնացում. մի շարք մոնոպոլիաների (նավթային, քարածխային, շաքարի, մետալուրգիական և տրանսպորտի) ազգայնացում, հրաժարում արտաքին և ներքին պարտքերի վճարումից՝ պահպանելով մանր արտադրողների շահերը. իսկական բանվորական հսկողության սահմանում, որը պետք է աստիճանաբար անցնի արտադրության լիակատար կարգավորման. ճիշտ փոխանակության կազմակերպում քաղաքի և գյուղի միջև կոոպերատիվների և պարենավորման կոմիտեների օգնությամբ, քաղաքին՝ անհրաժեշտ գյուղատնտեսական մթերքներ, իսկ գյուղին՝ ֆաբրիկատներ, գյուղատնտեսական գործիքներ, մեքենաներ մատակարարելու նպատակով։ Բանաձևը բանվորական բոլոր կազմակերպություններին՝ արհմիություններին, ֆաբգործկոմներին, Սովետներին կոչ էր անում խրախուսել այդ միջոցների իրագործումը, այդ գործում զարգացնել նախաձեռնություն, հասնել այն բանին, որ դրանք կիրառվեն ընդհանուր-պետական մասշտաբով։

Համագումարի բոլոր որոշումների միջով անցնում է պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի լենինյան գաղափարը, որպես ռևոլյուցիայի հաղթանակի պայման։ VI համագումարը, որ տեղի ունեցավ ռևոլյուցիայի նոր վերելքի նախօրյակին, իր բոլոր որոշումները կենտրոնացրեց ամենակարևոր դիրքորոշման շուրջը՝ պրոլետարիատին ու չքավոր գյուղացիությանը նախապատրաստել զինված ապստամբության, սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակին։ Համագումարը մանիֆեստով դիմեց բոլոր աշխատավորներին, բոլոր բանվորներին, զինվորներին ու գյուղացիներին, նրանց կոչ անելով վճռական գոտեմարտի պատրաստվել բուրժուազիայի դեմ՝ բոլշևիկյան պարտիայի դրոշի տակ։

## 5. ԿՈՌՆԻԼՈՎՇՉԻՆԱՅԻ ՋԱԽՋԱԽՈՒՄԸ։ ԶԻՆՎԱԾ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ։ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ։

Հասնելով միջիշխանության, բուրժուազիան փորձում էր լրիվին ավարտել ռևոլյուցիան լիկվիդացնելու և Ռուսաստանում միապետությունը վերականգնելու իր պլանը։ Այդ պլանի կատարման միջոցներից մեկը արդյունաբերության հետագա ավերումն էր։ Այդ քաղաքականությունը ցինիկաբար արտահայտվեց միլիոնատեր Ռյաբուշինսկու այն հայտարարության մեջ, թե «սովի ոսկրոտ ձեռքը» պետք է բռնի ռևոլյուցիայի կոկորդից և խեղդի նրան։ Կապիտալիստները փակում էին գործարանները և տասնյակ հազարավոր բանվորների փողոց շպրտում։ Սպեկուլյացիան անասելի կերպով մոլեգնում էր ամբողջ երկրում։ Ապրանքների գները արագությամբ աճում էին։ Աշխատավորները տառապում էին սովից։ Երկրին սպառնում էր կատարյալ տնտեսական աղետ և ստրկացում օտարերկրյա կապիտալի կողմից։

Չսահմանափակվելով տնտեսական բնույթի միջոցներով, հակառևոլյուցիան պատրաստվում էր ռազմական դիկտատուրա մտցնել։ Ամերիկյան և անգլո-ֆրանսիական կառավարությունների համաձայնությամբ ռազմական դիկտատորի դերը դրվեց գլխավոր հրամանատար գեներալ Կոռնիլովի վրա։



Հակառևոլյուցիոն հեղաշրջման նախապատրաստումը քողարկելու նպատակով որոշվեց հրավիրել Պետական խորհրդակցություն բնակչության բոլոր ունևոր խավերի ներկայացուցիչներից։ Երկյուղ կրելով Պետրոգրադի ռևոլյուցիոն բանվորներից, բուրժուազիան որոշեց Պետական խորհրդակցությունն անցկացնել Մոսկվայում, որտեղ իրադրությունը նրան ավելի հանգիստ էր թվում։

Բոլշևիկների պարտիայի Կենտկոմը Մոսկվայի կոմիտեին առաջարկեց միօրյա բողոքի գործադուլ կազմակերպել բուրժուազիայի դավադրության դեմ։ Պետական խորհրդակցության բացման օրը, օգոստոսի 12-ին, գործադուլ արին Մոսկվայի 400 հազարից ավելի բանվորներ։ Մոսկվայի բանվորների համերաշխ գործադուլը ձախողեց հակառևոլյուցիայի պլանները։ Պարզ դարձավ, որ հակառևոլյուցիան իր պլանի կատարմանը հասնել կարող է միայն զինված ուժով։ Բուրժուազիան որոշեց ժողովրդի վզին փաթաթել քաղաքացիական պատերազմը։ Կոռնիլովը սկսեց մոբիլիզացնել անհրաժեշտ մարտական ուժեր։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի ներկայացուցիչները նրան օգնություն խոստացան։ Կոռնիլովը բանակցություններ էր վարում գեներալների հետ ռազմաճակատից զորքեր հանելու մասին։ Հայրենիքի դավաճանները կանգ չէին առնում դեպի Ռուսաստանի խորքը թշնամու ճանապարհը բացելու առաջ։ Նրանք իրենց երկրի աշխատավորներին ավելի վտանգավոր թշնամի էին համարում, քան օտարերկրյա նվաճողներին։

Օգոստոսի 25-ին Կոռնիլովը 3-րդ հեծյալ կորպուսը շարժեց Պետրոգրադի վրա։ Դրության բարդությունն այն էր, որ Կոռնիլովը խռովությունը բարձրացրել էր իբր թե ժամանակավոր կառավարության դեմ։ Էսեռներն ու մենշևիկները փորձում էին բանն այդպես էլ ներկայացնել. նրանք կոչ էին անում պաշտպանել ժամանակավոր կառավարությունը։ Լենինը պարտիային առաջարկեց իմաստուն տակտիկա։ Մասսաներին հանելով Կոռնիլովի դեմ, պարտիան պարզաբանում էր, որ մասսաներին կոչ չի անում պաշտպանել ժամանակավոր կառավարությանը, որը կոռնիլովյան ելույթի մասնակիցն է։ Պարտիան պայքար տարավ ռազմական դիկտատորի թեկնածուի դեմ, չդադարեցնելով մերկացնել ժամանակավոր կառավարությանը՝ նրա էսեռա-մենշևիկյան աջակիցների հետ միասին։ Բոլշևիկների կոչով ժողովրդական մասսաները ոտքի ելան Կոռնիլովի դեմ։ Մայրաքաղաքի բանվորները զենքի դիմեցին։ Արագությամբ ձևավորվում էին Կարմիր գվարդիայի նոր ջոկատներ։ Կոռնիլովի ելույթը ճնշվեց բանվորների և գյուղացիների կողմից, որոնց կազմակերպել էր բոլշևիկների պարտիան։ Կոռնիլովն ու նրա գործակիցները մասսաների պահանջով ձերբակալվեցին։ Ռևոլյուցիան ճզմելու՝ բուրժուազիայի և կալվածատերերի փորձը տապալվեց։

Հաշվի առնելով կոռնիլովյան խռովության մեծ վտանգը ռևոլյուցիայի համար և նկատի ունենալով մասսայական շարժման վերելքն ու շատ Սովետների ելույթները Կոռնիլովի դեմ, Լենինը Սովետներում դեռևս մեծամասնություն կազմող էսեռներին ու մենշևիկներին առաջարկեց իշխանությունը վերցնել Սովետների ձեռքը։ Պարտիան ուզում էր օգտագործել Սովետների կողմից իշխանությունը վերցնելու և ռևոլյուցիայի խաղաղ զարգացումն ապահովելու վերջին հնարավորությունը։ Բայց էսեռներն ու մենշևիկները, որոնք իրենց ամուր կապել էին բուրժուազիայի հետ, հրաժարվեցին Սովետների կողմից

իշխանությունը խաղաղ կերպով վերցնելու դեռևս մնացած միակ հնարավորությունից։

Կոռնիլովյան ելույթի ջախջախումը արմատապես փոխեց իրադրությունը երկրում։ Բանվորները հասկացան բուրժուազիային և կալվածատերերին փաստորեն քողարկող ու պաշտպանող համաձայնողականների էությունը։ Գյուղացիները հասկացան, որ գեներալների թիկունքում կանգնած են կալվածատերերը, որոնք չեն ուզում իրենց հողը տալ։ Ռազմաճակատում զինվորները համոզվեցին, որ մտադիր են իրենց ստիպել չորրորդ ձմեռն անցկացնել խրամատներում, որ բուրժուազիայի և կալվածատերերի կառավարությունը ձգձգում է արյունահեղ պատերազմը։ Ճնշված ազգերի աշխատավորների համար պարզ դարձավ, որ կոռնիլովականների հաղթանակի դեպքում անիմաստ է հույս դնել ազգային ճնշման վերացման վրա։ Ժողովրդի ճնշող մեծամասնությունը սեփական փորձով համոզվեց բոլշևիկյան գաղափարների ճշմարտացիության մեջ։ Աշխատավորներն սկսեցին Սովետներից ետ կանչել էսեռա-մենշևիկյան դեպուտատներին և նրանց փոխարինել բոլշևիկներով։ Սովետների անպարտիական դեպուտատներն սկսեցին պաշտպանել բոլշևիկներին։ Օգոստոսի 31-ին Պետրոգրադի Սովետը իր կազմակերպման օրվանից ի վեր առաջին անգամ բոլշևիկյան բանաձև ընդունեց իշխանությունը Սովետներին անցնելու մասին։

Սեպտեմբերի 5-ին Մոսկվայի Սովետն ընդունեց բոլշևիկների բանաձևը։ Մայրաքաղաքի Սովետներից անմիջապես հետո բոլշևիկյան բանաձևեր ընդունեցին Կիևի, Խարկովի, Կազանի, Ուֆայի, Մինսկի, Ռևելի, Տաշքենդի, Սամարայի, Բրյանսկի, Կրասնոյարսկի, Ուրալի և Դոնբասի շատ քաղաքների Սովետները։ Սկսվեց Սովետների բոլշևիկացման բուռն պրոցեսը։

Պարտիան կրկին օրակարգի մեջ դրեց «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը։ Այդ ժամանակ երկրի վճռական կենտրոններում Սովետների կազմն արդեն արմատապես փոխվել էր, նրանք դարձել էին բոլշևիկյան։ Այժմ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը նշանակում էր զինված ապստամբություն բուրժուական կառավարության դեմ, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման։ Երկրի ավելի քան 250 Սովետներ արտահայտվեցին «Ամբողջ իշխանությունը Սովետներին» բոլշևիկյան լոզունգի օգտին։

1917 թվականի սեպտեմբերի սկզբներին բոլշևիկներն իրենց անդուլ աշխատանքով ժողովրդին բերին այն համոզման, որ երկրի փրկությունը հակաժողովրդական կառավարությունը լիկվիդացնելու մեջ է։ Երկիրն ընդհանուր ճգնաժամ էր ապրում։ Ժողովրդական տնտեսությունը գլորվում էր դեպի անդունդ։ Կառավարող դասակարգերը չէին կարող կասեցնել աղետը։ Ընդհակառակը, նրանք իրենց քաղաքականությամբ արագորեն մոտեցնում էին այդ աղետը։ Ժողովրդական մասսաները չէին ուզում ապրել հին ձևով և հանդուրժել բուրժուազիայի ու նրա արբանյակների տնօրինությունը։ Մի խոսքով, առկա էին այն բոլոր հատկանիշները, որոնցով Լենինը բնորոշում էր ռևոլյուցիոն սիտուացիան։ Ճգնաժամի ցայտուն վկայությունը ժողովրդի պայքարի բուռն ձևերի աճումն էր։ Բանվորներն սկսեցին հեռացնել ադմինիստրացիային, ձերբակալել ձեռնարկությունների դիրեկտորներին և իրենց ձեռքը վերցնել արտադրության կառավարումը։ Բանվորական շարժումը ընդհուպ մոտե-



ցավ իշխանության պրոբլեմին։ Որպես ռևոլյուցիայի ղեկավար, հեգեմոն, պրոլետարիատը պայքարի հանեց ամբողջ ժողովրդին։

> «Մեր կողմն է ռևոլյուցիայի ավանգարդ, ժողովրդի ավանգարդ, մասսաներին իր հետևից տանելու ընդունակ դասակարգի մեծամասնությունը»,— գրում էր Լենինը սեպտեմբերին (Երկեր, հատ. 26, էջ 8)։

Փոխվեց նաև գյուղացիական շարժման բնույթը։ Գյուղացիները սկսում են վռնդել կալվածատերերին, գրավել հողը, ինվենտարը և իրենց միջև բաժանել դրանք, հրկիզել կալվածները։ Գյուղացիական շարժումն ամբողջ երկրում վերաճեց ապստամբության։ Երկրի Եվրոպական մասի կեսից ավելին բռնկված էր գյուղացիական ապստամբություններով։ «Մեր կողմն է ժողովրդի մեծամասնությունը...»,—գրում էր Լենինը (նույն տեղը, էջ 8)։

Կոռնիլովյան ելույթից հետո պայքարի նոր ձևեր երևացին նաև բանակում։ Զինվորները քշում էին ռեակցիոն հրամանատարներին և նրանց տեղը ընտրում նորերին։ Զինվորները հրաժարվում էին պատերազմը շարունակել։ Զինվորների դժգոհությունը սպառնում էր վերածվել զինվորների ապստամբության, Պետրոգրադին և Մոսկվային մոտ գտնվող Հյուսիսային և Արևմտյան ռազմաճակատներում զինվորների մեծ մասը բոլշևիկների հետ էր գնում։ Իսկ միայն այդ երկու ռազմաճակատներում զենքի տակ կար ավելի քան 1 միլիոն 700 հազար զինվոր։ Բոլոր պահեստային գնդերը, իսկ դրանց թիվը ամբողջ երկրում 100-ից ավելի էր, պաշտպանում էին բոլշևիկներին։ Ամբողջ երկրում կայազորների գերակշռող մասը բոլշևիկների կողմն էր։ Այսպես, Մոսկվայի կայազորի զինվորները սեպտեմբերի վերջերին շրջանային դումաների ընտրությունների ժամանակ բոլոր ձայները տվին բոլշևիկներին։ Պահեստային և թիկունքային զորամասերում գրեթե 4 միլիոն զինվոր կար։ Իրենց մեծամասնությամբ զինվորները գյուղացիական չքավորության ամենաառաջավոր և ակտիվ մասն էին։ Բալթիական նավատորմի ծովայինները ամբողջապես պաշտպանում էին բոլշևիկների պարտիային։

Շարժման բնույթը փոխվեց նաև ճնշված ազգերի մեջ։ Բուրժուական կազմակերպությունների գլխի վրայով աշխատավորները հարում էին ընդհանուր բանվորական ու գյուղացիական շարժմանը՝ կազմելով մի միասնական ճակատ։

Փոխվեց նաև միջազգային իրադրությունը։ Իրենց թիկունքում աճող ռևոլյուցիոն շարժման սպառնալիքի տակ անգլիական և ֆրանսիական իմպերիալիստները փորձում էին հաշտության հարցում համաձայնության գալ գերմանական իմպերիալիստների հետ՝ ռևոլյուցիայի դեմ համատեղ պայքարելու համար։ Ռուսական հակառևոլյուցիան համաձայնվում էր սեպարատ հաշտություն կնքել Գերմանիայի հետ, երկրի ներսում իր ձեռքերն ազատ արձակելու համար։ Ռուսաստանի իշխող դասակարգերը գերմանացիներին հանձնեցին Ռիգան, պատրաստ էին հանձնելու Պետրոգրադը, երկրի մի մասը՝ ռևոլյուցիան խեղդելու գործում նրանցից օգնություն ստանալու փոխարեն։ Դա բուրժուազիայի հակահայրենասիրության, հայրենիքի նկատմամբ նրա դավաճանական դերի վառ ցուցանիշն էր։ Որպես իսկական հայրենասերներ հանդես եկան բոլշևիկները, որոնք Ռուսաստանը փրկեցին գերմանական իմպերիալիզմի կողմից ջախջախվելուց, օտարերկրյա պետությունների կողմից ստրկացվելուց։ Բուրժուազիայի դավաճանական պլանը ձախողել կարելի էր միայն դավաճանական կառավարությունը տապալելու միջոցով։

Համազգային ճգնաժամը իր ազդեցությունն ունեցավ նաև մենշևիկների ու էսեռների պարտիաների գործերի վիճակի վրա։ Երկու պարտիաներում էլ սկսվեց տարրնթացություն։ Մենշևիկյան պարտիան տրոհվեց մի քանի խմբերի։ Էսեռների պարտիայում ձևավորվեց ձախ թև, որն իրեն հայտարարեց ինքնուրույն պարտիա։ Ձախ էսեռները փորձում էին գրավել գյուղացիության այն խավերին, որոնք հիասթափվել էին էսեռներից և շրջվել պրոլետարիատի կողմը։

Գտնվելով ընդհատակում, Լենինը ուշի-ուշով հետևում էր երկրում ստեղծված դրությանը։ Ռևոլյուցիայի առաջնորդը արձագանքում էր ժողովրդի տրամադրության և դասակարգերի հարաբերության մեջ կատարված յուրաքանչյուր տեղաշարժին, ամենափոքր իսկ փոփոխություններին։ 110-օրյա ընդհատակի ժամանակաշրջանում Լենինի գրչի տակից դուրս եկան ավելի քան 60 հոդվածներ ու նամակներ, որոնցով պարտիան ստանում էր ղեկավար ցուցումներ։ Այդ աշխատությունների մեջ աչքի է ընկնում «Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ» գիրքը։ Դա բոլշևիկյան պարտիայի պլատֆորմն էր, որը պատասխանում էր ժողովրդական մասսաների այն հարցին, թե ինչպես փրկել երկիրը կործանումից։ Տալով այն կարիքի ու սովի պատկերը, որոնց դատապարտված են մասսաները բուրժուազիայի և կալվածատերերի տնօրինության հետևանքով, Լենինն առաջադրեց նաև այն ռևոլյուցիոն միջոցները, որոնք կարող են ժողովրդին փրկել պատերազմից և սովից, այն է՝ բանվորական վերահսկողություն արտադրության նկատմամբ, բանկերի ազգայնացում, սինդիկատների ազգայնացում և այլն, կալվածատիրական հողի բռնագրավման, ամբողջ հողի ազգայնացման հետ մեկտեղ։ Աղետի ու սովի դեմ պայքարի միջոցները միանգամայն իրագործելի էին, բայց դրանք չէին կիրառվում միայն այն պատճառով, որ դիպչում էին «բուրժուական սեփականության սրբությանը»։ Իշխող դասակարգերը հավատացնում էին, թե երկրին կրախ, կործանում կսպառնա, եթե ժողովուրդը ձեռնամուխ լինի այդ միջոցների իրականացմանը։

«Եթե փոխանակ «կոալիցիա» կնքելու բուրժուազիայի հետ, որն արգելակում է վերահսկողության բոլոր միջոցառումները և սաբոտաժի ենթարկում արտադրությունը,— գրում էր Լենինը,— էսեռներն ու մենշևիկներն ապրիլին իրագործեին իշխանության անցումը Սովետներին... ապա Ռուսաստանն այժմ կլիներ տնտեսականորեն կատարելապես փոխակերպված մի երկիր, գյուղացիները հող կունենային, բանկերը ազգայնացված կլինեին, այսինքն՝ այդ չափով (իսկ դրանք արդի կյանքի տնտեսական չափազանց կարևոր հիմքերն են) ավելի բարձր կլիներ մնացած բոլոր կապիտալիստական երկրներից» (Երկեր, հատ. 25, էջ 462)։

Բոլշևիկյան պլատֆորմի իրականացումը բերում էր աշխատավոր մասսաների կյանքի անհապաղ թեթևացում և բարելավում։ Լենինը ցույց տվեց, որ Ռուսաստանում սոցիալիզմի նյութական բազան նախապատրաստված էր ոչ միայն այն պատճառով, որ Ռուսաստանը իմպերիալիզմի շղթայի օղակներից մեկն էր, այլև այն պատճառով, որ թեպետև Ռուսաստանում կապիտալիզմը ետ էր մնացել առաջավոր կապիտալիստական երկրների համեմատությամբ, բայց բավականաչափ զարգացած էր։ Լենինը Ռուսաստանը բնութագրում էր որպես կապիտալիզմի միջին զարգացում ունեցող մի երկիր։ Ռուսաստանում ևս կապիտալիզմը գերաճել-դարձել էր պետական-մոնոպոլիստական կապիտալիզմ։ Պրոլետարական մեծ ռևոլյուցիայի նախօրյակին բոլշևիկների պլատֆորմի ելակետ հանդիսացավ Լենինի հիմնական դրույթը սկզբում մեկ, առանձին վերցրած, երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին։



«Առհասարակ պատմության մեջ, առանձնապես պատերազմի ժամանակ,— գրում էր Լենինը,— տեղում կանգնել չի կարելի։ Պետք է գնալ կա՛մ առաջ, կա՛մ ետ։ XX դարի Ռուսաստանում, որը ռևոլյուցիոն ճանապարհով նվաճել է ռեսպուբլիկա ու դեմոկրատիզմ, չի կարելի առաջ գնալ, առանց դեպի սոցիալիզմ գնալու, առանց քայլեր անելու դեպի այն...» (Երկեր, հատ. 25, էջ 459)։

Իր աշխատության մեջ Լենինը մեծ խնդիր դրեց հաղթանակած պրոլետարիատի առջև.

«Ռևոլյուցիան արեց այն, որ Ռուսաստանը մի քանի ամսում իր քաղաքական կարգերով հասավ առաջավոր երկրներին։

Բայց այդ քիչ է։ Պատերազմն անողոք է. նա հարցը դնում է անողոք կտրականությամբ՝ կա՛մ կործանվել, կա՛մ հասնել առաջավոր երկրներին և նրանցից առաջ անցնել նաև տնտեսապես...

Կործանվել, կամ ամբողջ թափով առաջ սլանալ։ Պատմությունն այսպես է դրել հարցը» (նույն տեղը, էջ 466—467)։

Լենինի «Սպառնացող աղետը և ինչպես պայքարել նրա դեմ» աշխատության մեջ հիմնավորված է սոցիալիզմին անցնելու միջոցների ծրագիրը։ Ամբողջությամբ վերցրած դրանք նշանակում էին աստիճանական անցում նոր, սոցիալիստական արտադրական հարաբերությունների։

Այդ ժամանակ Լենինը ավարտեց իր «Պետություն և ռևոլյուցիա» հանճարեղ աշխատությունը, որը պետության մասին մարքսիստական ուսմունքի հետագա զարգացումն է։ Լենինը վերականգնեց Մարքսի հայացքները, որոնք օպորտունիստները մոռացության էին տվել կամ աղավաղել, և նոր ռևոլյուցիոն փորձի, առանձնապես Սովետների գործունեության հիման վրա, էլ ավելի զարգացրեց մարքսիզմի ուսմունքը պետության մասին։ Լենինի գիրքը տոգորված է վճռական, անհաշտ պայքարով երկու ճակատում՝ և՛ օպորտունիստական դավաճանների դեմ, և՛ անարխիստների դեմ։ Լենինը ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան չընդունելը իրար էր մերձեցնում առաջիններին ու երկրորդներին։ Աջ սոցիալիստների լիդերները, չընդունելով բուրժուական պետության խորտակման անհրաժեշտությունը հաղթանակած բանվոր դասակարգի կողմից, գլորվեցին մինչև բուրժուական պետության ուղղակի պաշտպանությունը։ Անարխիստները, ժխտելով սոցիալիզմի կառուցման համար ռևոլյուցիոն պրոլետարիատի կողմից պետական իշխանությունն օգտագործելու անհրաժեշտությունը, դրանով իսկ ժխտում են պրոլետարիատի ռևոլյուցիոն դիկտատուրան։

Հաղթանակած պրոլետարիատը պետք է ամբողջապես խորտակի բռնության բուրժուական պետական ապարատը՝ աշխատավորների շահագործման օրգանը, և հաստատի պրոլետարիատի դիկտատուրա կապիտալիզմից կոմունիզմին անցնելու ամբողջ ժամանակաշրջանում։

«Մարքսի ուսմունքի էությունը պետության մասին,— գրում էր Լենինը,— միմիայն նա է յուրացրել, ով ըմբռնել է, որ մեկ դասա-

կարգի դիկտատուրան անհրաժեշտ է ո՛չ միայն ընդհանրապես ամեն մի դասակարգային հասարակության համար, ո՛չ միայն բուրժուազիային տապալած պրոլետարիատի համար, այլև մի ամբողջ պատմական ժամանակաշրջանի համար, որ բաժանում է կապիտալիզմն «անդասակարգ հասարակությունից»՝ կոմունիզմից... Կապիտալիզմից կոմունիզմին անցնելը, իհարկե, չի կարող չբերել քաղաքական ձևերի ահագին առատություն և բազմազանություն, բայց դրանց բոլորի էությունն անխուսափելիորեն մեկ է լինելու՝ պրոլետարիատի դիկտատուրան» (Երկեր, հատ. 25, էջ 533)։

Բուրժուական պետություններում դեմոկրատիան ամբողջովին կեղծ է և սուտ, որովհետև նրանցից նույնիսկ ամենադեմոկրատական երկրում դեմոկրատիան աննշան փոքրամասնության համար է, հարուստների, շահագործողների և ձրիակերների համար։ Իսկ պրոլետարական պետությունը «նոր ձևով դեմոկրատական» պետություն է, որովհետև այստեղ դեմոկրատիան աշխատավորների հսկայական մեծամասնության համար է, պրոլետարների, գյուղացիության լայն մասսաների, բոլոր չունևորների համար, և «նոր ձևի դիկտատորական է», որովհետև դա դիկտատուրա է ընդդեմ բուրժուազիայի, ժողովրդի մեծամասնության դիկտատուրան է ընդդեմ փոքրամասնության, շահագործողների։ Պրոլետարիատը պետական իշխանությունն օգտագործում է ոչ միայն շահագործողներին ճնշելու համար, այլ գլխավորապես կոմունիստական հասարակության կառուցման գործում աշխատավորներին ղեկավարելու համար։

«Պրոլետարիատին անհրաժեշտ է,— գրում էր Լենինը,— պետական իշխանություն, ուժի կենտրոնացված կազմակերպություն, բռնության կազմակերպություն թե՛ շահագործողների դիմադրությունը ճնշելու և թե՛ բնակչության վիթխարի մասսային՝ գյուղացիությանը, մանր բուրժուազիային, կիսապրոլետարներին ղեկավարելու համար՝ սոցիալիստական տնտեսությունը «կարգի գցելու» գործում» (Նույն տեղը, էջ 521)։

Որոշելով պրոլետարիատի դերն ու նշանակությունը հասարակության վերափոխման գործում, Լենինն ընդգծում էր, որ պրոլետարիատի դիկտատուրայի կենսագործման և կիրառման գործում ղեկավար և ուղղություն տվող ուժը կոմունիստների պարտիան է։ Լենինը անխնա մերկացրեց II Ինտերնացիոնալում իշխող օպորտունիստներին, որոնք խեղաթյուրել էին պարտիայի դերը, նրան դարձնում էն լավ վարձատրվող բանվորների վերնախավի ներկայացուցիչների մի կազմակերպություն, ներկայացուցիչներ, որոնք կտրված են մասսաներից, դավաճանում են ժողովրդի շահերին և վաճառում դրանք։

«Դաստիարակելով բանվորական պարտիան,— գրում էր Լենինը,— մարքսիզմը դաստիարակում է պրոլետարիատի ավանգարդը, որն ընդունակ է գրավելու իշխանությունը և ամբողջ ժողովրդին դեպի սոցիալիզմ առաջնորդելու, կազմակերպելու և ուղղություն տալու նոր հասարակարգին, լինելու բոլոր աշխատավորների ու շահագործվողների ուսուցիչը, ղեկավարը, առաջնորդը՝ նրանց հասարական կյանքն առանց բուրժուազիայի և բուրժուազիայի դեմ կազմակերպելու գործում» (Նույն տեղը, էջ 521)։

Լենինի գիրքը գրվել է բեկման դարաշրջանում, պրոլետարիատի իշխա-



նության գլուխ անցնելու նախօրյակին և, դրանով իսկ, ցայտուն կերպով ընդգծում է մարքսիզմ-լենինիզմի բնորոշ գիծը՝ տեսության ու պրակտիկայի անմիջական կապը։ Ինքը Լենինը առաջաբանում նշել է, որ պետության նկատմամբ սոցիալիստական ռևոլյուցիայի վերաբերմունքի հարցը «ո՛չ միայն պրակտիկ-քաղաքական, այլև ամենահրատապ նշանակություն է ձեռք բերում, իբրև մի հարց՝ մասսաներին բացատրելու, թե նրանք ինչ պետք է անեն մոտալուտ ապագայում՝ կապիտալի լծից ազատագրվելու համար» (Երկեր հատ. 25, էջ 493)։

Սեպտեմբերի 12-ի և 14-ի միջև Լենինը բոլշևիկների պարտիայի կենտրոնական, Պետրոգրադի և Մոսկվայի կոմիտեներին գրեց «Բոլշևիկները պետք է վերցնեն իշխանությունը» նամակը և Կենտկոմին ուղղած «Մարքսիզմը և ապստամբությունը» նամակը, որոնց մեջ պարտիային կոչ էր անում ապստամբություն կազմակերպել։ Զինված հասարակության զարգացման օրենքների խոր իմացությամբ, իմաստնացած ռևոլյուցիոն պայքարի բազմահարուստ փորձով, Լենինն այդ նամակներում հանրագումարի բերեց իրադրության իր վերլուծությունը և սպառիչ պարզությամբ պատասխանեց այն հարցին, թե ինչու բոլշևիկները կարող են և պետք է իշխանությունը վերցնեն հենց այժմ։ Երկու մայրաքաղաքի Սովետներում էլ ղեկավարությունն անցել էր բոլշևիկների ձեռքը։ Ժողովրդական մասսաների մեծ մասը գնում էր բոլշևիկների հետևից։ Նրանք համոզվեցին, որ իրենց շահերը ներկայացնում և պաշտպանում է միայն բոլշևիկների պարտիան։ Վերցնելով իշխանությունը, Սովետներն անհապաղ ձեռնամուխ կլինեն դեմոկրատական հաշտության կնքմանը, առանց հատուցման կվերացնեն կալվածատերերի հողը և կհանձնեն գյուղացիներին, կհաստատեն կառավարության ռոնահարած ազատությունը։ Այդ բոլոր միջոցառումները մասսաների լիակատար աջակցությունը կգտնեն։

Իշխանությունը վերցնել պետք է հիմա, որովհետև բուրժուազիան նախապատրաստվում է Պետրոգրադը հանձնել գերմանացիներին, իսկ անգլո-ֆրանսիական իմպերիալիստները համաձայնություն են տալիս սեպարատ հաշտություն կնքելու Գերմանիայի հետ ընդդեմ Ռուսաստանի և ի հաշիվ Ռուսաստանի։ Իշխանությունը վերցնելով միայն բոլշևիկների պարտիան կձախողի այդ հանցավոր դավադրությունը։

Ապստամբություն կազմակերպելու համար իրադրությունը միանգամայն հասունացել էր։ Պարտիայի խնդիրն է՝ ապստամբությանը վերաբերվել որպես արվեստի, այսինքն՝ խնամքով նախապատրաստել ապստամբությունը, բոլոր միջոցները նախատեսել դրա հաջողությունն ապահովելու համար, հույս չդնել ինքնահոսի վրա։

Լենինը նամակներում մշակեց նաև զինված ապստամբության պրակտիկ մոտավոր պլանը։ Նա առաջարկում էր անհապաղ կազմակերպել ապստամբ ջոկատների շտաբ, ուժերը դասավորել և առավել հավատարիմ զորամասերը կենտրոնացնել առավել կարևոր կետերում, նախապատրաստել կառավարական շենքերի շրջապատումը, գրավել հեռախոսակայանն ու հեռագրատունը։ Լենինը հանձնարարում էր ստեղծել ամրակուռ ջոկատներ, որոնք պատրաստ լինեն մեռնելու, բայց չթողնեն, որ հակառակորդը մտնենա քաղաքի կենտրոնին, զինել բանվորներին, ապահովել քաղաքի պաշտպանությունը յունկերների և մյուս հակառևոլյուցիոն զորամասերի հնարավոր հարձակման դեմ։

Լենինն իր պլանը անվանեց մոտավոր, բայց ապստամբության փաստական ընթացքը ցույց տվեց, թե որքան խոր և բազմակողմանի էր մտածված այդ պլանը։ Լենինը զարգացրեց ապստամբության վերաբերյալ մարքսիզմի հիմնադիրների մտքերը և դրանք դարձրեց մի ամբողջական ուսմունք ապստամբության մասին։

Պատմության մեջ ոչ մի պարտիա զինված ապստամբության անցկացման համար այսպես խնամքով չէր նախապատրաստվել, ինչպես բոլշևիկյան պարտիան։ Լենինի շնորհիվ պարտիան ուներ ապստամբության կազմակերպման շատ խնամքով մշակված պլան և քաղաքական ու տնտեսական այն միջոցառումների կշռադատված, ամբողջական պլատֆորմ, որ պետք է կիրառվեն ապստամբության հաղթանակի հենց հաջորդ օրը։

Լենինի նամակները սեպտեմբերի 15-ին քննարկվեցին Կենտրոնական Կոմիտեում, Կամենևը, շարունակելով պայքարել սոցիալիստական ռևոլյուցիայի դեմ, հանդես եկավ ապստամբություն կազմակերպելու մասին Լենինի առաջարկների դեմ և պնդում էր ոչնչացնել բուն նամակները։ Կապիտալիզմի պաշտպանի կապիտուլյանտական բանաձևը մերժվեց։ Ստալինն առաջարկեց Լենինի նամակներն ուղարկել առավել կարևոր կազմակերպություններին քննարկելու համար։

Կենտրոնական Կոմիտեն ձեռնամուխ եղավ ապստամբության նախապատրաստմանը։ Կենտրոնական Կոմիտեին կից ռազմական կազմակերպությանը հանձնարարվեց արագացնել Կարմիր գվարդիայի նոր ջոկատների ստեղծումը։ Մայրաքաղաքում ստեղծվեցին ռազմական գործի հրահանգիչների պատրաստման դասընթացներ։ Բանվորները սովորում էին զենք գործածել։ Բալթյան նավատորմի բոլշևիկները ցուցում ստացան նավատորմը նախապատրաստել ապստամբությանը մասնակցելու համար։ Յուրաքանչյուր խոշոր նավի վրա ստեղծվեցին հատուկ մարտական դասակներ, որոնք պատրաստ էին պարտիայի կոչով ցանկացած պահին գալ մայրաքաղաք։ Ռազմաճակատային բոլշևիկյան կազմակերպությունները մարտական զորամասեր էին ընտրում Պետրոգրադում ապստամբածներին օգնություն ցույց տալու համար։ Խոշորագույն պարտիական կազմակերպությունների ղեկավարները նախազգուշացվել էին, որ ապստամբություն է նախապատրաստվում։ Տեղերն ուղարկվեցին Կենտկոմի լիազորներ՝ հաղորդելու ձեռք առնված միջոցառումների մասին և օգնելու մասսաների մոբիլիզացմանը։

Հակառևոլյուցիան իր կողմից միջոցներ էր ձեռք առնում աճող ռևոլյուցիայի դեմ։ Մայրաքաղաքին էին մոտեցվում կազակային զորամասեր։ Որոշեցին Պետրոգրադից դուրս բերել կայազորի ռևոլյուցիոնորեն տրամադրված զորամասերը, որպեսզի դրանով իսկ թուլացնեն բոլշևիկներին։ Ռազմաճակատում զորամասերի տեղաշարժ էին կատարում, նպատակ ունենալով ջախջախել և զինաթափել բոլշևիկորեն տրամադրված գնդերը։ Կոռնիլովն ու նրա գործակիցները համարվում էին ձերբակալված, բայց իրականում կապված էին ռազմաճակատի գեներալների հետ և մշակում էին հակառևոլյուցիոն ելույթի նոր պլան։ Ժամանակավոր կառավարությունը նախապատրաստում էր երկրորդ կոռնիլովշչինա։

Ժողովրդի դեմ այդ դավադրությանը մասնակցեցին էսեռներն ու մենշևիկները։ Զգալով ապստամբության մոտեցումը, էսեռներն ու մենշևիկները մի փորձ ևս արեցին կասեցնելու ռևոլյուցիոն ուժերի մոբիլիզացումը. Նրանք



որոշեցին Պետրոգրադում հրավիրել Համառուսաստանյան դեմոկրատական խորհրդակցություն։ Սոցիալ-կոռնիլովականները Սովետներում մեծամասնությունը կորցրել էին, այդ պատճառով էլ վախենում էին դիմել նոր համագումար հրավիրելուն, թեև պարտավորվել էին երեք ամիսը մեկ համագումարներ հրավիրել։ Համաձայնողականների լիդերները կեղծիքի դիմեցին՝ Սովետների համագումարը փոխարինելով դեմոկրատական խորհրդակցությամբ։ Մանևրի իմաստն այն էր, որ խաբեության միջոցով իրենց ձեռքին պահեին մասսաների ղեկավարությունը և պաշտպանեին ժամանակավոր կառավարությունը։

Դեմոկրատական խորհրդակցությունը բացվեց սեպտեմբերի 14-ին։ Նրա կազմը բացահայտորեն խարդախված էր. քաղաքային դումաներին, զեմստվոներին և կոոպերատիվներին, որոնք բնակչության փոքր մասն էին կազմում, ավելի շատ ձայն էր տրված, քան բանվորների, զինվորների դեպուտատների Սովետներին կամ ռազմական կազմակերպություններին, որոնք միավորում էին ժողովրդի գերակշռող մեծամասնությունը։ Ամբողջ 10 միլիոնանոց բանակը ստացավ ընդամենը երկու անգամ ավելի տեղ, քան փոքրաթիվ կազակությունը, որին ժամանակավոր կառավարությունը համարում էր իր հենարանը։ Բոլշևիկները խորհրդակցությանը մասնակցեցին էսեռների ու մենշևիկների դիտավորությունները մերկացնելու համար։

Համաձայնողականները խորհրդակցության կազմից առանձնացրին ռեսպուբլիկայի ժամանակավոր խորհուրդ կամ, ինչպես իրենք էին ասում, նախապառլամենտ, դրանով իսկ փորձելով իրերի այնպիսի տպավորություն ստեղծել, թե Ռուսաստանում պառլամենտական կարգ է մտցված։ Կամենևը, Ռիկովը, Ռյազանովը պաշտպանեցին էսեռների ու մենշևիկների այդ կեղծիքը, դրանով իսկ փորձելով բանվորներին շեղել ապստամբությունից։ Դեմոկրատական խորհրդակցության այդ ամբողջ հնարանքը Լենինը համարում էր էսեռների ու մենշևիկների կողմից սարքված մի թակարդ և կտրականապես պնդեց բոյկոտի ենթարկել նախապառլամենտը. մնալ նրա մեջ, նշանակում էր այն պատրանքները սերմանել, թե իբր այդ հիմնարկն ընդունակ է լուծել ռևոլյուցիայի խնդիրները։ Կենտկոմը քննարկեց Լենինի առաջարկությունը և, հաղթահարելով Կամենևի և մյուս կապիտուլյանտների դիմադրությունը, որոշում ընդունեց նախապառլամենտից բոլշևիկների դուրս գալու մասին։ Կենտրոնական Կոմիտեն առաջարկեց տեղերում անցկացնել Սովետների նահանգային ու մարզային համագումարներ և պայքարել Սովետների II համագումարի հրավիրման համար։

Հոկտեմբերի 3-ին պարտիայի Կենտկոմը որոշեց Լենինին տեղափոխել Պետրոգրադ, որ նա մոտիկ լինի ապստամբության ղեկավարությանը։ Հոկտեմբերի 7-ին Լենինը գաղտնի ժամանեց մայրաքաղաք և տեղավորվեց մի բնակարանում՝ ամենառևոլյուցիոն Վիբորգյան շրջանում։ Հոկտեմբերի 10-ին կայացավ Կենտկոմի նիստ, որտեղ ընթացիկ մոմենտի մասին զեկուցումով հանդես եկավ Լենինը։ Նա ընդգծեց, որ քաղաքական դրությունը միանգամայն հասունացել է իշխանությունը պրոլետարիատին և գյուղական չքավորության անցնելու համար։ Այժմ խոսքը պետք է վերաբերի բուն ապստամբությանը։ Լենինն ամբողջ պարտիայի համար անհրաժեշտ էր համարում զինված ապստամբության հարցը դնել օրակարգում։

«Կենտկոմն ընդունում է,—ասված էր Լենինի առաջարկած բանա-

> ձևում,— որ ինչպես ռուսական ռևոլյուցիայի միջազգային դրությունը (նավատորմում առաջացած ապստամբությունը Գերմանիայում, որպես ամբողջ Եվրոպայում համաշխարհային սոցիալիստական ռևոլյուցիայի աճման ծայրահեղ դրսևորում, ապա իմպերիալիստների հաշտության սպառնալիքը՝ Ռուսաստանի ռևոլյուցիան խեղդելու նպատակով),— այնպես էլ ռազմական դրությունը (ռուսական բուրժուազիայի և Կերենսկու ու Ընկ.՝ Պիտերը գերմանացիներին հանձնելու անկասկածելի վճիռը),— ինչպես և Սովետներում պրոլետարական պարտիայի կողմը մեծամասնություն նվաճելը,— այս ամենը գյուղացիական ապստամբության և ժողովրդական վստահության՝ մեր պարտիայի կողմը շրջվելու (ընտրությունները Մոսկվայում) կապակցությամբ, վերջապես երկրորդ կոռնիլովշչինայի բացահայտ նախապատրաստումը (զորքերը Պիտերից հանելը, կազակներին Պիտերին մոտեցնելը, Մինսկը կազակներով շրջապատելը և այլն),— այս ամենն օրակարգի մեջ է դնում զինված ապստամբությունը։
>
> Ընդունելով այսպիսով, որ զինված ապստամբությունն անխուսափելի է և լիովին հասունացել է, Կենտկոմը առաջարկում է պարտիայի բոլոր կազմակերպություններին ղեկավարվել դրանով և այս տեսակետից քննարկել ու լուծել բոլոր գործնական հարցերը (Հյուսիսային մարզի Սովետների համագումարը, զորքերը Պիտերից հանելը, մոսկվացիների ու մինսկցիների ելույթը և այլն)» («ՍՄԿՊ-ն բանաձևերում», մաս I, էջ 502—503)։

Միայն Զինովևն ու Կամենևը հանդես եկան այդ բանաձևի դեմ։ Նրանք պնդում էին, թե իբր բանվոր դասակարգն անընդունակ է իրագործելու սոցիալիստական ռևոլյուցիան, և գլորվեցին բուրժուական ռեսպուբլիկան պաշտպանող մենշևիկների դիրքերը։

Դա դավաճանություն էր սոցիալիզմի գործին։ Զինովևի և Կամենևի կապիտուլյանտական դիրքը պատահական չէր։ Նրանց դավաճանությունը նրանց օպորտունիստական բոլոր տատանումների ուղղակի հետևանքն էր։

Կենտկոմի նիստում Տրոցկին ապստամբության վերաբերյալ բանաձևի դեմ չքվեարկեց։ Բայց նա պնդում էր ապստամբությունը հետաձգել մինչև Սովետների II համագումարի հրավիրումը, որ իրականում նշանակում էր ապստամբության վիժեցում, որովհետև էսեռներն ու մենշևիկները կարող էին հետաձգել համագումարի հրավիրման ժամկետը, իսկ ժամանակավոր կառավարությունը հնարավորություն կստանար մինչև համագումարի հրավիրման օրը ուժեր կենտրոնացնել ելույթը ջախջախելու համար։

Կենտրոնական Կոմիտեն հաստատեց Լենինի բանաձևը։ Այն դարձավ պարտիայի դիրեկտիվը՝ անհապաղ նախապատրաստել զինված ապստամբություն։ Այդ նիստում ապստամբության քաղաքական ղեկավարության համար ընտրվեց Քաղաքական բյուրո Լենինի գլխավորությամբ։

Մայրաքաղաքում ապստամբության իրականացման օրգանը դարձավ Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն, որը պարտիայի Կենտկոմի առաջարկությամբ ստեղծվել էր Պետրոգրադի Սովետին կից։ ՌՌԿ-ի կազմի մեջ մտան Կենտկոմի և ՊԿ-ի Սովետի, ֆաբգործարկոմների, արհմիությունների, կայազորի, Բալթյան նավատորմի և այլ կազմակերպությունների ներկայացուցիչները։



Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն աշխատում էր անմիջականորեն պարտիայի Կենտկոմի ղեկավարությամբ։

Երկրի բոլոր կարևորագույն շրջաններում սիստեմատիկորեն նախապատրաստվում էին զինված ելույթի։ Պետրոգրադում տեղի ունեցավ բոլշևիկների համաքաղաքային III կոնֆերենցիան, որը ներկայացնում էր պարտիայի մոտ 50 հազար անդամների։ Կոնֆերենցիան հոկտեմբերի 11-ին ընդունեց Լենինի բանաձևը ապստամբության մասին։ Նույն բանաձևն ընդունեց Մոսկվայի բոլշևիկների համաքաղաքային կոնֆերենցիան, Մոսկվայի մարզային բյուրոն, որը ներկայացնում էր պարտիայի մոտ 70 հազար անդամի, արտահայտվեց հօգուտ ապստամբության։ Սեպտեմբեր—հոկտեմբեր ամիսներին ընդամենը տեղի ունեցան ավելի քան 30 մարզային և նահանգային, քաղաքային և օկրուգային կոնֆերենցիաներ, որոնք ներկայացնում էին բոլշևիկների պարտիայի մեծ մասը։ Պարտիան ճնշող մեծամասնությամբ նախապատրաստված էր վճռական իրադարձությունների համար։

Ամենուրեք արագությամբ կազմավորվում էր բանվորական Կարմիր գվարդիան։ Հոկտեմբերին Կարմիր գվարդիայում կային մոտավորապես 200 հազար առաջավոր բանվորներ, որոնք պատրաստ էին իրենց կյանքը տալ ռևոլյուցիայի համար և ընդունակ էին իրենց հետևից տանելու աշխատավոր մասսաներին։

Հոկտեմբերի 16-ին կայացավ Կենտրոնական Կոմիտեի ընդլայնված նիստ Պետրոգրադի կոմիտեի, ռազմական կազմակերպության և արհմիությունների ներկայացուցիչների հետ։ Այդ նիստում ապստամբության վերաբերյալ Լենինի բանաձևը հաստատվեց։ Նիստի վերջում ընտրվեց ապստամբության ղեկավարման ռազմա-ռևոլյուցիոն կենտրոն, որի կազմի մեջ մտան Ա. Ս. Բուբնովը, Ֆ. Է. Ձերժինսկին, Յա. Մ. Սվերդլովը, Ի. Վ. Ստալինը և Մ. Ս. Ուրիցկին։ Որոշվեց, որ Կենտկոմի պարտիական Ռազմա-ռևոլյուցիոն կենտրոնը մտնում է սովետական Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի կազմի մեջ։

Ջախջախվելով Կենտրոնական Կոմիտեում, Զինովևն ու Կամենևը դիմեցին չլսված դավաճանության. ոչ պարտիական, կիսամենշևիկյան «Նովայա ժիզն» թերթում նրանք հրապարակեցին մի հայտարարություն, որտեղ պատմեցին, թե իրենք համաձայն չեն զինված ապստամբության վերաբերյալ որոշմանը և այդպիսով ապստամբության վերաբերյալ Կենտկոմի որոշումը մատնեցին թշնամուն։ Լենինը զայրույթով նշավակեց ռևոլյուցիայի շտրեյկբրեխերներին, պահանջեց վտարել նրանց պարտիայից։ Կենտկոմը արգելեց Կամենևին և Զինովևին հանդես գալ պարտիայի անունից։

Դավաճանների կողմից նախազգուշացված ժամանակավոր կառավարությունը շտապ միջոցներ ձեռք առավ ռևոլյուցիան ճնշելու համար։ Ռազմաճակատից հատուկ զորամասեր կանչվեցին, ամբողջ Պետրոգրադը բաժանվեց շրջանների և նրանցից յուրաքանչյուրում ստեղծվեցին հեծյալ ջոկատներ։ Բայց հակառևոլյուցիան այլևս չէր կարող կասեցնել ռևոլյուցիոն ուժերի մոբիլիզացումը։ Սոցիալիստական ռևոլյուցիայի համար մղված պայքարում պարտիան ոտքի էր հանել և կազմակերպել ժողովրդի վիթխարի մասսաներ։

Ապստամբության կազմակերպման ամբողջ աշխատանքը ղեկավարում էր Լենինը։ Նա իր մոտ էր կանչում Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի անդամներին, հաշվետվություններ լսում ձեռք առնված միջոցառումների մասին, ստուգում էր, թե ամեն ինչ արված է արդյոք ապստամբության հաղթանակն ապահով-

լու համար։ Լենինը կոնկրետ ցուցումներ էր տալիս ապստամբության ման-
րամասն պլանը մշակելու, Կարմիր գվարդիան ամրապնդելու և զինելու ուղ-
ղությամբ։ Լենինի մոտ էին գալիս բանակում ու նավատորմում աշխատող
բոլշևիկները և ցուցումներ ստանում Բալթյան նավատորմն օգտագործելու ու
ռազմաճակատից հավատարիմ զորամասերը կանչելու մասին. գալիս էին
Մոսկվայի ներկայացուցիչները, որոնք հաղորդում էին քաղաքում և մարզում
եղած դրության մասին։

Պարտիայի Կենտկոմը կատարեց մարքսիզմի հիմնական ցուցումը՝ ապըս-
տամբությանը վերաբերվել որպես արվեստի։ Կենտկոմի անդամները տեղերն
ուղարկվեցին ապստամբության նախապատրաստման մասին պարտիական
կազմակերպություններին նախազգուշացնելու համար։ Գ. Ի. Պետրովսկին
ուղարկվեց Ուկրաինա, Դոնբաս, Գ. Կ. Օրջոնիկիձեն՝ Անդրկովկաս։ Տեղական
պարտիական կազմակերպությունների ներկայացուցիչները Կենտկոմ էին գա-
լիս ապստամբության նախապատրաստման միջոցառումների մասին ցուցում-
ներ ստանալու։ Կենտկոմից նամակներ ու դիրեկտիվներ էին ուղարկվում տե-
ղերը։ Խոշորագույն պարտիական կազմակերպությունները ոչ միայն իրազեկ
դարձվեցին ապստամբության մասին, այլև գործնական ցուցումներ ստացան
ապստամբության կազմակերպման մասին։ Կենտկոմը հետևում էր Ռազմ-
ռևկոմի աշխատանքին և օգնում նրան, հրահանգավորում և ապստամբու-
թյան կազմակերպմանն էր ներգրավում արհմիություններին։ Կենտկոմի հոկ-
տեմբերի 16-ի ընդլայնած նիստին մասնակցեցին խոշորագույն արհմիու-
թյունների ներկայացուցիչները։ Կենտկոմի աշխատանքն այդ ժամանակա-
շրջանում կոլեկտիվ ղեկավարության օրինակ է։ Հոկտեմբերյան ռևոլյուցիա-
յին նախորդած միայն երեք ամիսների ընթացքում Կենտկոմը ավելի քան 30
նիստ ունեցավ, դրանցից երկուսը՝ պլենում և երկուսը՝ ընդլայնած նիստ։

Լենինը պահանջում էր ապստամբությունը սկսել անպայման մինչև Սո-
վետների II համագումարը, որ նախատեսված էր հոկտեմբերի 25-ին։ Հար-
կավոր էր կանխել թշնամուն, որը իրազեկ էր պահված դավաճանների կողմից
և սպասում էր համագումարի բացման օրը կայանալիք ելույթին։

«...ո՛չ մի դեպքում,— գրում էր Լենինը Կենտկոմին հոկտեմբերի
24-ին,— իշխանությունը չթողնել Կերենսկու և ընկերության ձեռքին
մինչև 25-ը, ո՛չ մի կերպ. գործը վճռել անպայման այսօր՝ երեկոյան
կամ գիշերը։

Պատմությունը չի ների հապաղումը ռևոլյուցիոներներին, որոնք
կարող էին հաղթել այսօր (և անշուշտ կհաղթեն այսօր), ռիսկ անելով
շատ բան կորցնելու վաղը, ռիսկ անելով կորցնելու ամեն ինչ» (Երկեր,
հատ. 26, էջ 279):

Լենինի առաջարկությամբ ապստամբությունը սկսվեց հոկտեմբերի 24-ին,
մինչև համագումարի բացումը։ Ապստամբության շտաբը գտնվում էր Սմոլ-
նիում, որտեղ ուշ երեկոյան եկավ Լենինը, որպեսզի անմիջականորեն ղեկա-
վարի ապստամբությունը։ Շտաբի ցուցումով Կարմիր գվարդիայի ջոկատները
գրավեցին նախատեսված օբյեկտները։ Կարմիրգվարդիականները կազմակեր-
պեցին ֆաբրիկաների ու գործարանների պահպանումը։ Ռևոլյուցիոն զորա-
մասերը պահպանում էին քաղաքի բոլոր մատույցները, որպեսզի ռազմաճա-
կատից ժամանակավոր կառավարությանն օգնության եկող ուժերին թույլ
չտան անցնելու։ Կանչվեցին Բալթյան նավատորմի ծովայինները։ Մեկ գիշեր-



վա մեջ համարյա առանց կորուստի գրավվեցին կառավարական բոլոր հիմնարկները և շրջապատվեց Ձմեռային պալատը, որտեղ փրկություն էր որոնում ժամանակավոր կառավարությունը։ Ապստամբության գլխավոր մարտական ուժը բանվորական Կարմիր գվարդիայի ջոկատներն էին։ Հաղթանակի փառքը նրանց հետ կիսեցին Բալթյան նավատորմի ծովայինները։ Կարմիրգվարդիականների ու ծովայինների հետ միասին հաջողությամբ կռվում էին Պետրոգրադի կայազորի գնդերը։ Ժողովրդական մասսաների աջակցությունը այնքան ապահովված էր, ապստամբության պլանը այնքան խնամքով էր մտածված, որ հոկտեմբերյան զինված ապստամբությունը բացառիկ անարյուն եղավ և խիստ արագ կատարվեց։ Հոկտեմբերի 25-ի լուսաբացին ժամանակավոր կառավարությունը տապալված էր։ Առավոտյան ժամը 10-ին հրապարակվեց «Ռուսաստանի քաղաքացիներին» կոչը, որ գրել էր ռևոլյուցիայի հանճարեղ ոգեշնչող ու ղեկավար Լենինը։

«Ժամանակավոր կառավարությունը տապալված է։ Պետական իշխանությունն անցել է բանվորների ու զինվորների դեպուտատների Պետրոգրադի Սովետի օրգանի՝ Պետրոգրադի պրոլետարիատին ու կայազորին գլխավորող Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեի ձեռքը։

Այն գործը, որի համար պայքարում էր ժողովուրդը՝ դեմոկրատական հաշտության անհապաղ առաջարկում, հողի կալվածատիրական սեփականության վերացում, արտադրության վրա բանվորական վերահսկողություն, Սովետական կառավարության ստեղծում,— այդ գործն ապահովված է։

Կեցցե՛ բանվորների, զինվորների և գյուղացիների ռևոլյուցիան» (Երկեր, հատ. 26, էջ 283):

Տապալված կառավարության ձեռքին մնաց միայն Ձմեռային պալատը, որի կայազորը կազմում էին յունկերները և կանանց հարվածային գումարտակը։ Լենինը կարգադրեց գրոհով վերցնել բուրժուական կառավարության վերջին հենարանը։ Նևայի ափերից լսվեց «Ավրորա» հածանավի կրակոցը՝ գրոհի ազդանշանը։ Դա ազդարարեց նոր աշխարհի սկիզբը։ Հոկտեմբերի 25-ի լույս 26-ի գիշերը Ձմեռային պալատն ընկավ, բուրժուազիայի դիկտատուրայի վերջին կառավարության մինիստրները ձերբակալվեցին։

Հոկտեմբերի 28-ի երեկոյան հավաքվեց Սովետների II համագումարը։ Համագումարը ներկայացնում էր երկրի ավելի քան 400 Սովետներ։ 649 պատգամավորներից 390-ը բոլշևիկներ էին։ Մնացածների մեծամասնությունը ձախ էսեռներ էին։ Մենշևիկներն ու աջ էսեռները, որոնք մինչ այդ գերիշխում էին Սովետներում, II համագումարում կազմում էին 70—80 մարդուց բաղկացած մի ոչ մեծ խումբ։ Իսկ բուն համագումարում այդ խումբն սկսեց հալվել. նրա մասնակիցներն անցան ձախ էսեռների և մենշևիկ-ինտերնացիոնալիստների կողմը։ Բուրժուազիայի հետ համաձայնող պարտիայի խղճուկ մնացորդները համագումարից հեռացան։

Սովետների II համագումարը հենց առաջին օրը ընդունեց Լենինի գրած կոչը՝ ուղղված «Բանվորներին, զինվորներին և գյուղացիներին»։

«Հենվելով բանվորների, զինվորների և գյուղացիների հսկայական մեծամասնության կամքի վրա,— ասված էր այդ բանաձևում,— հենվելով Պետրոգրադում բանվորների և կայազորի կատարած հաղթական

ապստամբության վրա, համագումարն իր ձեռքն է առնում իշխանությունը...

Համագումարը որոշում է. տեղերում ամբողջ իշխանությունն անցնում է բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետներին, որոնք և պետք է ապահովեն իսկական ռևոլյուցիոն կարգը» (Երկեր, հատ. 26, էջ 293—294):

Բանվորներն ու գյուղացիական չքավորությունը տապալեցին բուրժուազիայի դիկտատուրան և հաստատեցին պրոլետարիատի դիկտատուրա։

1917 թվականի հոկտեմբերի 25-ը (նոյեմբերի 7) պատմության մեջ մտավ որպես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակի օր Ռուսաստանում:

Համագումարի երկրորդ նիստում, հոկտեմբերի 26-ին, Լենինը հանդես եկավ երկու անգամ։ Լենինի առաջին զեկուցումը նվիրված էր հաշտության հարցին։ Համագումարը միահամուռ ընդունեց հաշտության դեկրետը, որով հայտարարվեց, որ Սովետական կառավարությունը լիովին հրաժարվում է ամեն տեսակ զավթողական պայմանագրերից և բոլոր պատերազմող ժողովուրդներին ու նրանց կառավարություններին առաջարկեց անհապաղ բանակցություններ սկսել ընդհանուր արդարացի դեմոկրատական հաշտություն կնքելու մասին։ Ժողովուրդը, որ իշխանությունը վերցրել էր իր ձեռքը, ամենից առաջ պայքար սկսեց հաշտության համար, իր օրինակով ոգևորելով ամբողջ մարդկությանը։ Հաշտության դեկրետը պատերազմը հայտարարեց «մեծագույն հանցագործություն մարդկության դեմ» և հանդիսավոր կերպով վճռականություն հայտնեց՝ անհապաղ հաշտություն կնքել բոլոր ժողովուրդների համար միատեսակ արդարացի պայմաններով, առանց անեքսիաների և ռազմատուգանքների։

Պատմության մեջ առաջին անգամ հռչակվեցին միջազգային հարաբերությունների նոր սկզբունքներ, որոնք դատապարտում են պատերազմը, որպես վիճելի հարցերի լուծման միջոց և խաղաղությունը դարձնում են սոցիալիստական պետության արտաքին քաղաքականության հիմքը։ Արդեն այդ առաջին սովետական դեկրետում ազդարարված է տարբեր հասարակական կարգ ունեցող երկու սիստեմների խաղաղ գոյակցության հնարավորության լենինյան գաղափարը։

Լենինի երկրորդ զեկուցման առթիվ համագումարն ընդունեց հողի վերաբերյալ դեկրետը, որը հայտարարեց կալվածատիրական ամբողջ հողը առանց հատուցման բռնագրավելու և ամբողջ հողը ժողովրդի ձեռքն անցնելու մասին։ Հողի վերաբերյալ դեկրետը իրականացրեց գյուղացիության դարավոր հույսերը։ Ընդամենը ժողովրդի ձեռքն անցավ ավելի քան 150 միլիոն հեկտար հող։ Գյուղացիները պատմության մեջ առաջին անգամ ազատագրվեցին հողային պարտքից— գյուղացիները հենց միայն Գյուղացիական բանկին պարտք էին համարյա մեկ ու կես միլիարդ ռուբլի, չհաշված մասնավոր պարտքերը կալվածատերերին, վաշխառուներին, կուլակներին։ Հողի մասին դեկրետը գյուղացիներին ազատեց 700 միլիոն ռուբլի (ոսկով) ամենամյա վարձավճարից և նոր հողերի գնման ծախսերից։ Այսպիսով, իրագործվեց հողի ազգայնացումը։ Հողը դարձավ համապետական սեփականություն։

Հողի վերաբերյալ դեկրետի մեջ մտցվեց այն գյուղացիական նակազը, որ կազմել էին էսեռները 242 տեղական գյուղացիական նակազների հիման



վրա։ Էսեռները, գտնվելով իշխանության ղեկի մոտ, ոչինչ չարին նակազը կենսագործելու ուղղությամբ։ Բոլշևիկները իշխանության գլուխ անցնելու առաջին իսկ օրը գյուղացիական նակազը օրենք դարձրին։ Հողի մասնավոր սեփականության վերացման և կալվածատիրական հողերի անհատույց բռնագրավման պահանջի հետ միասին նակազը ազդարարում էր հավասարարական հողօգտագործում, որը չէր համապատասխանում բոլշևիկների պարտիայի հայացքներին։ Առարկելով նրանց, ովքեր պարտիային մեղադրում էին նակազն ընդունելու մեջ, Լենինն ասում էր.

> «...որպես դեմոկրատական կառավարություն, մենք չենք կարող զանց առնել ժողովրդական ստորին խավերի որոշումը, թեկուզ և համաձայն չլինենք դրա հետ։ Կյանքի բովում, գործնականում կիրառելով այն, գործադրելով տեղերում, գյուղացիներն իրենք կհասկանան, թե որտեղ է ճշմարտությունը» (Երկեր, հատ. 26, էջ 312):

Այդ ակտում արտահայտվեց պարտիայի իմաստությունը, նրա տակտիկայի ճկունությունը, մասսաների շահերի հետ հաշվի նստելու ունակությունը և այն խոր հավատը, որ գյուղացիները լիովին կպաշտպանեն բոլշևիկների գիծը ագրարային հարցում։

Բոլշևիկյան պարտիան իշխանության գլուխ անցնելուց անմիջապես հետո կատարեց իր խոստումները, որ տվել էր ժողովրդին իր ծրագրում։

Հենց նույն օրը, հոկտեմբերի 26-ին, ստեղծվեց Ժողովրդական Կոմիսարների Սովետ Վ. Ի. Ուլյանով—Լենինի գլխավորությամբ։ Ժողովուրդը երկրի ղեկավարությունը վստահեց բոլշևիկների պարտիային։

Պետրոգրադից անմիջապես հետո Սովետական իշխանության հաղթանակը նվաճեցին Մոսկվայում, որտեղ մարտերը տևեցին մի քանի օր, իսկ այնուհետև ամբողջ երկրում։

Մի շարք տեղերում Սովետական իշխանության հաստատման համար մղվող պայքարը բարդացավ սպիտակգվարդիականների և բուրժուական նացիոնալիստական հակառևոլյուցիայի ելույթով (Կենտրոնական ռադան Ուկրաինայում, ատաման Կալեդինը Դոնում, ատաման Դուտովը Օրենբուրգում)։

Բայց, չնայած երկրի պայմանների բազմազանությանը՝ բոլշևիկների պարտիայի ազդեցության ուժին, արդյունաբերական զարգացման և պրոլետարական մասսաների քանակի տեսակետից եղած մեծ տարբերություններին, ազգային առանձնահատկություններին և այլն,— Ռուսաստանի ամբողջ հսկայական տերիտորիայում Սովետական իշխանությունը հաստատվեց համեմատաբար կարճ ժամանակում։

## 6. ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿԻ ՊԱՏՃԱՌՆԵՐԸ։ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ։

1. Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի հիմնական պատճառն այն է, որ ռևոլյուցիան գլխավորում էր Ռուսաստանի բանվոր դասակարգը։ Այնպիսի հսկայական փորձ, որ կուտակվել էր պատմական կարճ ժամանակաշրջանում, չգիտեր աշխատանքի միջազգային բանակի և ոչ մի ջոկատ։ Ռուսաստանի պրոլետարիատը Լենինի ղեկավարությամբ մյուս բոլոր դասակարգերից շուտ ստեղծեց իր պարտիան։ Բանվոր դասակարգը հան-

*դեմ եկավ որպես ինքնակալության դեմ, բուրժուազիայի դիկտատուրայի դեմ համաժողովրդական պայքարի ղեկավար։ Աշխատավորների մյուս խավերը համոզվեցին, որ հանձին պրոլետարիատի իրենք ունեն կալվածատերերի ու բուրժուազիայի ճնշման տակ տառապող ամբողջ ժողովրդի շահերի համար պայքարող մարտիկ։ Ռուսաստանի պրոլետարիատը երկրի ամբողջ սոցիալ-քաղաքական զարգացման գլխավոր շարժիչ ուժն էր։*

*2. Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաղթանակեց այն պատճառով, որ Ռուսաստանում ստեղծված էր հասարակական ուժ՝ պրոլետարիատի և գյուղացիության դաշինք, որը ճզմեց մեռնող դասակարգերի դիմադրությունը։ Ռևոլյուցիայի ընթացքում բոլշևիկները մերկացրին բանվոր դասակարգի գործի դավաճաններին՝ օպորտունիստներին, որոնք պնդում էին, թե պրոլետարիատը կարող է իշխանությունը վերցնել և պահել միայն այնտեղ, որտեղ նա կազմում է բնակչության մեծամասնությունը։ Ռուսական պրոլետարիատն ստացավ Ռուսաստանի գյուղացիական բնակչության ճնշող մեծամասնության՝ մինչև 65 տոկոսը կազմող գյուղացիական չքավորության լիակատար աջակցությունը։ Սեփական կենսափորձի հիման վրա և բոլշևիկյան պարտիայի կատարած մեծ աշխատանքի շնորհիվ գյուղացիության լայն մասսաները հասկացան, որ հող, խաղաղություն, հաց, ազատություն ձեռք կբերեն միայն պրոլետարիատի ղեկավարությամբ։ Պրոլետարիատի կողմը գրավելով աշխատավոր գյուղացիների մեծամասնությանը, բոլշևիկները բուրժուազիայից խլեցին գյուղացիական ռեզերվները։*

*3. Հոկտեմբերյան ռևոլյուցիան մյուս բոլոր ռևոլյուցիաներից տարբերվում էր նրանով, որ բանվորներն ստեղծեցին իշխանության իրենց օրգանները։ Ռուսական պրոլետարիատի ընդերքում ծնունդ առավ ռևոլյուցիոն իշխանության նոր ձև՝ բանվորների դեպուտատների Սովետներ։ Բանվորների, զինվորների և գյուղացիների դեպուտատների Սովետները պրոլետարիատի և գյուղացիության դաշինքի օրգաններն էին, կազմակերպության մի ձև, որի մեջ մարմնավորվում էր բանվորների ու գյուղացիների դաշինքը՝ բանվորների ղեկավարությամբ։*

> *«Եթե ռևոլյուցիոն դասակարգերի ժողովրդական ստեղծագործությունը չստեղծեր Սովետները, ապա պրոլետարական ռևոլյուցիան Ռուսաստանում անհուսալի մի գործ կլիներ...»,— գրում էր Լենինը* (Երկեր, հատ. 26, էջ 110)։

*4. Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաղթանակեց այն պատճառով, որ հանձին ռուսական բուրժուազիայի ուներ համեմատաբար թույլ հակառակորդ։ Ռուսական կապիտալիզմի պատմական զարգացման ամբողջ ընթացքը, առաջավոր կապիտալիստական երկրների համեմատությամբ նրա հետամնացությունը և օտարերկրյա կապիտալից նրա կախումը բացատրում են ռուսական բուրժուազիայի քաղաքական թուլությունը, վախկոտությունը և անբավարար փորձվածությունը։ Ռուսական բուրժուազիային օգնելու գործում անզոր գտնվեցին նաև համաձայնողականները՝ էսեռներն ու մենշևիկները։ Պայքարի շատ տարիների ընթացքում բոլշևիկները մերկացնում էին նրանց որպես բուրժուազիայի գործակալների։ Այդ պարտիաները Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին բացահայտորեն անցան հակառևոլյուցիայի լագերը, պաշտպանում էին կապիտալիստական կարգերը։*

*5. Ռևոլյուցիայի հաղթանակի վճռական պայմանն այն էր, որ ժողովրդա-*



*կան մասսաներին գլխավորում էր բոլշևիկների փորձված, մարտական, ռևոլյուցիոն պարտիան։ Պարտիան ղեկավարվում էր բանվոր դասակարգի առաջավոր տեսությամբ՝ մարքսիստական-լենինյան տեսությամբ։*

*Ռևոլյուցիայի նախապատրաստման և իրականացման ժամանակաշրջանում պարտիան հսկայական տեսական աշխատանք կատարեց, մարքսիզմը հարստացնելով նոր դրույթներով։ Պարտիայի Ապրիլյան կոնֆերենցիայի և VI համագումարի բանաձևերում, Կենտկոմի որոշումներում ու գլխավորապես Լենինի աշխատություններում տրված են բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի վերաճելու կոնկրետ պլանի տեսական հիմնավորումն ու մշակումը։*

*Պարտիան մշակեց և օպորտունիստների դեմ մղած պայքարում պաշտպանեց Ռուսաստանում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության հարցը, ցույց տալով, որ կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում օբյեկտիվ պայմաններ է ստեղծել երկրում սոցիալիզմի իրագործման համար, իսկ հակասությունների առանձնահատուկ սրությունը Ռուսաստանը դարձրել է իմպերիալիզմի շղթայի ամենաթույլ օղակը։ Լենինն է՛լ ավելի զարգացրեց սոցիալիստական ռևոլյուցիայի մարքսիստական տեսությունը, բացահայտեց և հիմնավորեց պրոլետարիատի դիկտատուրայի քաղաքական ձևը՝ Սովետների ռեսպուբլիկան, է՛լ ավելի մշակեց մարքսիստական դրույթները զինված ապստամբության մասին, այդ դրույթները դարձնելով ապստամբության վերաբերյալ ուսմունքը։*

*Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսության կիրառման և գործնական իրականացման օրինակ է։*

*Աշխատավոր մասսաները իշխանության ղեկի մոտ մյուս պարտիաներին տեսել էին առանձին և զանազան կոմբինացիաներով։ Նրանք տեսել էին ամբողջ բուրժուազիային ներկայացնող կադետներին, իրենց վրա զգացել էին կադետների, էսեռների և մենշևիկների կոալիցիայի իշխանությունը, էսեռներին ու մենշևիկներին ստուգել էին նրանց գործերով, երբ նրանք մեծամասնություն էին կազմում Սովետներում։ Ռևոլյուցիայի ընթացքում բուրժուական ու համաձայնողական բոլոր պարտիաները սնանկացան, դրսևորելով իրենց հակառևոլյուցիոն էությունը։ Աշխատավորները երես թեքեցին բուրժուազիայի հետ համաձայնության եկած պարտիաներից և, օգտվելով ետկանչման իրավունքից, սկսեցին վռնդել վստահությունը չարդարացրած դեպուտատներին, նրանց տեղը ընտրելով բոլշևիկների, որոնք իրականում ապացուցել էին, որ իրենք ժողովրդի շահերի հետևողական պաշտպաններ են, ազատության ու անկախության պայքարի իսկական մարտիկներ։ Այսպես մենշևիկներն ու էսեռները մեկուսացվեցին մասսաներից։ Բոլշևիկների պարտիան միակ պարտիան էր, որը անբաժանելիորեն ղեկավարում էր պրոլետարիատի ու գյուղացիության ռևոլյուցիոն պայքարը։*

*Բոլշևիկյան պարտիան կարողացավ միավորել բոլոր տարբեր շարժումները և դրանք ուղղել միասնական նպատակին՝ իմպերիալիզմի տապալմանը։ Պարտիան մեկ ռևոլյուցիոն հոսանքի մեջ միացրեց և՛ խաղաղության համաժողովրդական շարժումը, և՛ հողի համար գյուղացիների պայքարը ընդդեմ կալվածատերերի բռնության, և՛ Ռուսաստանի ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարը ընդդեմ ազգային ճնշման, և՛ սոցիալիզմի համար հասարակության առաջատար ուժի՝ պրոլետարիատի պայքարը։ Բոլ-*

*շևիկների պարտիայի ղեկավարությամբ բանվորներն ու գյուղացիական չքավորությունը տապալեցին բուրժուազիայի կառավարությունը և հաստատեցին Սովետական իշխանություն:*

*Սրանք են ներքին հիմնական պատճառները, որոնք ապահովեցին ռևոլյուցիայի հաջողությունը:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաջողությունն ապահոված միջազգային բնույթի պատճառներից մեկն այն է, որ ռևոլյուցիան ծավալվեց համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ժամանակաշրջանում: Ո՛չ անգլո-ֆրանսիական բլոկը, ո՛չ գերմանական բլոկը չէին կարող անմիջական զինված օգնություն ցույց տալ ռուսական բուրժուազիային: Նրանք ռուսական բուրժուազիային օգնեցին նյութական միջոցներով ու դավադրությունների կազմակերպումով, բայց ի վիճակի չէին քիչ թե շատ զգալի ռազմական ուժեր տրամադրել: Ռուսական բուրժուազիան, մնալով դեմ առ դեմ ռուսական պրոլետարիատի հետ, որը ղեկավարում էր բոլոր աշխատավորներին, չէր կարող դիմանալ մասսաների գրոհին:*

*Ռևոլյուցիայի համար հսկայական նշանակություն ունեցավ նաև միջազգային պրոլետարիատի աջակցությունը: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի ազդեցության տակ բոլոր կապիտալիստական երկրներում ուժեղացավ մասսայական ռևոլյուցիոն շարժումը: Միջազգային պրոլետարիատի ելույթները կաշկանդում էին իմպերիալիստների ձեռքերը և դրանով իսկ հեշտացնում Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի հաղթարշավը երկրում:*

*Բնորոշելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի միջազգային նշանակությունը, Լենինը գրում էր, որ դա արտահայտվում է երկու ձևով՝ ուրիշ երկրների ռևոլյուցիոն շարժման վրա ներգործելով և միջազգային մասշտաբով ռուսական ռևոլյուցիայի հիմնական գծերի կրկնման անխուսափելիությամբ:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բոլոր հարցերը միջազգային նշանակություն ունեն այդ բառի լայն իմաստով: Հոկտեմբերյան ռևոլյուցիայի անմիջական ազդեցության տակ շարժման մեջ մտավ շահագործվողների, իմպերիալիզմի ճնշման տակ հեծող մարդկանց ամբողջ աշխարհը: Մի շարք ռևոլյուցիաներ — Գերմանիայում, Ավստրո-Հունգարիայում և ուրիշ երկրներում, Եվրոպայի ու Ամերիկայի բանվորների մասսայական ռևոլյուցիոն ելույթները հիմքից ցնցեցին կապիտալիստական աշխարհը: Շարժման մեջ մտան գաղութային երկրների ստրկացված ժողովուրդները: Ռուսական ռևոլյուցիան սկիզբ դրեց բանվորների ռևոլյուցիոն ելույթների և ազգային-ազատագրական պայքարի միավորմանը իմպերիալիզմը տապալելու ընդունակ մեկ միասնական ուժի մեջ:*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ամենացայտուն արտահայտությունն էր և սրումը: Ռուսական ռևոլյուցիան փշրեց իմպերիալիզմի շղթան և սկսեց ստեղծել նոր, սոցիալիստական հասարակություն: Վերջ տրվեց իմպերիալիզմի անբաժան տիրապետությանը: Երկրագնդի մեկ վեցերորդ մասում բարձրացվեց սոցիալիզմի դրոշը: Աշխարհը բաժանվեց երկու լագերի՝ մեռնող իմպերիալիզմի լագերի և աճող սոցիալիզմի լագերի: Հոկտեմբերյան ռևոլյուցիան մարդկության նոր դարաշրջանի, շահագործման բոլոր ձևերի վերացման դարաշրջանի, կոմունիզմի հաղթանակի դարաշրջանի սկիզբը դրեց:*



*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային մեծագույն նշանակությունը ոչ միայն այն է, որ նա առաջ մղեց համաշխարհային պատմության ամբողջ ընթացքը, այլև այն, որ նա ցույց տվեց իր արմատական գծերի կրկնման անխուսափելիությունը ամեն մի երկրի սոցիալիստական ռևոլյուցիայում: Ռևոլյուցիան ցույց տվեց, որ առանց պրոլետարիատի ու գյուղացիության դաշինքի՝ բանվորների ղեկավարության պայմաններում, առանց պրոլետարիատի դիկտատուրայի՝ որպես պրոլետարիատի ու գյուղացիության առանձնահատուկ դասակարգային դաշինքի, ռևոլյուցիայի հաղթանակն անհնարին է: Հոկտեմբերյան ռևոլյուցիան պրոլետարիատի դիկտատուրայի լենինյան դրույթի կլասիկ իրագործումն էր Ռուսաստանում: Լենինը պրոլետարիատի դիկտատուրայի մասին խոսում էր որպես ոչ միայն ռուսական գյուղացիների հետ, այլև Ռուսաստանի բոլոր ազգությունների աշխատավորների հետ բանվորների դաշինքի մասին, որպես առաջավոր երկրի պրոլետարիատի և գաղութների ճնշված ժողովուրդների դաշինքի մասին: Սոցիալիստական ռևոլյուցիայի լենինյան տեսության այդ հիմնական դրույթները կիրառելի են բոլոր երկրներում:*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիայի կարևորագույն համաշխարհային նշանակությունն այն է, որ դա աշխարհում միակ ռևոլյուցիան էր, որը ժողովրդին տվեց ոչ միայն քաղաքական իրավունքներ, այլև ունևոր կյանքի նյութական պայմաններ:*

*Միջազգային պրոլետարիատի համար հսկայական նշանակություն ունեն Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո ՍՍՌՄ-ում սկսված սոցիալիստական շինարարության տեսությունն ու պրակտիկան: Սովետական երկրին վիճակվեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ուղիները առաջինը հարթելու խնդիրը:*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան ամբողջ աշխարհին, ամենից առաջ մարդկության կեսից ավելին կազմող կախյալ ու գաղութային ժողովուրդներին ցույց տվեց ազգային հարցի լուծման միակ ճիշտ ուղին:*

*Ռուսաստանում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը ցայտուն կերպով հաստատեց մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ուժը և բոլշևիկյան պարտիայի ստրատեգիայի ու տակտիկայի ճշտությունը և, դրանով իսկ, բոլոր աշխատավորների համար հեշտացրեց պայքարը խաղաղության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար:*

## ՀԱՄԱՌՈՏ ԵԶՐԱԿԱՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1917 թվականի ռևոլյուցիան բոլոր աշխատավորներին ցույց տվեց, որ միայն բոլշևիկների պարտիան էր այն ուժը, որն ընդունակ էր վերացնել կապիտալիստական կարգը, կանխել ազգային աղետը, երկիրը դուրս բերել ինքնուրույն զարգացման ուղի: Լենինի «Ապրիլյան թեզիսներ»-ում և Համառուսաստանյան VII կոնֆերենցիայի որոշումներում պարտիան ժողովրդին տվեց բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու կոնկրետ պլան և մասսաներին կոչ արեց պայքարելու ամբողջ իշխանությունը Սովետներին հանձնելու համար, որոնք ձեռք կբերեն խաղաղություն, հաց, հող և ազատություն: Հանձին Սովետների Լենինը բացահայտեց պրոլետարիատի դիկտատուրայի պետական ձևը:*

*Առաջ քաշելով «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը, պարտիան ելնում էր ռևոլյուցիայի խաղաղ զարգացման, իշխանությունը առանց արյան Սովետներին անցնելու, պրոլետարիատի և գյուղացիության ռևոլյուցիոն-դեմոկրատական դիկտատուրան խաղաղ կերպով պրոլետարիատի սոցիալիստական դիկտատուրայի վերածելու հնարավորությունից։*

*Բայց հուլիսյան իրադարձություններից հետո, երբ հակառևոլյուցիոն բուրժուազիային հաջողվեց հասնել միիշխանության, ռևոլյուցիայի խաղաղ ուղին անհնարին եղավ։ «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը պարտիայի VI համագումարի կողմից ժամանակավորապես հանվեց, որովհետև մենշևիկներն ու էսեռները Սովետները դարձրել էին հակառևոլյուցիոն Ժամանակավոր կառավարության կցորդ։ Մենշևիկներն ու էսեռները վերջնականապես անցան հակառևոլյուցիոն բուրժուազիայի լագերը։*

*Կոռնիլովշչինայի և նրա ջախջախման կապակցությամբ սկսված նոր ռևոլյուցիոն վերելքի հիման վրա Սովետներն աշխուժացան և կրկին դարձան մասսաների մարտական, ռևոլյուցիոն օրգաններ։ Սկսվեց Սովետների բոլշևիկացման շրջանը։ Պարտիան կրկին առաջադրեց «Ամբողջ իշխանությունը Սովետներին» լոզունգը, բայց այս անգամ դա բուրժուազիայի դիկտատուրայի դեմ ապստամբելու և պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու կոչ էր նշանակում։*

*Մասսաների մեջ կատարած իր անձնուրաց աշխատանքով և կոնկրետ իրադրությունը հաշվի առնող ճկուն տակտիկայով պարտիան իր դրոշի տակ համախմբեց պրոլետարիատին, կարողացավ ժողովրդական մասսաներին համոզել իր գաղափարների ճշմարտացիության մեջ և ժողովրդին վճռական ճակատամարտի հանել Ժամանակավոր կառավարության դեմ։ Կոմունիստական պարտիան ռևոլյուցիայի մեջ հանդես եկավ որպես աշխատավորների իմաստուն, փորձված առաջնորդ, որն աշխատավորների պայքարի բոլոր ձևերը հմտորեն ուղղում է միակ ճիշտ ճանապարհով՝ դեպի ազատության նվաճում և անդասակարգ հասարակարգի կառուցում։*

*Էսեռներն ու մենշևիկները չփրկեցին Ժամանակավոր կառավարությանը։ Այդ պարտիաները իրենց զարգացման ուղին ավարտեցին նրանով, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին դարձան հակառևոլյուցիայի բացահայտ պաշտպաններ, որոնք ամեն ինչ անում էին կապիտալիստական կարգը պահպանելու համար։ Ռևոլյուցիայի ընթացքում և բոլշևիկների բացատրական աշխատանքի ազդեցության տակ ժողովրդական մասսաները հասկացան էսեռների ու մենշևիկների հակառևոլյուցիոն էությունը։ Մասսաները համոզվեցին, որ միայն բոլշևիկների պարտիայի խոսքն ու գործն է, որ իրարից չեն տարբերվում, որ միայն այդ պարտիան կվերացնի շահագործման բոլոր տեսակները և երկիրը կփրկի աղետից։ Բանվորները, աշխատավոր գյուղացիները, զինվորները համոզվեցին ժողովրդական մասսաների շահերին պարտիայի նվիրվածության, նրա անդամների հերոսության մեջ, այն բանում, որ կոմունիստները պատրաստ են իրենց կյանքը զոհել հանուն սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի։ Ժողովրդական մասսաները իրենց բախտը վստահեցին իրենց շահերի միակ ռևոլյուցիոն և մինչև վերջ հետևողական պաշտպանին՝ բոլշևիկների պարտիային։ Պարտիայի կոչով նրանք տապալեցին բուրժուական Ժամա-*



*նակավոր կառավարությունը և հաստատեցին Սովետների սոցիալիստական ռեսպուբլիկա։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական ռևոլյուցիան ժողովրդական ռևոլյուցիա էր։ Նա տապալեց շահագործողների լուծը, իրականացրեց պրոլետարիատի դիկտատուրա, որը չքավոր գյուղացիության աջակցությամբ ձեռնամուխ եղավ կոմունիստական հասարակարգի հիմքերի ստեղծմանը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան մարդկության պատմության մեջ բացեց նոր դարագլուխ՝ պրոլետարական ռևոլյուցիաների և սոցիալիզմի դարագլուխը։*

---

# ՀԱՆՈՒՆ ՍՈՎԵՏՆԵՐԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ

*Հ. ԲԱԲԼՈՒՄՅԱՆ*

*1959 թվականի մարտի 15-ին տեղի են ունենալու Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, գյուղական ու ավանային Սովետների ընտրությունները, որոնք կարևոր իրադարձություն են ռեսպուբլիկայի քաղաքական կյանքում։*

*Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստումն անց է կացվում պատմական խոշոր անցքերի, աշխատավորների քաղաքական ու աշխատանքային բուռն խանդավառության պայմաններում։ Նախապատրաստվելով ընտրություններին, ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմ հայրենասիրությամբ լեցուն եռանդուն պայքար են տանում յոթնամյա պլանի վերաբերյալ ՍՄԿՊ XXI համագումարի դիրեկտիվները իրագործելու, այն համարելով իրենց ամենահիմնական ու առաջնահերթ խնդիրը։*

*Արդյունաբերության և գյուղատնտեսության հետագա զարգացման մասին ՍՄԿՊ Կենտկոմի կողմից մշակված և կյանքում կենսագործվող միջոցառումները նոր լիցք, թափ ու եռանդ են տվել տեղական Սովետների գործունեությանը, զգալիորեն բարձրացրել են նրանց աշխատանքի մակարդակը։ Ուժեղացել և ամրապնդվել է քաղաքային, շրջանային և գյուղական Սովետների կապը աշխատավորության հետ։ Նրանք ավելի մեծ ուշադրություն են հատկացնում սովետական մարդկանց նյութական բարեկեցության բարձրացման և կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերին, կոմունիստական դաստիարակության գործին։ Իրենց շուրջը համախմբելով աշխատավորական ամենալայն մասսաներին, Սովետները կազմակերպական հսկայական աշխատանք են կատարում պարտիայի ու կառավարության առաջադրանքների կենսագործման ուղղությամբ. մեծ է նրանց բաժինն այն հաջողություններում, որ ռեսպուբլիկան ձեռք է բերել արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի զարգացման գործում։*

*Մեր առաջընթացի, պետական պլանների կատարման հաջողությունը անմիջականորեն վճռվում է արդյունաբերական ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում։ Այդ կապակցությամբ էլ ավելի է բարձրանում քաղաքային, շրջանային ու գյուղական Սովետների դերը, որոնք կոչված են մասսաներին ներգրավելու արտադրական կոնկրետ առաջադրանքների կատարման գործում։ Սովետները պետք է անընդհատ կատարելագործեն մասսաների շրջանում կատարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքի ձևերը, սովետական մարդկանց դաստիարակությունը տանեն մեր երկրի առջև ծառացած խնդիրների*



*կարևորությունն ըմբռնելու, պետական ու աշխատանքային կարգապահությունը խստիվ պահպանելու ոգով։*

*Աշխատավորների դեպուտատների Սովետները մեր երկրի աշխատավորության մեծագույն նվաճումն են, նրանց կամքի արտահայտության անմիջական օրգանը։ Կյանքը լիովին հաստատեց լենինյան այն ուսմունքը, որ Սովետները աշխատավորության ղեկավարման ամենադեմոկրատական ձևն են, որոնք ապահովում են ժողովրդի մշտական, անպայման ու վճռական մասնակցությունը պետական կառավարման մեջ։ Սովետների ամբողջ գործունեությունը տեղի է ունենում ժողովրդական լայն մասսաների ակտիվ մասնակցությամբ, նրանց անմիջական հսկողության ներքո։*

*ՍՍՌՄ-ում իշխանության բոլոր օրգանները ընտրվում են աշխարհի ամենադեմոկրատական ընտրական սիստեմի հիման վրա. ընտրություններին մասնակցում է ամբողջ ժողովուրդը, որն իր պարտիական ու անպարտիական լավագույն ներկայացուցիչներին, որոնք իրենց անձնվեր աշխատանքով վայելում են լայն մասսաների վստահությունը, ընտրում է Սովետների դեպուտատ։ Ինչպես նշված է ՍՍՌՄ Կոնստիտուցիայում, իշխանության բոլոր օրգանները, ինչպես և իշխանության օրգաններում ընտրված դեպուտատները հաշվետու են իրենց ընտրողների առջև։*

*Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը սոցիալիստական Հայրենիքի կառավարման սիստեմում խոշոր նշանակություն են տալիս տեղական Սովետների գործունեությանը։ Աշխատավորների դեպուտատների Սովետները ղեկավարում են իրենց ենթակա օրգանների ու հիմնարկությունների գործունեությունը, ապահովում պետական օրենքների կատարումն ու քաղաքացիների իրավունքների պահպանումը, սահմանում են տեղական բյուջեն։ Նրանք ղեկավարում են տնտեսական և կուլտուրական շինարարությունը, ձեռք են առնում բոլոր միջոցները քաղաքի և գյուղի աշխատավորների բազմապիսի և հարաճուն պահանջմունքները բավարարելու համար։*

*Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետները զգալի գործ են կատարել կազմակերպական-մասսայական աշխատանքը բարելավելու, մասսաների հետ կապն ուժեղացնելու, դեպուտատների և Սովետների գործադիր կոմիտեների հաշվետվություններ կազմակերպելու և անցկացնելու, Սովետներին ենթակա օրգանների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների նկատմամբ ղեկավարությունն ուժեղացնելու, նրանց աշխատանքը մշտապես վերահսկելու համար։*

*Այնտեղ, որտեղ կազմակերպական-մասսայական աշխատանքը դրված է իր բարձրության վրա, աշխատավորների դեպուտատների Սովետի և նրա գործադիր կոմիտեի աշխատանքներն ընթանում են հաջող, մասսաները մոտիկ են կանգնած Սովետին և նրա ապարատին, տարվում է ստեղծագործական աշխատանք։*

*Այս տեսակետից աշխատանքի դրական փորձ ունի աշխատավորների դեպուտատների Կիրովականի քաղաքային Սովետը։ Այստեղ սեսիաները նախապատրաստվում են խնամքով, այդ գործում ընդգրկվում և ակտիվ մասնակցություն են ցուցաբերում մեծ թվով դեպուտատներ, մշտական գործող հանձնաժողովի անդամներ։*

*Իր առաջին նիստերից մեկում քննարկելով մշտական հանձնաժողովների և դեպուտատների կողմից ընտրողների հետ տարվող աշխատանքները ուժե-*

ղացնելու հարցը, քաղաքային Սովետը գործնական միջոցառումների դիմեց և զգալիորեն բարելավեց այդ աշխատանքները։ Այսպես, ստեղծվեցին 54 թաղային կոմիտեներ, որոնց համար կազմակերպվել են 4-օրյա սեմինար պարապմունքներ, որտեղ պարզաբանվել են նրանց պարտականություններն ու իրավունքները։ Թաղային կոմիտեների աշխատանքներին մեծ ակտիվությամբ են մասնակցում դեպուտատները։

Քաղաքային Սովետում, ինչպես նաև ընտրական օկրուգներում ստեղծված են դեպուտատների 11 սենյակ, որտեղ ընտրողներն ընդունվում են դեպուտատների կողմից և լուծում իրենց հուզող հարցերը։

Զգալիորեն աշխուժացել են մշտական գործող հանձնաժողովների աշխատանքները։ Կիրովականի քաղաքային Սովետի առևտրի մշտական հանձնաժողովը (նախագահ՝ դեպուտատ Ս. Ավետիսյան) ունեցել է 9 նիստ և կոնկրետ միջոցառումների դիմել՝ առևտրի ցանցում եղած թերությունները վերացնելու համար։ Հանձնաժողովը նախապատրաստել և Սովետի քննարկմանն է մտցրել գարնան և ամռան սեզոնում քաղաքի բնակչությանը թարմ բանջարեղեն վաճառելու հարցը, օժանդակել է քաղաքում առևտրական նոր կետեր բացելուն, նախապատրաստել և գործկոմի քննարկմանն է դրել վատնում-յուրացումների դեմ պայքարն ուժեղացնելու, առևտրի ցանցում աշխատողների ատեստացիա անցկացնելու, հացի որակը լավացնելու, առևտրական կազմակերպությունների դեբիտորական պարտքերը վերացնելու և այլ հարցեր։ Լուրջ աշխատանք են կատարել նաև բյուջետային և տեղական արդյունաբերության հանձնաժողովները։

Քաղաքային Սովետը կազմակերպել է դեպուտատի օր։ Բոլոր դեպուտատներն ունեն «Հուշատետր քաղաքային Սովետի դեպուտատի» ձեռնարկը։

Գործադիր կոմիտեն դեպուտատներին օգնելու նպատակով նրանց համար դեկուցում է կազմակերպել՝ «Քաղաքի զարգացման հեռանկարները և դեպուտատների խնդիրները» թեմայի մասին։ Այստեղ միաժամանակ կազմակերպվել է հարց ու պատասխանի երեկո, դեպուտատներին պարզաբանվել են նրանց հուզող հարցերը։ Այնուհետև գործադիր կոմիտեն ամփոփել է դեպուտատների օրվա արդյունքները և միջոցառումներ նշել նրանց կողմից բարձրացված հարցերը լուծելու և արված քննադատական դիտողություններին ընթացք տալու համար։ Դեպուտատներ Վ. Պողոսյանը, Լ. Աբեղյանը, Պ. Պողոսյանը և շատ ուրիշներ հաճախ են լինում իրենց ընտրողների մոտ։ Յուրաքանչյուր սեսիայից հետո նրանք իրենց ընտրողներին ծանոթացնում են սեսիայի ընդունած որոշումներին, խորհրդակցում այդ որոշումների կենսագործման մեթոդների մասին։

Աշխատանքի բավականին դրական փորձ ունեն նաև աշխատավորների դեպուտատների Շամշադինի, Էջմիածնի, Արտաշատի և այլ շրջանային ու գյուղական Սովետներ։

Սակայն պետք է նշել, որ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների գործունեության մեջ կան զգալի թերություններ. շատ Սովետների աշխատանքի մակարդակը դեռևս չի համապատասխանում պարտիայի առաջադրած խնդիրներին։ Առանձին Սովետներ լուրջ ուշադրություն չեն դարձնում կազմակերպական-մասսայական աշխատանքներին։ Կազմակերպական աշխատանքի ցածր մակարդակը հաճախ հանգեցնում է այն բանին, որ Սովետները անբավարար են կատարում տնտեսական ու կուլտուրական շինարարության



մեջ մասսաների ակտիվ մասնակցությունն ապահովելու իրենց պարտականությունները, անհրաժեշտ հոգատարություն չեն ցուցաբերում աշխատավորության կողմից բարձրացված հարցերի լուծման, նրանց կարիքները հոգալու նկատմամբ, անտեսում են ժողովրդական կրթության, առողջապահության, կուլտուր-կենցաղային հիմնարկներում, ինչպես և առևտրական ու սննդի կազմակերպություններում տեղ գտած թերությունները։

Որոշ Սովետներ խախտում են սեսիաների հրավիրման ժամկետները։ Ղուկասյանի շրջանի Ծաղկաշենի և Ցողամարգի գյուղական Սովետները ռեսպուբլիկայի տեղական Սովետների վերջին ընտրություններից հետո անցած ժամանակամիջոցում հրավիրել են միայն 6-ական, իսկ Ղուկասյանի ու Կալինինոյի շրջանային Սովետները՝ 7-ական սեսիա. Նոյեմբերյանի շրջանի Վերին Քյորփլուի գյուղական Սովետը 1958 թվականի ապրիլից հետո ոչ մի սեսիա չի ունեցել։

Աշխատավորների դեպուտատների Ղուկասյանի, Կալինինոյի և Նոյեմբերյանի շրջանային Սովետների գործադիր կոմիտեները անբավարար են արձագանքում սեսիաներում դեպուտատների կողմից արվող առաջարկություններին ու քննադատական դիտողություններին։ Դրանով պետք է մասամբ բացատրել, որ վերը նշված շրջաններում պատշաճ ուշադրություն չի հատկացվում հիմնարկների, կազմակերպությունների ու ձեռնարկությունների գործունեության մեջ եղած թերությունների վերացման վերաբերյալ արվող քննադատական դիտողություններին։ Անհրաժեշտ միջոցներ ձեռք չեն առնվում տնտեսական ու կուլտուրական շինարարության հարցերի վերաբերյալ դեպուտատների արած մի շարք արժեքավոր առաջարկները կենսագործելու համար։

Որպես ընդհանուր թերություն պետք է նշել, որ աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների մի շարք գործադիր կոմիտեներ սիստեմատիկորեն չեն ընդհանրացնում և ժամանակին ընթացք չեն տալիս դեպուտատների առաջարկներին ու քննադատական դիտողություններին. այդ թուլացնում է առանձին օղակների ղեկավարների պատասխանատվությունը, նսեմացնում դեպուտատների և Սովետների դերը։

Ռեսպուբլիկայի առջև ծառացած հոյակապ խնդիրների կենսագործումը պահանջում է կատարելագործել Սովետների աշխատանքը, ուժեղացնել նրանց կողմից տնտեսությանը ցույց տրվող ղեկավարությունը։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների ընտրություններին կոմունիստները, ինչպես միշտ, այնպես էլ այժմ հանդես են գալիս անպարտիականների հետ միասնական բլոկով։ Գերագույն և տեղական Սովետների դեպուտատության թեկնածուներ են առաջադրվել կոմունիստների և անպարտիականների բլոկի կողմից։ Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետում, քաղաքային, շրջանային, գյուղական ու ավանային Սովետներում առաջադրվել են ամենից հեղինակավոր, գործունյա, ժողովրդի վստահությանն արժանացած մարդիկ, որոնք կարող են բարեխղճորեն կատարել իրենց դեպուտատական պարտքը, հաջողությամբ կենսագործել Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունը։ Պարտիական կազմակերպությունների, Սովետների գործադիր կոմիտեների հոգատարության շնորհիվ այս ընտրություններում առաջադրվել են ավելի շատ շարքային բանվորներ, կոլտնտեսականներ, նյութական բարիքներ արտադրողներ։

Սովետների աշխատանքը բարելավելու, մասսաների հետ նրանց կապը ամրապնդելու, սովետական դեմոկրատիան է՛լ ավելի զարգացնելու և Սովետների պրակտիկ գործունեության մեջ աշխատավորներին է՛լ ավելի լայնորեն ներգրավելու նպատակով առաջիկա ընտրություններում մեր ռեսպուբլիկայի աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների դեպուտատների թիվը կավելանա մոտ 4000-ով:

Նախքան դեպուտատության թեկնածուների առաջադրումը, պարտիական կազմակերպությունները հաշվի են առել մասսաների կարծիքը, խորհրդակցել են արհմիութենական, կոմերիտական և այլ հասարակական կազմակերպությունների ու աշխատավորական ընկերությունների, ինչպես և անպարտիական ակտիվի հետ:

Դեպուտատության թեկնածության լայն քննարկումը սովետական դեմոկրատիայի՛ բնորոշ գծերից մեկն է: Այն հնարավորություն է տալիս խուսափելու պատահականություններից ու սխալներից, ընտրությունների ժամանակ ապահովվում է պարտիայի և ժողովրդի միասնությունը: Մեր երկրի աշխատավորներն ունեն բոլոր հնարավորությունները ընտրելու նրան, ում ցանկանում են:

Անցյալ ընտրությունների ժամանակ մեր ռեսպուբլիկայի աշխատավորների դեպուտատների քաղաքային, շրջանային, գյուղական ու ավանային Սովետներում ընտրվել են 13.367 դեպուտատներ: Նրանցից 31,5 տոկոսը կանայք են, 40,5 տոկոսը՝ անպարտիականներ, 62 տոկոսը՝ բանվորներ ու կոլտնտեսականներ: Այս թվերը պերճախոս կերպով ցույց են տալիս, որ տեղական Սովետներն իրոք ժողովրդական օրգաններ են, որ սոցիալիստական պետությունն ամենադեմոկրատական իշխանությունն է աշխարհում, որ սովետական դեմոկրատիան լայն հնարավորություններ է ընձեռում աճեցնելու նոր ակտիվ, հասարակական-պետական նոր գործիչներ, պետական կառավարմանը մասնակից է դարձնում աշխատավորության նորանոր խավեր:

Պարտիայի քաղաքային, շրջանային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները պետք է ընտրությունների նախապատրաստման ու անցկացման աշխատանքներում լայնորեն ընդգրկեն անպարտիական ակտիվը, անհրաժեշտ հոգատարություն, զգայուն վերաբերմունք ցուցաբերեն աշխատավորության պահանջների նկատմամբ, պաշտպանեն աշխատավորության կողմից արված առողջ ու գործարար քննադատությունը, լրջորեն մոտենան ընտրողների կողմից արված գործնական առաջարկություններին, միջոցներ ձեռնարկեն նրանց կենսագործման համար:

Պետք է խիստ հետևել, որպեսզի ընտրությունների նախապատրաստման ու անցկացման կամպանիայի շրջանում թույլ չտրվի սովետական դեմոկրատիայի սկզբունքների խախտում, պահպանվեն Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիայի և Գերագույն ու տեղական Սովետների ընտրությունների կանոնադրության պահանջները:

Ընտրական կամպանիայի ամբողջ հաջողությունը կախված կլինի այն բանից, թե պարտիական, սովետական կազմակերպություններն ու օրգանները ինչպես են ծավալել կազմակերպական ու քաղաքական աշխատանքը: Նրանք պետք է լուրջ ուշադրություն նվիրեն ընտրական տեղամասերի կահավորմանը, ընտրողների ցուցակների ճիշտ կազմմանը, դեպուտատության թեկնածուների օգտին ծավալվող ագիտացիային: Անհրաժեշտ է լայնորեն օգտա-



գործել անցած ընտրությունների ժամանակ ձեռք բերված դրական փորձը, ինչպես և հաշվի առնել բացերն ու թերությունները՝ դրանք չկրկնելու համար:

Պարտիայի քաղաքային, շրջանային կոմիտեների, սկզբնական պարտիական կազմակերպությունների խնդիրն է՝ Սովետների ընտրության նախապատրաստման ու անցկացման ժամանակաշրջանում ընդլայնել մարտական, գործնական ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքը, ապահովել և գլխավորել բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի, մեխանիզատորների, գյուղատնտեսության մասնագետների քաղաքական ու աշխատանքային խանդավառությունը: Դասախոսություններում, զեկուցումներում, զրույցներում անհրաժեշտ է աշխատավորության կյանքից վերցրած կոնկրետ փաստերով ցույց տալ, թե ինչպես ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերելքի հիման վրա ավելի ու ավելի է բարձրանում սովետական ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակը: Անհրաժեշտ է պարզաբանել, որ մեր Հայրենիքը բոլոր հաջողությունները ձեռք է բերել շնորհիվ այն բանի, որ Սովետական Միության Կոմունիստական պարտիան հենվելով ժողովրդի վստահության, սովետական մարդկանց ստեղծագործական ակտիվության վրա, հաստատ քայլերով առաջ է ընթանում լենինյան ուղիով: Դեպի կոմունիզմ մեր առաջընթացի, Կոմունիստական պարտիայի հաղթանակների անսպառ աղբյուրը հանդիսացել և հանդիսանում է նվիրվածությունը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին, պարտիայի շարքերի միասնությունն ու համախմբվածությունը, դեպի ժողովրդի ուժն ունեցած խոր հավատը, նրա միասնությունը ժողովրդի հետ:

Ընտրական կամպանիայի աշխատանքների ժամանակ անհրաժեշտ է բազմակողմանի քննադատել կեղծ, հակաժողովրդական բուրժուական դեմոկրատիան, լայն կերպով պրոպագանդել սոցիալիստական հասարակարգի և պետական կարգի առավելությունները կապիտալիստականի նկատմամբ, կոնկրետ փաստերով ցույց տալ ՍՍՌՄ Կոնստիտուցիայի մեծ սկզբունքների կենսագործումը մեր երկրի ամենօրյա կյանքում, պրոպագանդել սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի կենսունակ ուժի մեծ գաղափարները, պարզաբանել Կոմունիստական պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերը ՍՍՌՄ-ում կոմունիստական հասարակություն կառուցելու գործում, ցույց տալ սովետական ժողովրդի՝ նոր կյանք կերտողի ստեղծագործ դերը:

Ձեռնարկություններում, հիմնարկություններում, կոլտնտեսություններում, սովետական տնտեսություններում անցկացվող ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքին զուգընթաց անհրաժեշտ է լայն քաղաքական-մասսայական աշխատանք կազմակերպել նաև ըստ ընտրողների բնակության վայրի, ընդ որում հաշվի առնել ընտրողների զբաղմունքը, քաղաքական ու կուլտուրական մակարդակը, տարիքը և ազգային կազմը: Պետք է հատուկ ուշադրություն հատկացնել երիտասարդ ընտրողների հետ տարվող աշխատանքին:

Ագիտացիոն և պրոպագանդիստական աշխատանքի կենտրոն պետք է դառնան ընտրական տեղամասն ու նրան կից ագիտպունկտը, այնտեղ պետք է պարբերաբար անցկացնել կուլտ-մասսայական աշխատանքներ, զրույցներ, զեկուցումներ, դասախոսություններ, կոնսուլտացիաներ, հարց ու պատասխանի երեկոներ, ինչպես և ընտրողների հետ անհատական զրույցներ: Պարտիական կազմակերպությունները պետք է հոգան, որպեսզի ագիտկոլեկտիվ-

ների աշխատանքներում ներգրավվեն պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների ղեկավար աշխատողներ, արդյունաբերության ու գյուղատնտեսության առաջավորներ։

Իրենց առջև դրված խնդիրները պատվով կատարելու համար Սովետները պետք է վճռականորեն վերացնեն իրենց աշխատանքում եղած թերությունները, ավելի ամրապնդեն կապը մասսաների հետ, անողոք պայքար մղեն դեռևս գոյություն ունեցող քաշքշուկի ու բյուրոկրատիզմի երևույթների դեմ, էժանացնեն և կատարելագործեն պետական և տնտեսական ապարատը։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է սիստեմատիկորեն զբաղվել Սովետների գործունեությամբ, օգնել նրանց՝ մեր կյանքի տնտեսական ու կուլտուրական հարցերը հաջող լուծելու։

Սովետների ընթացիկ ընտրությունները տեղական Սովետների գործունեության բազմակողմանի ստուգում կհանդիսանան։ Այդ կամպանիան պետք է անցնի քաղաքական ու կազմակերպական բարձր մակարդակով, տեղական Սովետների գործունեության քննարկման նշանաբանով, ինչպես և արդյունաբերության, գյուղատնտեսության, առողջապահության, ժողովրդական կրթության, առևտրի, կենցաղի ու կուլտուրայի ղեկավարման գործում սովետական օրգանների աշխատանքում եղած թերությունները քննադատելու և վերացնելու նշանաբանով։

Աշխատավորների դեպուտատների տեղական Սովետների առաջիկա ընտրությունները կհանդիսանան մեր ժողովրդի ուժի, Կոմունիստական պարտիայի շուրջը նրա համախմբվածության, Սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը առաջիկայում ևս պաշտպանելու պատրաստակամության մի հզոր ցույց։ Ընտրությունները էլ ավելի կամրապնդեն բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամությունը, կառաջացնեն մեր աշխատավորության քաղաքական ու արտադրական ակտիվության նոր վերելք՝ ՍՄԿՊ XXI համագումարի կողմից առաջադրված հոյակապ խնդիրները կենսագործելու համար։

---

# ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Ռ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Անցած տարվա սկզբին մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները մանրամասնորեն մշակեցին և կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների աշխատողների ժողովներում քննարկեցին ու ընդունեցին գյուղատնտեսության զարգացման 1959—1965 թվականի պլանները, որոնք իրենց արտահայտությունը գտան ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի վերաբերյալ ՀԿՊ XX և ՍՄԿՊ XXI համագումարների որոշումներում։ Համաձայն յոթնամյա պլանի ռեսպուբլիկայում հացահատիկի արտադրությունը 1957 թվականի համեմատությամբ 1965 թվականին պետք է աճի 123 տոկոսով, բամբակինը՝ 122 տոկոսով, ծխախոտինը՝ 140 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 113 տոկոսով, բանջարեղենինը՝ 173 տոկոսով, կարտոֆիլինը՝ 131 տոկոսով։ Խաղողի արտադրությունը պետք է աճի 2,9 անգամ, պտուղներինը՝ 3 անգամ, կաթինը՝ 1,8 անգամ, մսինը՝ 2,1 անգամ, բրդինը՝ մոտ 2 անգամ, բնական մետաքսաթելի արտադրությունը՝ 1,7 անգամ։ 1965 թվականին խաղողի և պտղատու այգիների տարածությունը պետք է ավելանա 44 հազար հեկտարով։

Յոթնամյակի ընթացքում անասնագլխաքանակը պետք է աճի. խոշորինը՝ 115,8 տոկոսով, որից կովերինը՝ 160,4 տոկոսով, ոչխարներինը՝ 140,2 տոկոսով, խոզերինը՝ 118,6 տոկոսով և թռչուններինը՝ 256,6 տոկոսով։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու ցանովի խոտերի տարածությունների ընդարձակմանը, որը կատարվելու է հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների կրճատման հաշվին։ 1958 թվականի փաստացի ցանքատարածության համեմատությամբ 1965 թվականին հացահատիկի ցանքատարածությունները որոշ չափով կրճատվելու են։ Չնայած դրան, հացահատիկի արտադրությունն ավելանալու է։ Այդ ավելացումը կատարվելու է փաստացի տարածությունների բերքատվության բարձրացման շնորհիվ։ Այսպես, եթե 1957 թվականին ռեսպուբլիկայում մեկ հեկտարից ստացվել է 10,5 ցենտներ հացահատիկի միջին բերք (ամենաբարձրը բոլոր տարիների համեմատությամբ), ապա 1965 թվականին պետք է ստացվի 14—14,5 ցենտներ, այսինքն՝ 1957 թվականի համեմատությամբ հացահատիկի արտադրությունը կաճի 123 տոկոսով։ Այսպիսով հացահատիկի արտադրության զգալի աճը հնարավորություն կտա նաև առանձնացնել բավարար քանակությամբ հատիկային կեր անասնաբուծության համար։ Այս կապակցությամբ զգալիորեն ավելանալու են նաև եգիպտացորենի ցանքատարածությունները, որոնք հասնելու են ավելի քան 40 հազար հեկտարի։

Յոթնամյա պլանի համաձայն խոշոր չափով զարգանալու են խաղողագործությունն ու պտղաբուծությունը, որոնք մեր ռեսպուբլիկայի համար տնտեսական վճռական նշանակություն ունեն։ Այգիների տարածությունները պետք է կրկնապատկվեն կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում և զգալիորեն աճեն կոլտնտեսականների և բանվոր-ծառայողների տնամերձ հողամասերում։ Ընդհանուր առմամբ այգիների տարածությունը 1965 թվականին պետք է հասնի շուրջ 87 հազար հեկտարի, ներկայումս եղած 42869 հեկտարի փոխարեն։ 1965 թվականին խաղողի մեկ հեկտարի միջին բերքը պետք է հասնի 105—110 և պտղինը՝ 65—70 ցենտների։ Այդ հնարավորություն կտա լիովին բավարարել բնակչության պահանջը թարմ մրգերով ու խաղողով և միաժամանակ զգալիորեն ընդարձակել գինու, կոնյակի, պահածոների և չոր մրգերի արտադրությունը։

Զգալիորեն պետք է բարձրացվի կովերի կաթնատվությունը, այն յուրաքանչյուր կովից հասցնելով 2100—2200 լիտրի։ Ամեն մի ոչխարի բրդատվությունը պետք է հասցվի 4 կիլոգրամի. վերջապես պետք է զգալի չափով ավելացվի մսի արտադրությունը։

Այս խնդիրների լուծումը հրամայական պահանջ է դնում՝ առանձնահատուկ ուշադրություն դարձնել գյուղատնտեսության արտադրության (երկրագործության, անասնաբուծության) կուլտուրայի բարձրացման վրա, որը մեզանում դեռևս իր պատշաճ բարձրության վրա չի գտնվում։

Այս նպատակով ցանկանում ենք շոշափել մի շարք կարևոր հարցեր, որոնց իրագործումը հնարավորություն կտա լուրջ հաջողությունների հասնել։

Հանրահայտ է, թե գյուղատնտեսության մեջ ինչ մեծ ուշադրություն է նվիրվում հողագործության կուլտուրան բարձրացնող ցանքաշրջանառությունների իրացման, հողերի ավելի լավ մշակման, ճիշտ ագրոտեխնիկայի կիրառման, հանքային և օրգանական պարարտանյութերի օգտագործման, սերմնաբուծության գործի լավագույն կազմակերպման, բույսերի հիվանդությունների և վնասատուների դեմ տարվող պայքարի հարցերին։

Կասկածից վեր է, որ բարձր և կայուն բերք ստանալն անհնարին է առանց յուրաքանչյուր կոլտնտեսությունում և սովետական տնտեսությունում վերը նշված հարցերը ժամանակին և ճիշտ լուծելու։ Տնտեսության խելացի ղեկավարումը (ճիշտ ցանքաշրջանառությունների կենսագործման միջոցով) հնարավորություն է տալիս պլանաչափ կերպով, առանց լարվածության լուծելու այդ հարցերը։

Պարտիան դատապարտեց վերջին տարիներին հողագործության մեջ խոտադաշտային ցանքաշրջանառության շաբլոն կիրառումը և կոլտնտեսությունների, սովետական տնտեսությունների ու գյուղատնտեսության օրգանների առջև խնդիր դրեց հողագործության սիստեմում, բնակլիմայական պայմաններից ելնելով, ըստ գոտիների մշակել անհրաժեշտ միջոցառումներ։

Գյուղատնտեսության ղեկավարման գործում չի կարելի հաշվի չառնել գյուղատնտեսության մասնագիտացման գոտիները, այդ գոտիների բնական-տնտեսական պայմանները, դրանց առանձնահատկությունները։ Բանն այն է, որ իրականում հաճախ հաշվի չեն առնվում գիտության նորագույն նվաճումները և առաջավոր փորձը, խախտվում է ցանքաշրջանառությունը, փոխվում է ցանքատարածությունների կառուցվածքը, խախտվում են գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման սկզբունքները։ Այդ պատճառով էլ մեզանում դեռևս չկա կայուն բերքատվություն։



Մինչդեռ հողագործության կուլտուրայի բարձրացումը ուղղակի անհնարին է առանց ցանքաշրջանառության հարցի լուծման։ Ցանքաշրջանառությունը կարգ ու կանոն է մտցնում գյուղատնտեսության մեջ, տնտեսությունն ազատում աշխատանքային լարվածությունից։ Ցանքաշրջանառությունը հնարավորություն է տալիս լիովին և շահավետորեն փոխհատուցել աշխատանքային ներդրումները։ Այն կոլտնտեսությունները, որոնք անխախտ իրագործում են ցանքաշրջանառությունը, հայտնի են իրենց հաջողություններով։ Ահա դրանցից մի քանիսը. Սիսիանի շրջանի Նորավան, Արթիկից՝ Վարդաքար, Ախտայից՝ Ֆանտան, Բասարգեչարից՝ Նորակերտ, Իջևանից՝ Աչաջուր, Ախուրյանից՝ Ախուրիկ գյուղերի և շատ ուրիշ կոլտնտեսություններ, որոնք տևականորեն պահպանում են իրենց առաջնությունը։

Ներկայումս 785 կոլտնտեսությունից միայն 486 կոլտնտեսությունում է ցանքաշրջանառություն անցկացված, որոնցից սակայն միայն 63 կոլտնտեսությունում է, որ կանոնավոր կերպով կենսագործվում է ցանքաշրջանառությունը։ Ինչ վերաբերում է ռեսպուբլիկայի սովետական տնտեսություններին, ապա այստեղ դրությունն ավելի վատ է։ Նրանցից և ոչ մեկում օրինակելի ցանքաշրջանառություն չկա։

Ցանքաշրջանառության ասպարեզում տիրող նման դրությունը չի կարող իր բացասական ազդեցությունը չունենալ հողագործության կուլտուրայի ընդհանուր վիճակի վրա, հողային ֆոնդի ռացիոնալ օգտագործման և բերքատվության անընդհատ բարձրացման գործի վրա։ Գաղտնիք չէ, որ մեզանում եղած հնարավորությունների համեմատությամբ խիստ ցածր է օգտագործվող հարյուր հեկտարից ստացվող եկամուտը, որը 1957 թվականին կազմում է 69858 ռուբլի։ Մինչդեռ անհրաժեշտ է հիշատակել, որ ընդհանուր հողատարածությունների ֆոնդում գտնվում են մոտ 42 հազար հեկտար խաղողի և պտղատու այգիներ, ինչպես նաև ավելի քան 263 հազար հեկտար ոռոգելի, հողեր, որոնցից ստացվող եկամուտները պետք է մեծ լինեն։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական օրգանները պարտավոր են լուրջ միջոցներ ձեռնարկել մեկ տարվա ընթացքում բոլոր կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ավարտելու ցանքաշրջանառության անցկացումը և նրա անխախտ իրագործումը։

Մեր ռեսպուբլիկան բավականին լայն հնարավորություններ ունի մշակվող հողերի պարարտացման համար, սակայն պարարտանյութերի կիրառումը խիստ անբավարար է դրված։ Պարարտանյութերի օգտագործումը հաճախ կատարվում է այնպես, որ հանքային և մնացած պարարտանյութերի դոզաների հարաբերակցությունը և կիրառման ժամկետները սահմանվում են առանց բավականաչափ գիտական հիմնավորման։ Ռեսպուբլիկայում կան բավականին հողամասեր, որոնք խիստ հարուստ են կրով և շատ դեպքերում այդ հողերում սուպերֆոսֆատի աննորմալ օգտագործումը բացասական ազդեցություն է թողնում։ Նույնը կարելի է ասել նաև ազոտական պարարտանյութերի մասին, որի ոչ ճիշտ օգտագործումը կամ բարձր դոզաների կիրառումը անցանկալի հետևանքներ է տալիս։ Հանքային պարարտանյութերը բերքատվության բարձրացման հզոր գործոն են, եթե նրանք օգտագործվում են ճիշտ դոզաներով, ճիշտ հարաբերակցություններով և ժամանակին։ Այս հարցերում

ռեսպուբլիկայի գյուղատնտեսական գիտական միտքը դեռևս շատ մեծ անելիքներ ունի։

Անհրաժեշտ է նշել, որ վերջին տարիներին պարարտանյութերի բաժնում խիստ պակասել է գոմաղբի քանակությունը (խոսքը հասունացած, լավ պատրաստված գոմաղբի մասին է), իսկ գոմաղբը, ինչպես հայտնի է, անփոխարինելի պարարտանյութ է։ Սակայն մեզ մոտ ինչպե՞ս են վերաբերվում այդ պարարտանյութի օգտագործմանը։ Շատ վատ։ Գոմաղբը շատ տեղերում հողն է մտցվում թարմ վիճակում, որը վնասից բացի օգուտ չի բերում։ Անհրաժեշտ է բոլոր կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ունենալ գոմաղբամբարներ և մեզամբարներ, որտեղ կուտակել գոմաղբն ու մեզը և միայն որոշ ժամանակ անցնելուց հետո փոխադրել դաշտ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները հնարավորություն ունեն ամեն տարի հող մտցնելու 1,3—1,5 միլիոն տոննա գոմաղբ, որը կարևոր նշանակություն ունի բոլոր կուլտուրաների նորմալ աճի համար։ Դրանով կուղղվի այն միակողմանի պարարտացումը, որը տեղի է ունենում մեզանում՝ հանքային պարարտանյութերի կիրառման հետևանքով։ Պարարտանյութերի օգտագործումը ինքնանպատակ չէ, ուստի անհրաժեշտ է գործն այնպես կազմակերպել, որպեսզի հողը մտցրած յուրաքանչյուր կիլոգրամ պարարտանյութ մաքսիմալ կերպով օգտագործվի բույսերի կողմից և փոխհատուցվի բարձր բերքով։

Անհրաժեշտ է հիշատակել, որ բացի օրգանական և հանքային պարարտանյութերից, հողի բերրիությունը բարձրացնելու համար մենք ունենք սիդերիտների, այսինքն կանաչ պարարտացման ռեզերվներ, սակայն դրանք մեզ մոտ գրեթե չեն օգտագործվում։ Հողի բերրիության բարձրացման այս ձևը ծանոթ է կոլտնտեսականներին, մնում է միայն օգտագործել այն։

Պարարտացումը ճիշտ կազմակերպելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել հողերը և բոլոր կոլտնտեսությունների ու սովետական տնտեսությունների համար առանձին-առանձին կազմել հողատեսքերի քարտեզ։ Այս գործում կարևոր անելիքներ ունեն ռեսպուբլիկայի գիտահետազոտական ինստիտուտները և առաջին հերթին օրերս կազմակերպված հողագիտության և ագրոքիմիայի գիտահետազոտական ինստիտուտը։

Հողագործության կուլտուրայի բարձրացումը հատկապես պետք է ընթանա այն ուղղությամբ, որպեսզի հաջող պայքար կազմակերպվի հողերի աղտոտվածությունը վերացնելու։ Բոլորովին գաղտնիք չէ, որ հողագործության կուլտուրայի ցածր մակարդակի հետևանքով մեր դաշտերը խիստ վարակված են մոլախոտերով, որոնք մեծ վնաս են հասցնում մշակվող բոլոր կուլտուրաների բերքատվությանը։ Ռեսպուբլիկայի շատ շրջաններում (Մարտունի, Սևան, Ախտա, Իջևան, Ալավերդի, Ղուկասյան և այլն) մոլախոտերը դարձել են հողագործության չարիքը։ Այնպիսի մոլախոտեր, ինչպիսիք են պոչուկը, բողկուկը և զանազան փշամոլախոտեր և այլն, յուրաքանչյուր տարի հսկայական քանակությամբ բերք են խլում և աղտոտում հողը։ Իսկ մի շարք պարազիտ բույսեր ուժեղ կերպով տարածվել են և լուրջ չարիք են հանդիսանում։ Այսպես, օրինակ՝ Արարատյան դաշտի շրջաններում գայլուկը (կուսկուտան) այն աստիճան ուժեղ է տարածվել, որ ներկայումս նրա դեմ պայքարելու համար շատ մեծ ջանքեր են պահանջվում։

Այս ամենը արդյունք է այն բանի, որ ոչ միայն չեն պահպանվում հողի



մշակության, պարարտացման համար գոմաղբի պատրաստման և օգտագործման կանոնները, ագրոտեխնիկայի պահանջները, այլև մատերի արանքով են նայում մոլախոտերի ու պարազիտ բույսերի դեմ տարվող քիմիական ու մեխանիկական պայքարի գործի կազմակերպմանը։ Գոյություն ունեն մի շարք քիմիական ազդող նյութեր, որոնց գործադրումով գյուղատնտեսության ամենակարևոր ճյուղերից մեկը՝ հացահատիկային տնտեսությունը կստանա լուրջ օժանդակություն։

Մոլախոտերի դեմ հաջող պայքարի գործում լուրջ նշանակություն ունի ցելերը մաքուր վիճակում պահելը, որի վրա, դժբախտաբար, մեզանում շատ քիչ է ուշադրություն դարձվում։ Այդ պատճառով էլ կատարված ցելերում փոխանակ սննդանյութեր կուտակելու հաջորդ տարվա բերքի տակ մշակվող կուլտուրայի համար, ցելադաշտերում մոլախոտերը աճում են այն աստիճանի, որ ծախսում են սննդանյութերը և ցելադաշտերում կատարված ցանքերից անհրաժեշտ արդյունք չի ստացվում։ Ամենուրեք պետք է հասնել այն բանին, որ ցելերը պահվեն մաքուր վիճակում և հողում կուտակվի որքան կարելի է շատ սննդանյութեր ու խոնավություն։ Միայն այս ձևով կլուծվի ցելադաշտի առջև դրված ագրոտեխնիկական խնդիրը։

Ժամանակն է, որ մեր բոլոր դաշտերը մաքրվեն մոլախոտերից, թփերից, և քարերից, հնարավորության չափ հարթեցվեն, որպեսզի բարենպաստ պայմաններ ստեղծվեն դաշտային բոլոր աշխատանքների մեքենայացման համար, որը վերջին հաշվով կբարձրացնի բերքատվությունը։

Հողագործության կուլտուրան բարձրացնելու, ցանքաշրջանառություն մտցնելու և հողի բերրիությունը բարձրացնելու հարցերը անխզելիորեն կապված են խոտացանության հետ։ Վերջինս մեր ռեսպուբլիկայի համար ունի վճռական նշանակություն։ Առաջին անգամ չի դրվում խոտացանության հարցը։ Վերջին տարիներին շատ շրջաններում (Բասարգեչար, Կիրովական, Աշտարակ, Կոտայք, Թալին և այլն) բազմամյա խոտերի տարածությունները աճելու փոխարեն պակասել են։ Այս բացատրվում է մեծ մասամբ սերմի պակասով։ Ցանովի խոտերի ցանքատարածությունները մեր ռեսպուբլիկայում պետք է հասցվեն ավելի քան 160 հազար հեկտարի, որը հնարավորություն կտա բարձրացնելու հողագործության կուլտուրան և ամրապնդելու կերի բազան։ Այդ նպատակին հասնելու համար տարեկան պետք է ստեղծվի 65—70 հազար ցենտներ ցանովի խոտերի սերմֆոնդ, որը հնարավորություն կտա յուրաքանչյուր տարի ցանել 45—50 հազար հեկտար խոտ։ Դրա համար պահանջվում է յուրաքանչյուր տարի առանձնացնել ավելի քան 13 հազար հեկտար սերմադաշտ։ Ուստի յուրաքանչյուր կոլտնտեսություն, յուրաքանչյուր սովետական տնտեսություն պետք է տարեկան այնքան սերմ արտադրի, որը ոչ միայն բավարարի իր սեփական պահանջը, այլև սերմի ապրանքային ավելցուկ ունենա։

Խոտացանության մեջ լայնորեն պետք է օգտագործել բազմամյա և միամյա խոտերը և առաջին հերթին այն խոտաբույսերը, որոնք ավելի շատ կանաչ զանգված են ապահովում տվյալ շրջանում կամ տվյալ տնտեսությունում, պահպանելով խոտի բարձր որակը։ Վատ չի լինի, եթե մեր որոշ նախալեռնային և լեռնային շրջաններում և հատկապես այդ շրջանների ջրովի հողերում կորնգանի փոխարեն կամ նրանից բացի նաև առվույտ ցանվի։ Իսկ Արարատյան հարթավայրի շրջաններում, որտեղ առվույտը կարող է ամենա-

մաքսիմալ բերքը ապահովել՝ հեկտարից 130—150 ցենտներ, հնարավորին չափ պետք է ընդարձակել նրա ցանքատարածությունները, մանավանդ որ այստեղ նա բամբակենու ամենալավագույն նախորդն է հանդիսանում։

Այսպիսով խոտացանությունը հողագործության կուլտուրան բարձրացնելու կարևորագույն միջոցներից մեկն է։ Միաժամանակ ցանովի խոտերը անասնաբուծության համար արժեքավոր կերի կուտակման, հողի ստրուկտուրայի և բերրիության բարելավման կարևորագույն միջոց են։

Մեր ռեսպուբլիկայում խոտացանությունը պետք է ընդարձակել նաև էրոզիայի ենթարկված հողատարածություններում։ Այս ճանապարհով երկու հարց կլուծվի։ Նախ՝ էրոզիայի ենթարկված հողերն աստիճանաբար կվերականգնվեն և կմտցվեն մշակության մեջ գտնվող հողային ընդհանուր ֆոնդը, և երկրորդ, անասնաբուծությունը լրացուցիչ կեր կստանա մեծ տարածություններից։ Այդպիսի հողերի տարածությունը մեզ մոտ հասնում է 85 հազար հեկտարի և կազմում է վարելահողերի 15—16 տոկոսը։

Հողագործության կուլտուրայի և բերքատվության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի ճիշտ կազմակերպված սերմնաբուծությունը։ Առանց լավ, բարձրորակ սորտային սերմերի չի կարելի բարձր բերք ստանալ։ Այդ պատճառով էլ անհրաժեշտ է հատուկ ուշադրություն դարձնել բոլոր կուլտուրաների սերմնաբուծությանը։ Սերմնաբուծական տնտեսություններում, պետական սորտափորձարկման դաշտերում, ինչպես նաև բոլոր կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում ամենօրյա ուշադրության պետք է արժանանան սերմնաբուծության հարցերը, պետք է փորձարկվեն բարձր բերքատու սորտեր և դրանք արագորեն ներդրվեն արտադրության մեջ։ Անհրաժեշտ է իսկական պայքար մղել շրջանացված տեղական և սելեկցիոն սորտերի մաքրության համար։

Մեր շրջանային սերմնաբուծական տնտեսությունները և էլիտային տնտեսությունները դեռ չեն դարձել հողագործության բարձր կուլտուրայի տարածման կենտրոններ։ Քիչ չեն փաստերը, երբ հաճախ շրջանային սերմնաբուծական տնտեսություններում զգալիորեն ավելի ցածր բերք է ստացվում, քան հարևան կոլտնտեսություններում։ Այս ամենի պատճառով ներկայումս հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների ավելի քան 20—25 տոկոսը ցանվում է ոչ սորտային սերմերով։ Նույնանման դրություն գոյություն ունի մնացած կուլտուրաների և հատկապես բանջարանոցային կուլտուրաների և կարտոֆիլի գծով։ Դժբախտաբար մեզ մոտ անբավարար է նաև սերմերի ստուգման գործը, որի հետևանքով շատ կոլտնտեսություններում ցանքը կատարում են նույնիսկ աղտոտված և ոչ կոնդիցիոն սերմերով, իսկ սերմերի ստուգող լաբորատորիաներն անտեսում են նման անթույլատրելի փաստերը։

Գյուղատնտեսության կուլտուրայի բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի կուլտուրական բույսերի վնասատուների և հիվանդությունների դեմ, ինչպես նաև անասունների հիվանդությունների դեմ տարվող պայքարի կազմակերպումը։ Հանրահայտ է, որ դաշտավարական կուլտուրաները հիվանդություններից և վնասատուներից հաճախ տուժում են։ Այսպես, վերջին 7—8 տարիներին բամբակենու ցեցի պատճառած վնասի հետևանքով յուրաքանչյուր տարի կորցնում ենք բամբակի բերքի 25—30 տոկոսը, առանձին կոլտնտեսություններում այդ վնասը հասնում է 45—50 տոկոսի։ Խաղողի վազի



մի շարք վնասատուներ և հիվանդություններ վնասում են բերքի 15—25 տոկոսը, իսկ հաճախ ավելի շատ։ Ռեսպուբլիկայի հյուսիսային մի շարք շրջաններում (Նոյեմբերյան, Իջևան, Շամշադին և այլն) պտղատու ծառերի համար մեծ չարիք է հանդիսանում թրթուրը, որը առանձին դեպքերում բերքը վնասում է 70—80 տոկոսով։ Դաշտային կուլտուրաներին, խաղողի այգիներին և առվույտի ցանքերին քիչ վնաս չի տալիս գայլուկը։ Անասնաբուծությանը զգալի վնասներ են պատճառում զանազան հիվանդությունները։

Հիվանդությունների և վնասատուների կողմից գյուղատնտեսությանը պատճառող վնասը կարելի է և պետք է հասցնել մինիմումի։ Դրա համար կան բոլոր պայմանները՝ անհրաժեշտ քանակությամբ բուժանյութեր, բուժիչ մեքենաներ և որակյալ կադրեր։ Մնում է միայն գործն այնպես կազմակերպել, որպեսզի երևացող վնասատուներն ու հիվանդությունները ոչնչացվեն իրենց օջախներում։

Խոշոր նշանակություն ունի նաև պրոֆիլակտիկան, նախականխումը, որը մեզ մոտ վատ է կազմակերպվում ինչպես դաշտավարության, այնպես էլ անասնաբուծության ասպարեզում։ Քիչ չեն դեպքերը, երբ հիվանդությունների և վնասատուների դեմ պայքարը կազմակերպվում է միայն այն ժամանակ, երբ նրանք արդեն համատարած բնույթ են ստանում։ Անհրաժեշտ է հիշատակել, որ այս գծով գոյություն ունեցող պետական ցանցը խիստ անբավարար է աշխատում, այդ ցանցում աշխատողները սիրում են այս կամ այն վնասատուի և հիվանդությունների առաջացումը բացատրել բնակլիմայական այս կամ այն անհիմն պատճառներով։ Վնասատուի կամ հիվանդության տարածման պատճառը պետք է տեսնել միայն վատ աշխատանքի մեջ։ Միայն ճիշտ և ժամանակին ձեռնարկված միջոցառումների շնորհիվ հնարավոր է պայքարել վնասատուների և հիվանդությունների դեմ և թույլ չտալ, որ նրանք տարածվեն։

Տարիների փորձը ցույց է տալիս, որ մեր դաշտերում միշտ պակաս է լինում բույսերի քանակը։ Այսպես, բույսերի քանակը մեկ հեկտարի վրա բամբակի դաշտերում պակաս է լինում 22—25 տոկոս, ծխախոտի պլանտացիաներում՝ 18—20 տոկոս, շաքարի ճակնդեղի դաշտերում՝ 15—18 տոկոս, բանջարեղենի ցանքերում՝ 20—23 տոկոս, կարտոֆիլի ցանքերում՝ 15 տոկոս և այլն։ Ամենուրեք բերքահավաքի նախօրյակին խիստ պակաս է լինում հացահատիկի ցանքսերի խտությունը մեկ քառակուսի մետր տարածության վրա։ Դրությունը բարվոք չէ նաև բազմամյա տնկիների՝ խաղողի և պտղատու այգիներում։ Ըստ առ մեկը հունվարի 1959 թվականի հաշվառման տվյալների խաղողի այգիներում վազերի քանակը նորմայի հանդեպ պակաս է 15—16 տոկոս, իսկ պտղատու ծառերի քանակը՝ 18 տոկոս։

Սրա պատճառն այն է, որ մեզ մոտ անհրաժեշտ աշխատանք չի տարվում ցանքին կամ տնկումներին նախապատրաստվելու՝ դաշտերը հարթեցնելու, քարերից ազատելու, վարը միահավասար կատարելու ուղղությամբ։ Ցանքի ժամանակ սերմերը կամ տնկումների արմատակալները չեն ցանվում կամ տեղադրվում հավասար խորության վրա, վատ են պաշտպանվում միջբնային և միջշարքային հեռավորությունները, անհավասար է կատարվում ոռոգումը և այլն։ Այս բոլորի հետևանքն այն է լինում, որ բույսերի աճեցողության համար նորմալ պայմաններ չեն ստեղծվում, որն իր հերթին բացասաբար է անդրադառնում բույսերի խտության վրա՝ մեկ միավոր հողատա-

բածությունում։ Եթե մենք մեկ հեկտարի կամ մեկ քառակուսի մետրի վրա եղած բույսերի քանակը ավելացնենք և այն հասցնենք ագրոկանոններով պահանջվող նորմաներին, ապա միայն այդ ճանապարհով հնարավոր է ոչ պակաս 15—20 տոկոսով բարձրացնել ներկայումս ստացվող բերքի քանակը։

Նույնպիսի դրություն գոյություն ունի նաև անասնաբուծության գծով։ 100 մայրից ստացվում են ավելի քիչ մատղաշներ քան կարելի է ստանալ։ Լավագույն դեպքում 100 կովից ստացվում է 77—78 հորթ, 100 մայր ոչխարից՝ 74—75 գառ և 100 մայր խոզից՝ 550—600 խոճկոր։ Սակայն եթե 100 կովից ապահովվի թեկուզ 90—92 հորթ, 100 մայր ոչխարից՝ 93—95 գառ և 100 մայր խոզից՝ 1300—1400 խոճկոր, միայն այս ճանապարհով հնարավոր է տարեկան առնվազն 20—22 հազարով ավելացնել խոշոր եղջերավոր անասունների, 100 հազարով ոչխարների և ավելի քան 50 հազարով խոճկորների գլխաքանակը, նույնիսկ մայրական կազմի ներկայումս եղած գլխաքանակի դեպքում։

Գյուղատնտեսական-գիտահետազոտական ինստիտուտների առաջ հրատապ հարց է դրված՝ գործնական օժանդակություն կազմակերպել կոլտնտեսություններին և սովետական տնտեսություններին՝ բարձրացնելու հողագործության և անասնաբուծության կուլտուրան, ներդնել և արմատավորել արտադրության մեջ նորը, առաջավորը։

Անհրաժեշտ է նշել, որ մեզ մոտ շատ գիտահետազոտական հիմնարկություններ և գիտնականներ թույլ են զբաղվում գիտության և առաջավոր փորձի նվաճումները պրոպագանդելու և արմատավորելու գործով։ Նրանք հաճախ կարծում են, թե իրենց գործը կայանում է միայն այս կամ այն մեթոդները կամ հարցերը մշակելու, բույսերի և անասունների նոր տեսակներ ստանալու մեջ, իսկ դրանք արտադրության մեջ արմատավորելը ուրիշների գործն է։ Դա հիմնովին սխալ է։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսական գիտահետազոտական հիմնարկությունները պետք է արմատապես վերակառուցեն իրենց աշխատանքները, մոտ կանգնեն արտադրությանը և պատշաճ ձևով ձեռնամուխ լինեն հողագործության և անասնաբուծության կարևորագույն հարցերի լուծմանը և դրանով իսկ նպաստեն հողագործության և անասնաբուծության կուլտուրայի բարձրացմանը։

Գյուղատնտեսության արտադրության կուլտուրայի բարձրացումը տնտեսական և պետական կարևոր նշանակություն ունեցող գործ է։ Նրա հաջողությունը ապահովելու համար պահանջվում է, որ պարտիական, սովետական և գյուղատնտեսական օրգանները մշտապես իրենց ուշադրության կենտրոնում պահեն այդ հարցը և այդ նպատակի համար մոբիլիզացնեն ու գործի դնեն բոլոր ջանքերն ու ռեզերվները։

---



## ԱԼԱՎԵՐԴԻՆ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո ինչպես ամբողջ ռեսպուբլիկայում, այնպես էլ Ալավերդում լայնորեն ծավալվել է շինարարական աշխատանքը, որի շնորհիվ ամբողջովին փոխվել է շրջանի թե արդյունաբերության, թե գյուղատնտեսության դեմքը։ Հայտնաբերվել ու շահագործման են հանձնվել նոր հանքավայրեր, կառուցվել ու շարք են մտել բազմաթիվ արտադրական ձեռնարկություններ, որոնք իրենց հզորությամբ ու արտադրական կարողությամբ դասվում են Սովետական Միության գունավոր մետաղամշակության առաջավոր գործարանների ու հանքերի շարքին։ Բավական է նշել, որ այժմ Ալավերդում տարեկան մի քանի անգամ ավելի շատ սև պղինձ է ձուլվում, քան ձուլվել է 1913 թվականին։

Ալավերդու շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները շոշափելի հաջողություններով եզրափակեցին 1958 թվականը։ Արդյունաբերական ձեռնարկությունները, ամբողջությամբ վերցրած, իրենց համախառն արտադրանքի պլանը կատարեցին ժամկետից շուտ և մինչև տարվա վերջը պլանից ավելի թողարկեցին 10 միլիոն ռուբլու արտադրանք։

Արմատապես փոխվել է նաև մեր գյուղի պատկերը։ Կոլտնտեսային կարգի հաղթանակի հետևանքով հեռավոր հուշ է դարձել հանճարեղ Հ. Թումանյանի դառն հառաչանքը։

«Աղքատ մարդիկ ենք, մեր ձորերի մեջ
Անց ենք կացնում մեր սև-սև օրերը.
Թե որքան ենք զուրկ, որքան ենք մենք խեղճ,
Էդ հաստատ գիտե ինքը—միայն տերը։
Բայց դու էլ խելոք մի մարդ ես գիտուն,
Քո բարի աչքով տեսնում ես էլի,
Տկլոր ու սոված էսպես տարին բոլ
Քարի-հողի հետ կռիվ ենք տալիս։
Թե որ ձեռներս էլ մի բան է ընկնում,
Չենք կարողանում բերան հասցընենք…
Էսպես տանջվելով քրտինք ենք անում,
Էլ էն սևերեսն, էլ էն սովածն ենք…

Այս ամենը պատմության գիրկն են անցել։ Լոռվա գյուղը Հայաստանի և ՍՍՌՄ բոլոր գյուղերի հետ վաղուց ի վեր ընթանում է երջանիկ կյանքի հունով։ Լոռվա կոլտնտեսականների նվաճումները նշանակալի են, նրա գալիքը ավելի ոգևորիչ։ Վերջին տարիներում Ալավերդու շրջանի կոլտնտեսությունները բռնել են լուրջ վերելքի ուղին։ Սակայն այս բնագավառում մեր անելիքները շատ են ու պատասխանատու։

Ինչպես մեր մեծ Հայրենիքի, այնպես էլ Ալավերդու շրջանի աշխատա-

վորների առջև ժողովրդական տնտեսության զարգացման լայն հեռանկարներ են բացվում 1959—1965 թվականներին։

Ալավերդին նշանավոր է իր հանքային հարստություններով։ Շրջանում հետազոտված ու հայտաբերված են պղնձի, անագի, ցինկի, ինչպես նաև բազմաթիվ թանկարժեք ու հազվագյուտ մետաղների պաշարներ։ Յոթնամյա պլանով նախատեսվում է ավելի լայն մասշտաբներով ծավալել հետազոտական և հետախուզական աշխատանքները, նպատակ ունենալով հայտաբերել նորանոր և ավելի հարուստ հանքավայրեր, որոնք հնարավորություն կտան գունավոր մետաղների արտադրությունը մեծ չափով ավելացնելու։ Յոթնամյակում միայն գունավոր մետաղամշակման և քիմիական արդյունաբերության, այսինքն՝ Պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցման և ընդլայնման համար կատարվելու են մեծ մասշտաբների հասնող կապիտալ ներդրումներ։ 1959—1965 թվականների ընթացքում Պղնձաքիմիական կոմբինատի վերակառուցումից հետո հանքանյութի ձուլումը կատարվելու է ոչ թե մազութով ու կոքսով, այլ էլեկտրական էներգիայով։ Մինչև 1960 թվականը այժմյան արտացոլիչ վառարանի հետ միասին կկառուցվի էլեկտրական էներգիայով աշխատող վառարանը։ Այնուհետև կկառուցվի երկրորդ էլեկտրավառարանը և կտեղադրվի մեկ թորանոթ ևս։

Զտված պղնձի թողարկումը կավելանա 5 անգամ։ Այդ նպատակով կկառուցվեն էլեկտրոլիզի երկու նոր կորպուսներ։ Դրանցից մեկի շինարարությունն սկսված է և կավարտվի 1959 թվականին, մյուսինը կսկսվի 1961 թվականին։ Ծծմբաթթվի թողարկումը կավելանա ավելի քան 7 անգամ։ Այստեղ այժմյան աշտարակային եղանակի փոխարեն ծծմբաթթուն կարտադրվի կոնտակտային եղանակով։ Դրա համար կկառուցվի նաև հումքը եռացող շերտում այրելու վառարան։ Կոնտրակտային սիստեմի կառուցումը կսկսվի 1959 թվականին և կավարտվի 1961 թվականին։

1965 թվականին մեկ շնչին հասնող ծծմբաթթվի արտադրության մակարդակով մեր ռեսպուբլիկան կգերազանցի ԱՄՆ-ին։

Սուպերֆոսֆատի արտադրությունն ավելի ընդարձակելու համար կառուցվելու է նոր գործարան, որտեղ կօգտագործվի նաև արտադրության ժամանակ առաջացող ֆտոր գազը՝ ֆտորային ալյումին և կրիոլիտ պատրաստելու համար։ Հիմնովին վերակառուցվելու է պղնձարջասպի արտադրության ցեխը, որտեղ սպիտակ մատի փոխարեն որպես հումք օգտագործվելու են զտած պղնձի գրանուլները։ Կոմբինատում կկառուցվի նաև հատուկ ցեխ հազվագյուտ և ցրվող մետաղները հավաքելու համար։

Պղնձաքիմիական կոմբինատի համախառն արտադրանքը կավելանա 4,4 անգամ։ Այդ թվում՝ սև պղնձի արտադրությունն ավելանալու է մոտ 4 անգամ, ռաֆինացված պղնձինը՝ 5,5 անգամ, ծծմբաթթվինը՝ 6,7 անգամ։ Յոթնամյակում կապիտալ մեծ ներդրումներ են կատարվելու Ախթալայի հարստացնող ֆաբրիկայի կառուցման համար։

Այժմ տեղի պարտիական կազմակերպությունը, ամբողջ կոլեկտիվը ստեղծագործական լայն աշխատանք են ծավալել, որպեսզի ժամանակին, այսինքն՝ 1962 թվականին շահագործման հանձնվի այդ ֆաբրիկան։ Այն հնարավորություն կտա մեծ չափով ավելացնելու պղնձի, կապարի, ցինկի, կոնցենտրատների թողարկումը։

Յոթնամյակում վերակառուցվելու և ընդարձակվելու է Թումանյան ավա-



նի հրակայուն աղյուսի գործարանը, որը հնարավորություն կտա ընդլայնելու ո՛չ միայն հրակայուն աղյուսի, այլև հրակայուն նոր շինվածքների տեսակների արտադրությունը։ Յոթնամյակի ընթացքում այս գործարանում ավարտվելու է էլեկտրակերամիկական ցեխի կառուցումը, որը տարեկան կթողարկի 28 միլիոն ռուբլու արտադրանք։

Պղնձաքիմիական արդյունաբերության արագ զարգացման հետ զուգընթաց շրջանում զգալի տեղ է հատկացված նաև թեթև ու սննդի արդյունաբերության ընդարձակմանը։ Մինչև 1960 թվականը Ալավերդում ավարտվելու և շահագործման է հանձնվելու 150 տոննա տարողությամբ մսի սառցարանը։ Հրուշակեղենի արտադրությունը աճելու է 1,7 անգամ, գարեջրինը՝ 1,5 անգամ։

Ծավալուն աշխատանք է սկսվելու տեղական արդյունաբերության զարգացման, հատկապես շինանյութերի արտադրության ընդարձակման ու նրա աշխատատար պրոցեսների մեքենայացման, փայտամշակման արտադրանքի նոր տեսակների թողարկման ուղղությամբ։ Հզորանալու է Թումանյանի կահույքի ֆաբրիկայի կարողությունը, ընդարձակվելու են գորգագործությունը և լայն սպառման առարկաների արտադրությունը։

Ինչպես հայտնի է, Ալավերդու երկաթուղու կայարանը ներկայիս իր կարողությամբ չի բավարարում շրջանի բեռների բարձման ու թափման աշխատանքներին։ Վագոնների շրջանառությունը պետք է ավելացնել 4 անգամ. արդեն երկրորդ տարին է, ինչ սկսված է նոր կայարանի և գծային տնտեսության շինարարությունը, որտեղ բեռնաբարձման և բեռնաթափման աշխատանքները պետք է լրիվ մեքենայացվեն։ Նոր կայարանը պետք է ունենա բեռների թափման մեծ հրապարակ, պահեստներ, երթևեկողների համար հանգստի սրահներ և այլ հարմարանքներ։ Այդ նպատակի համար նախատեսված են բավականին կապիտալ ներդրումներ։

Յոթնամյակի ընթացքում խոշոր աշխատանք է ծավալվելու ճանապարհաշինարարության գծով։ 1959 թվականին կավարտվի Ալավերդի—Շնող տանող ճանապարհի լայնացումը և ասֆալտապատումը։

1965 թվականին լրիվ չափով կավարտվի ու շահագործման կհանձնվի Կիրովական—Ալավերդի երկաթուղուն զուգընթաց խճուղային ճանապարհի շինարարությունը և հնարավորություն կստեղծվի եռակի չափով կրճատելու Ալավերդի-Կիրովական քաղաքների ավտոերթևեկության տարածությունը։ Մինչև 1960 թվականը Ուզունլարի ենթաշրջանի կոլտնտեսությունների միջոցներով կավարտվի Ուզունլար—Ղաչաղան տանող ճանապարհների ասֆալտապատումը։

Շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում կարևորագույն խնդիրներ են դրված կոլտնտեսային գյուղատնտեսության առջև, որոնց հաջող լուծման շնորհիվ շեշտակիորեն կաճի թե՛ դաշտավարություն, թե՛ անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Յոթնամյակի ընթացքում փոխվելու է շրջանի դաշտավարության պրոֆիլը. հիմնականում մշակվելու են կարտոֆիլ, տեխնիկական և բանջարա-բոստանային կուլտուրաներ, ընդարձակվելու են խաղողի և պտղատու այգիների տարածությունները, որոնք լայն հեռանկարներ ունեն Ալավերդու շրջանում։ Այսպես, 1959—1965 թվականների ընթացքում տնկվելու են 800 հեկտար պտղատու և 700 հեկտար խաղողի այգիներ։

Մեծ աշխատանք է տարվելու անասունների ցեղի բարելավման, նախիրի մեջ կովերի գլխաքանակը ավելացնելու և կերի կայուն բազա ստեղծելու ուղղությամբ այն հաշվով, որպեսզի յուրաքանչյուր 100 հեկտար օգտակար հողային տարածությունների հաշվով ունենանք 22 կով։ Մանր եղջերավոր անասունների գլխաքանակը 1958 թվականի 44,000 գլխից 1965 թվականին կհասնի 61 հազարի։ Ոչխարների ցեղի բարելավման միջոցով զգալի չափով կավելանա բրդի արտադրությունը։

Վերջին տարիների փորձը ցույց տվեց, որ Ալավերդու շրջանում կերի կայուն բազա ստեղծելու գործում վճռական դեր է խաղում եգիպտացորենը, դրա համար էլ շրջանի կոլտնտեսությունները տարեցտարի ընդարձակում են այդ արժեքավոր կուլտուրայի ցանքատարածությունները և ավելի մեծ ուշադրություն հատկացնում դրա մշակությանը, որի շնորհիվ էլ առանձին կոլտնտեսություններ յուրաքանչյուր հեկտարից միջինը ստանում են 118 ցենտներ կողր և 400 ցենտներ ցողուն։ Այդ նկատառումով էլ յոթնամյակում լայն տեղ է հատկացվում եգիպտացորենի ցանքատարածությունների ընդարձակմանը, որպեսզի 1958 թվականի 800 հեկտարի դիմաց 1965 թվականին դրանք հասցվեն 1600—2000 հեկտարի։ Արդեն գործնական քայլեր են արվում՝ յոթնամյակում զգալիորեն ավելացնելու հյութալի կերը։

1959—1965 թվականներին զգալի աշխատանքներ են կատարվելու ոռոգելի տարածությունների ընդարձակման և ջրաշինարարության բնագավառում, որը մեծ չափով կնպաստի դաշտավարության ու անասնապահության զարգացմանը։ Ջրհան կայաններ են կառուցվելու Ճոճկան, Այրում, Հաղպատ գյուղերի կոլտնտեսություններում, իսկ Թումանյանում ավարտվելու է Բարաջան գետի ջրանցքի շինարարությունը։

Այդ տարիներին կոլտնտեսությունների կապիտալ միջոցների հաշվին կկառուցվեն մի շարք արտադրական շենքեր, գոմեր, պահեստներ, վերանորոգման արհեստանոցներ, կրի և կղմինդրի արտադրական օբյեկտներ։

Գյուղատնտեսության բնագավառում նախատեսված այս միջոցառումները հնարավորություն կտան 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, կաթի արտադրությունն ավելացնել 2,2 անգամ, մսի արտադրությունը՝ 3,7 անգամ, այդ թվում խոզի մսինը՝ 9,4 անգամ, բրդինը՝ 2 անգամ, ձվինը՝ 7,8 անգամ, ծխախոտինը՝ 1,4 անգամ։

Արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման բարձր տեմպերի հետ միասին մեծ ուշադրություն է հատկացվելու շրջանի բանվորների ու ծառայողների, ինչպես նաև կոլտնտեսային գյուղացիության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Այդ բնագավառում կատարվող աշխատանքներից ամենաաչքի ընկնողը ֆունիկուլյորի կառուցումն է, որը ձգվելու է Ալավերդուց մինչև Սանահին հարթությունը. այն հնարավորություն կտա ընդարձակելու քաղաքը, որի հիմքը արդեն դրվել է այստեղ։ Այդ նոր քաղաքը ունի իսկական սոցիալիստական տիպի քաղաքի հատակագիծ։ Յոթնամյակի ընթացքում նախատեսվում է պետության միջոցներով, այստեղ կառուցել շուրջ 18.000 քառակուսի մետր բնակելի տարածություն, դպրոցներ, մանկապարտեզներ, հիվանդանոց, պոլիկլինիկա, բաղնիք և այլն։ 1959 թվականին այստեղ կավարտվի ջրմուղի շինարարությունը,ապագա քաղաքը կունենա իր սեփական ջուրը։ Մեծ տեղ է տրվելու նաև անհատական բնակարանային շինարարությանը։



Արտադրական, հասարակական, կուլտուրական ձեռնարկությունների և բնակարանային շինարարությունը լայնորեն ընդարձակվելու է գյուղերում։

Պետության և կոլտնտեսությունների միջոցներով նախատեսվում է յոթնամյակի ընթացքում շրջանում կառուցել 10 բուժհիմնարկ, 4 դպրոց, 12 ակումբ-գրադարան։ Նախատեսվում է յոթնամյակում լրիվին ռադիոֆիկացման ենթարկել շրջանի բոլոր գյուղերը և ավանները։

Ալավերդու շրջանի բանվորներն ու ծառայողները, ողջ կոլտնտեսային գյուղացիությունը ջերմորեն ողջունելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները՝ համառորեն կպայքարեն դրանց կենսագործման համար։

Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆ
ՀԿՊ Ալավերդու շրջկոմի քարտուղար

## ՄԵՐ ԱՌԱՋԸՆԹԱՑԸ

Արարատյան դաշտի Ավշար գյուղը անցյալում խղճուկ, խարխուլ տնակներով, փոշոտ, ցեխոտ փողոցներով մի շեն էր։ Կոլտնտեսական կարգերի շնորհիվ այսօր հնից դրեթե ոչ մի հետք չի մնացել այդ գյուղում։

Տարիներով ջրազուրկ Վեդիի շրջանի արգավանդ հողերը, ինչպես և Ավշարի հողերը Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության հոգատարության շնորհիվ առաջին հնգամյակի ընթացքում ստացան ոռոգման ջուր, և այդ հողերում սկսեցին մշակել բամբակ, տնկեցին խաղողի և պտղատու այգիներ։

Գյուղը ստացավ էլեկտրական լուսավորություն և խմելու մաքուր ջուր։

Ընթանալով ՍՄԿՊ նշած ուղիով, ավշարցիները վերջին տարիներում հասան լուրջ նվաճումների։ 1954 թվականին 315 հեկտար տարածության ամեն մի հեկտարից նրանք միջին հաշվով ստացել են բամբակ՝ 16 ցենտներ, հացահատիկ՝ 12 ցենտներ, խաղող՝ 48 ցենտներ։ Կովերի միջին կաթնատվությունը հասավ 900 կգ-ի, դրամական եկամուտները՝ երկու միլիոն 447 հազար ռուբլու։ 1957 թվականին կոլտնտեսությունը նույն տարածության մեկ հեկտարից ստացավ՝ 20,3 ցենտներ բամբակ, 19 ցենտներ հացահատիկ, 47 ցենտներ խաղող, յուրաքանչյուր մեկ ֆուրաժային կովից՝ 1179 կգ. կաթ։

1958 թվականին կոլտնտեսությունն ավելի մեծ նվաճումներ ձեռք բերեց անասնաբուծության և գյուղատնտեսության մթերքների արտադրությունը բարձրացնելու գործում։ Կոլտնտեսությունը գերակատարեց բամբակի բերքատվության պլանը. յուրաքանչյուր հեկտարից հավաքեց և պետությանը հանձնեց ավելի քան 25 ցենտներ բամբակ, պլանով նախատեսված 21 ցենտների դիմաց. գերակատարվեցին մյուս կուլտուրաների բերքատվության, ինչպես նաև կաթնատվության, բրդատվության բարձրացման առաջադրանքները։ Պլանով նախատեսված 510 գլուխ խոշոր եղջերավոր անասունների փոխարեն կոլտնտեսությունն ունի 673 գլուխ, որից 200-ը կով. մանր եղջերավոր անասունների՝ նախատեսված 2620 գլխի փոխարեն՝ 3183 գլուխ, խոզեր՝ 150 գլուխ։ 100 մայր ոչխարից կոլտնտեսությունն ստացել է 98 գառ, իսկ հովիվ Աֆանդի Ուզոյանի և Յուսուպով Քարամի խնամած հոտի 100 ոչխարից՝ 102 գառ։ Կոլտնտեսության ընդհանուր դրամական եկամուտը հա-

սավ ավելի քան 5,7 միլիոն ռուբլու։ Վերջին տարիներին կոլտնտեսությունը կառուցել է 2 տիպային կովանոց՝ 300 գլուխ կովի համար, ուր գործում են ավտոմատ ջրախմոցներ և մեքենայացված է ներֆերմային տրանսպորտը։

Կոլտնտեսությունն այժմ կառուցում է ակումբի շենք՝ 1,5 միլիոն ռուբլու նախահաշվով, որի շինարարական աշխատանքներն արդեն ընթացքի մեջ են. կառուցվել և շահագործման է հանձնվել մեկ ծննդատուն՝ իր բոլոր հարմարություններով։ Բոլոր տեսակի շինարարությունների վրա ծախսվել է ավելի քան չորս միլիոն 600 հազար ռուբլի։

Կոլտնտեսությունն ունի իր սեփական տրակտորային պարկը, որտեղ կան 18 տրակտոր, 2 հացահատիկային կոմբայն, մեկ սիլոսի կոմբայն և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ։

Գյուղի պարտիականների մեծագույն մասը աշխատում է արտադրության մեջ, նրանք օրինակ են ծառայում շատերի համար։ Օրինակ, օղակավարուհի Վ. Գևորգյանը երիտասարդ կոմունիստ է։ Նրա օղակը մշակեց 21 հեկտար բամբակի պլանտացիա և 130 տոկոսով կատարեց բամբակի հումքի հանձնման պլանը։ Նախատեսված 22 ցենտների դիմաց նրա օղակը մեկ հեկտարից ստացավ 32 ցենտներ բամբակի հումք, ինքն անձամբ հավաքել է 6000 կգ. բամբակ։ Նման օրինակներ կարելի է շատ բերել։

Պարտիական բյուրոն բրիգադաներում և ֆերմաներում կազմել է երեք պարտիական խումբ, որոնք որոշակի աշխատանք են կատարում։ Կաթնապրանքային ֆերմայի պարտիական խումբը (կազմակերպիչ՝ անասնաբույժ Ս. Խաչատրյան) ժամանակին մոբիլիզացրեց ֆերմայի աշխատողներին և կարճ ժամանակամիջոցում դրական ցուցանիշների հասավ անասունների խնամքի, գլխաքանակի ավելացման և մթերատվության բարձրացման գործում։

Չնայած անցյալ տարվա կարկտահարությանը, որից տուժեց № 6 բրիգադայի այգիների մեծ մասը, բրիգադայի պարտիական խումբը որոշեց բարելավել այգիների վիճակը։ Խմբի անդամներ Ա. Շահբազյանը, Ս. Մարգարյանը, Հ. Պողոսյանը անձնական օրինակով ոտքի հանեցին կոլտնտեսականներին և այգիների լավ մշակման շնորհիվ աճեցվեց խաղողի առատ բերք։

ՍՄԿՊ XXI համագումարը պարտիական աշխատողներից պահանջել է մասսաների կոմունիստական դաստիարակությունը իրենց ուշադրության կենտրոնում դնել։ Այս ուղղությամբ մեզ մոտ որոշ գործ է կատարվում։ Գյուղում գործում են գյուղատնտեսության էկոնոմիկան և ՍՄԿՊ պատմությունն ուսումնասիրողների խմբակներ։ Կոլտնտեսականների համար սիստեմատիկորեն կազմակերպվում են զրույցներ ու դասախոսություններ։ 1958 թվականին կարդացվել է 18 դասախոսություն, որոնցից տասը կարդացել են ակումբին կից դասախոսական խմբի անդամները։

Պարտկազմակերպությանը կից գործում է ագիտկոլեկտիվ՝ բաղկացած 16 հոգուց, որտեղ ընդգրկված են գյուղատնտեսներ, անասնաբույժներ, զոոտեխնիկներ և ուսուցիչներ։ Ագիտատորների համար հաճախակի հրավիրվում են սեմինար պարապմունքներ, անցկացվում զրույցներ, որտեղ ագիտացիոն աշխատանքների վերաբերյալ տրվում է անհրաժեշտ հրահանգավորում։

Գյուղում լայնորեն ծավալվել է սոցիալիստական մրցությունը, որը տվել է դրական արդյունքներ։ Յուրաքանչյուր տասնօրյակում ամփոփվում են մրցության արդյունքները. առաջավոր բրիգադան կամ ֆերման արժանանում է միջբրիգադային կամ միջկթվորային փոխանցիկ կարմիր դրոշի, առանձին



դեպքերում՝ նաև դրամական խրախուսանքի։ Առաջավորների փորձի մասին գրվում է պատի թերթերում, իլյիչովկաներում և շրջանային թերթում։

Գյուղում կա ակումբ, երկու գրադարան՝ ավելի քան 6000 կտոր գրքով, գործում է կինո, գյուղը 100 տոկոսով ռադիոֆիկացված է։ Կոլտնտեսականների զգալի մասն ունի ռադիոընդունիչներ և հեռուստատեսներ։ Գյուղում դրված է 30 կետանոց հեռախոսային կոմուտատոր։ Ավելի քան 500 տնտեսությունից բաղկացած գյուղը ստանում է 510 օրինակ թերթ և ամսագիր։

Ամրապնդելով ձեռք բերված հաջողությունները, կոլտնտեսությունը պարտավորվել է յոթնամյակի ընթացքում բերքատվությունն ու անասնաբուծության մթերատվությունը ավելացնել 2-ից ավելի անգամ, ընդ որում, խաղողի բերքատվությունը՝ 3 անգամ, կամ հեկտարից 110 ցենտներ, մինչև 1960 թվականը տնկել 100 հեկտար նոր այգի, այգիների ընդհանուր տարածությունը հասցնելով 280 հեկտարի։ Բամբակի բերքատվությունը ամեն մի հեկտարից հասցնել 35 ցենտների, հացահատիկինը՝ 35 ցենտների, մեկ ֆուրաժային կովից ստանալ 2600 լիտր կաթ, ամեն մի կովի համար պատրաստել ավելի քան 10 տոննա եգիպտացորենի մաքուր սիլոս, ընդարձակել բազմամյա խոտաբույսերի ցանքատարածությունը. 1959 թվականի ընթացքում շահագործման հանձնել կառուցվող ակումբի նոր շենքը, իսկ յոթնամյակի ընթացքում կառուցել և շահագործման հանձնել միջնակարգ դպրոցի շենքը, մեկ տիպային մանկամսուր, մեկ բաղնիք, հիվանդանոց, տրակտորների համար ծածկ և այլն։ Մեկ տարի առաջ գյուղի համար նոր հատակագիծ կազմվեց, որի համապատասխան այժմ փողոցներն ուղղաձիգ ու լայն են, գյուղում կան գեղեցիկ ոճով կառուցված տներ։ Օրեցօր բարեկարգվում է գյուղը և բարձրանում կոլտնտեսականների կենսամակարդակը, ավելանում է բարձրագույն կրթություն ունեցող երիտասարդների թիվը։

Ավշարցիները պատվով կկատարեն ՍՄԿՊ XXI և ՀԿՊ XX համագումարների որոշումները, որը նրանց կբերի նոր, ավելի փայլուն հաղթանակներ։

Ա. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Ավշարի կոլտնտեսության պարտիական
կազմակերպության քարտուղար

## ՍՏԵՓԱՆԱՎԱՆԻ ԱՆԱՍՆԱԲՈՒՅԾՆԵՐԻ ՄԵՐՁԱԿԱ ԽՆԴԻՐԸ

Աշխատանքի հիմքում դնելով անասնաբուծության զարգացման վերաբերյալ պարտիայի ու կառավարության որոշումները, Ստեփանավանի շրջանի պարտիական կազմակերպությունը մի շարք միջոցառումներ գործադրեց այդ բնագավառի տևական ետ մնալը վերացնելու համար։

Շրջանում անասնաբուծական մթերքների արտադրության ավելացմանը խանգարում էր անասնապահական ֆերմաներում եղած կադրերի հոսունությունը։ Այդ վերացնելու նպատակով ֆերմաները ապահովվեցին բարեխիղճ կադրերով։ Անասնաբուծության բնագավառում աշխատանքի ուղարկվեցին 264 կոմունիստներ ու կոմերիտականներ։ 12 ֆերմայում ստեղծվեցին պարտիական խմբեր։ Այժմ անասնապահության ասպարեզում աշխատում են 71 մաս-

նագետ, որոնց զգալի մասը ունի բարձրագույն կրթություն և աշխատանքի հարուստ փորձ։

Անասնապահական կադրերի ամրացմանը նպաստեց վարձատրման և խրախուսանքի նոր կարգը։ Ֆերմաների ղեկավար աշխատողների համար վարձատրության չափանիշը ընդունվեց արտադրանքի քանակն ու որակը, նախկինում եղած կայուն դրույքի փոխարեն։ Իսկ մի շարք կոլտնտեսություններում (Ստեփանավան, Պուշկինո, Արմանիս, Գյուլագարակ) բացի մթերային լրացուցիչ վարձատրությունից, պլանային առաջադրանքը գերակատարելու դիմաց անասնապահներին տրվում է նաև դրամական պարգև։ Եթե նախորդ տարիներում գիրացվող անասունների խնամքի համար վարձատրության չափանիշը համարվում էր գլխաքանակը, ապա 1958 թվականին Գյառգյառի, Ուռուտի, Ստեփանավանի և մյուս կոլտնտեսություններում որոշվեց վարձատրել ըստ քաշ-աճի, հետևյալ նորմայով՝ 6 ամսականից մինչև մեկ տարեկան անասունների յուրաքանչյուր մեկ ցենտներ քաշ-աճի համար՝ 10 աշխօր, իսկ մեկից բարձր տարիք ունեցող անասունների մեկ ցենտներ քաշ-աճի համար՝ 14 աշխօր։ Զգալիորեն կանոնավորվեցին նաև հավելյալ վարձատրության և խրախուսանքի ձևերը, որով բարձրացավ աշխատողների նյութական շահագրգռվածությունը և անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Այսպես, եթե Հոբարձի գյուղի կոլտնտեսության կաթնապրանքային ֆերմայի վարիչը մինչ այդ տարեկան միջին հաշվով վաստակում էր 450—500 աշխօր և հավելյալ վարձատրություն չէր ստանում, ապա անցած տարի, երբ այդ միջոցառումները կիրառելու շնորհիվ կաթի արտադրությունը ավելացավ մոտ 30 տոկոսով, նա վաստակեց 515 աշխօր և որպես հավելյալ վարձատրություն ստացավ 50 կգ. պանիր, 30 կգ. յուղ։

Շրջանի կոլտնտեսությունների շատ անասնապահներ դարձել են իրենց գործի իսկական վարպետներ։ Այդպիսիններից են՝ Հ. Բաղդասարյանը (Վարդաբլուր), Կ. Կարապետյանը (Կաթնաղբյուր), Հ. Վիրաբյանը (Կուրթան) և ուրիշներ, որոնք 11 ամսում կատարել են կաթի արտադրության 1958 թվականի իրենց առաջադրանքները, յուրաքանչյուր կովից ստանալով 2600—2800 կգ. կաթ, պլանով նախատեսված 1900—2600 կգ.-ի դիմաց։

Առաջավոր անասնապահների փորձը մասսայականացնելու, սոցիալիստական մրցությամբ ստանձնված պարտավորությունների կատարման ընթացքը ամփոփելու և աշխատանքի թերությունները վերացնելու նպատակով հաճախակի հրավիրվում են անասնապահների շրջանային հավաքներ, արտադրական խորհրդակցություններ, շրջանային թերթում մեծ տեղ է տրվում առաջավոր անասնապահների ելույթներին։

Անասնաբուծական մթերքների արտադրության ավելացման վրա խիստ բացասաբար էր անդրադառնում մայր անասունների մեծ չափի հասնող (40—45 տոկոս) ստերջությունը։ Այդ հարցը քննվեց պարտիայի շրջանային կոմիտեում, շրջսովետի գործկոմում, կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում։ Այդ ուղղությամբ իրականացվեցին մի շարք կոնկրետ միջոցառումներ, որոնց շնորհիվ 1957—1958 թվականներին շրջանի կոլտնտեսություններում կովերի ստերջությունը, 1953 թվականի համեմատությամբ, իջավ 25—27 տոկոսով, ոչխարներինը՝ մոտ 30 տոկոսով։ Ուռուտի, Պուշկինոյի, Կուրթանի, Արմանիսի կոլտնտեսություններում կովերի ստերջությունը հասցվել է մինիմումի (6—8 տոկոս)։ Բարելավվել է նաև հղի և ծնված կովերի խնամքը։



Մինչև ծինը կովերին տրվում է լավորակ կեր, իսկ ծնից հետո՝ 15 օր կերաբաժնում ավելացվում է ալյուրի չափը և մինչև մեկ ամիս կովերին ջրում են գոլ ջրով։ Այս միջոցառումը նպաստեց ոչ միայն առողջ սերունդ ստանալուն, այլև զուգավորման գործը կանոնավորելուն։

Մի շարք կոլտնտեսություններում անհրաժեշտ ուշադրություն չէր հատկացվում անասունների արոտի կազմակերպմանը, հատկապես աշնան ամիսներին, որի պատճառով էլ ցածր էր անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Պարտիայի շրջանային կոմիտեն գյուղական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրեց արոտավայրերի բարելավման ու ճիշտ օգտագործման վրա։ Մի շարք կոլտնտեսություններում ցանովի խոտաբույսերի հնձված տարածությունները ջրվեցին և պահպանվեցին՝ աշնան ամիսներին անասունների արոտը կազմակերպելու համար։ Գյուղամերձ արոտավայրերում տարեկան միջին հաշվով 250—280 հեկտարի վրա կատարվեց մակերեսային բարելավում, որը զգալիորեն նպաստեց անասունների արոտի լավ կազմակերպմանը։ Այս միջոցառման շնորհիվ զգալիորեն բարձրացավ անասնաբուծության մթերատվությունը։

Անասնաբուծության զարգացման և մթերատվության ավելացման գործում վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը։ Անցած ժամանակամիջոցում շրջանի պարտիական ու սովետական կազմակերպությունները լայն աշխատանք են ծավալել՝ ավելացնելու հյութալի կերի պաշարները։ Վերջին տարիներում զգալիորեն ավելացել են սիլոսային կուլտուրաների, ցանովի խոտաբույսերի, կերի ճակնդեղի ցանքատարածությունները և դրանց բերքատվությունը։ Այսպես, եթե 1953 թվականին սիլոսային կուլտուրաների ցանքատարածությունները կազմում էին ընդամենը 224 հեկտար, իսկ եգիպտացորեն բոլորովին չէր մշակվում, ապա 1958 թվականին դրանք հասցվեցին 688 հեկտարի, որից եգիպտացորեն՝ 627 հեկտար։ 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին ավելի է արտադրվել 8650 ցենտներ կերի ճակնդեղ, 10230 ցենտներ կարտոֆիլ և մոտ 37 հազար ցենտներ սիլոս։

Կերի ավելացման նպատակով առանձնապես լուրջ ուշադրություն հատկացվեց եգիպտացորենի ցանքին, մշակությանը և բերքահավաքին։ Այդ են վկայում անցյալ տարվա արդյունքները։ 1958 թվականին եգիպտացորենի ցանքի համար առանձնացվեցին հողային լավ տարածություններ, ձեռք բերվեցին շրջանի հողա-կլիմայական պայմաններին հարմար բարձրորակ սերմեր, ցանքը կատարվեց սեղմ ժամկետում և ագրոկանոններին համապատասխան։ Երկու անգամ ցանքերը մշակվեցին և յուրաքանչյուր հեկտարին տրվեց 100—150 կգ լրացուցիչ հանքային պարարտանյութ։ Միայն եգիպտացորենի կանաչ մասսայից շրջանի կոլտնտեսությունները պատրաստել են մոտ 12 հազար տոննա սիլոս, 1957 թվականի 3900 տոննայի դիմաց։ Կիրովի կոլտնտեսությունում եգիպտացորենից պատրաստել են ավելի քան 1900 տոննա սիլոս կամ յուրաքանչյուր կովի համար՝ 8 տոննա, իսկ Վարդաբլուրի կոլտնտեսությունում՝ յուրաքանչյուր կովի համար՝ մոտ 7 տոննա։

Զգալի աշխատանք է կատարվել գոմաշինարարության և աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ։ Միայն վերջին երկու տարում կառուցվել և շահագործման են հանձնվել ավելի քան 17 տիպային անասնաշենք, 52 գոմերում տեղադրված են կախովի ճանապարհներ, 12 ֆերմայում՝ ավտո-

մատ խմոցներ։ Կոլտնտեսությունները ձեռք են բերել կեր խաշող 23, արմատապալարապտուղ մանրացնող 8 և բոլոր տեսակի կերերը մանրացնող 3 մեքենաներ։

Վերը նշված միջոցառումների կենսագործման և անասունների գլխաքանակի ավելացման շնորհիվ տարեցտարի ավելանում է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ 1953 թվականի համեմատությամբ շրջանի կոլտնտեսություններում կաթի համախառն արտադրությունը 1956 թվականին ավելացավ 1284, 1957 թվականին՝ 3035, 1958 թվականին՝ 3834 տոննայով։ 1958 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար տարածության հաշվով արտադրվել է 229 ցենտներ կաթ, 1953 թվականի 109 ցենտների դիմաց։ Առանձին կոլտնտեսություններ (Կուրթան, Վարդաբլուր, Գյուլագարակ, Կույբիշև, Սվերդլով) նույն ժամանակամիջոցում կաթի արտադրությունը ավելացրել են 2—3 անգամ։ Բրդի համախառն արտադրությունը միայն 1958 թվականին ավելացել է 206 ցենտներով, ընդ որում բրդի ընդհանուր ելույթի մեջ նուրբ և կիսանուրբ բուրդը կազմում է 65 տոկոս, նախորդ տարիների 1—2 տոկոսի դիմաց։ Յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը ավելացել է մեկ կիլոգրամով։ Գյուլագարակի, Գյառգյառի, Յաղդանի կոլտնտեսություններում բրդի արտադրությունը ավելացել է 1,5—2 անգամ։ Հանրային հոտի վերարտադրության հաշվին, 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին կովերի գլխաքանակը ավելացել է 971-ով, ոչխարներինը՝ 2300-ով։ Այժմ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց ունենք 33,3 խոշոր եղջերավոր անասուն, 12,3 կով, 2,5 մայր խոզ և 70 գլուխ ոչխար։

Զգալիորեն բարձրացավ մսի արտադրությունը։ Շրջանի կոլտնտեսությունները 1957 թվականին յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց արտադրեցին 24,5 ցենտներ միս, 1958 թվականին՝ 28,9 ցենտներ։

Մսի, կաթի, բրդի արտադրության ավելացման շնորհիվ վերջին տարիներում զգալիորեն աճեցին անասնաբուծական մթերքների մթերումները։ Առ մեկը նոյեմբերի 1958 թվականի դրությամբ, 1953 թվականի համեմատությամբ, պետությանը վաճառվել է՝ կաթ 11,357 ցենտներով, միս՝ 853 ցենտներով, բուրդ՝ 206 ցենտներով և ձու՝ 74,926 հատով ավելի։

Անցած ժամանակամիջոցում որոշակիորեն աճել են կոլտնտեսությունների դրամական եկամուտները, ըստ որում 1953 թվականի համեմատությամբ, 1958 թվականին այն գրեթե կրկնապատկվել է. ընդհանուր եկամտի մեջ անասնաբուծությունից ստացված եկամտի բաժինը աճել է ավելի քան երկու անգամ։ Դրա շնորհիվ ավելացել են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը և բարձրացել է կոլտնտեսականների նյութական բարեկեցությունը։ Մոտ 2 անգամ ավելացել է մեկ աշխօրի արժեքը։ Արմանիսի կոլտնտեսական Տ. Հունանյանի ընտանիքը միայն կոլտնտեսությունից մեկ տարում ստացել է 23.000 ռուբլի, Վարդաբլուրից՝ Ա. Առաքելյանի ընտանիքը՝ 26.000 ռուբլի և այլն։

Ահա թե ինչու վերջին տարիներում կոլտնտեսականները մասսայական կերպով սկսել են անհատական բնակարաններ կառուցել, իսկ կոլտնտեսությունները ձեռնարկել են ակումբների, դպրոցական շենքերի շինարարությանը։ Միայն անցած 3 տարում շրջանի գյուղերում կառուցվել և շահագործման է հանձնվել 382 անհատական բնակելի շենք։ Կուրթանի, Յաղդանի, Վարդաբլուրի, Սվերդլովի կոլտնտեսությունները սկսել են և շուտով կավարտեն դպրոցական շենքերի շինարարության աշխատանքները։



ՍՄԿԿ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումում տված իր զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովը ասաց. «Հարկավոր է նկատի ունենալ, որ անասնաբուծության վերելքի համար իսկական պայքարը դեռ նոր է ծավալվում, որ այդ պրոբլեմը լրիվ լուծված կարելի է համարել միայն այն ժամանակ, երբ սովետական մարդիկ առատորեն կստանան անասնաբուծական մեծարժեք մթերքներ սննդի համար, իսկ արդյունաբերությունը՝ անհրաժեշտ հումք հագուստի, կոշիկի և այլ ապրանքների արտադրության համար»։

Անասնաբուծության հետագա զարգացման բնագավառում մեծ խնդիրներ են դրված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանում։ Մեր շրջանում նախատեսվում է մինչև 1965 թվականը կաթի արտադրությունը հասցնել 133,373 ցենտների, կամ 100 հեկտար հողատարածության դիմաց՝ 395 ցենտների, որը 1,8 անգամով գերազանցում է 1958 թվականի մակարդակը։ Մսի արտադրությունն աճելու է 1,6 անգամ, բրդինը՝ 1,5 անգամ, ձվինը՝ 2,4 անգամ։ Այդ առաջադրանքների կատարումը ապահովելու համար պահանջվում է արմատապես վերակառուցել կազմակերպական և քաղաքական աշխատանքը։ Միաժամանակ պետք է լիովին օգտագործել եղած հնարավորություններն ու ռեզերվները։

Առաջին հերթին անհրաժեշտ է կերի կայուն բազա ստեղծել։ Շրջանում լայն հնարավորություններ և դեռևս չօգտագործված ռեզերվներ կան ցանովի խոտաբույսերի, եգիպտացորենի ցանքատարածություններն ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու համար։ Նախատեսված է առաջիկա 2—3 տարում բնական խոտհարքների հաշվին ցանովի խոտաբույսերի տարածությունն ընդարձակել և հասցնել 3500 հեկտարի, առավելապես ցանել կորնգան, երեքնուկ, առվույտ և վիկա-վարսակ։ Բնական խոտհարքների բերքատվությունը բարձրացնելու նպատակով, սկսած 1959 թվականից, յուրաքանչյուր տարի 1000-ական հեկտար տարածություն մաքրվելու է քարերից, 1500 հեկտարի վրա կատարվելու է պարարտացում և 700 հեկտար տարածության վրա ցանվելու է խոտ։ Շրջանում լայն հնարավորություններ կան առաջիկա երեք տարում անօգտագործելի 650 հեկտար տարածություն դարձնել խոտհարքներ։

1958 թվականի փորձը մեկ անգամ ևս ցույց տվեց, որ հնարավոր է եգիպտացորենից ստանալ բարձր բերք և կուտակել արժեքավոր հյութալի կեր։ Շրջանի պարտիական կազմակերպությունները պայքարում են ամրապնդել այդ ուղղությամբ ձեռք բերած հաջողությունները և առաջիկա 2—3 տարում եգիպտացորենի ցանքատարածությունները հասցնել մինչև 1000 հեկտարի։

Ստեփանավանի շրջանի կոլտնտեսություններում 1958 թվականին ամեն մի հեկտարից կերի ճակնդեղի միջին բերքը կազմեց 302 ցենտներ, իսկ առանձին կոլտնտեսություններում՝ 450—500 ցենտներ։ Մշակված են կոնկրետ միջոցառումներ այդ կուլտուրայի բերքատվությունը ամեն մի հեկտարից հասցնելու 500—600 ցենտների։ Նշված միջոցների խելացի օգտագործումը հնարավորություն կտա կատարելու 1965 թվականին 41,890 տոննա կոշտ և 38,500 տոննա հյութալի կերի կուտակման նախատեսված առաջադրանքները։

Առաջիկա յոթնամյա պլանով նախատեսվում է շրջանում մսի արտադրությունն ավելացնել 8450 ցենտներով։ Այս առաջադրանքի կատարումը ապա-

հովելու համար անհրաժեշտ է ավելացնել անասունների գլխաքանակը, արմատապես բարելավել մատղաշների խնամքը, հասնել այն բանին, որ պետությանը հանձնվեն գեր անասուններ։

Շրջանի կոլտնտեսություններում (Կուրթան, Վարդաբլուր, Գյուլագարակ, Հոբարձի և այլն) լայն հնարավորություններ կան թռչնաբուծության զարգացման համար։ Այդ ուղղությամբ դեռևս անբավարար աշխատանք է կատարված։ Շրջանում հնարավոր է ածան հավերի թիվը հասցնել մինչև 20 հազարի, զարգացնել ջրային թռչնաբուծությունը։

Շրջանի կոլտնտեսություններում ձեռնարկվում է նաև ճագարաբուծության զարգացումը. այդ գործին ակտիվ կերպով պետք է մասնակցի երիտասարդությունը։

Վերջին տարիներում ոչխարաբուծության զարգացման ուղղությամբ ձեռք առնված որոշ միջոցները տվեցին դրական արդյունք։ Սակայն կան դեռևս չօգտագործված շատ հնարավորություններ։ Նախատեսվում է կառուցել շատ գոմեր ու փարախներ, ոչխարների կերաբաժնում ավելացնել հյութալի և խտացրած կերը, ցեղի բարելավման միջոցով ունենալ միայն նրբագեղմ և կիսանրբագեղմ ոչխարներ, դրանց գլխաքանակը հասցնել 30 հազարի, որը հնարավորություն կտա ստանալ 970 ցենտներ բուրդ։

Կաթի արտադրության հետագա ավելացումը պահանջում է կովերի գլխաքանակի զգալի աճ։ Նախատեսվում է յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց շրջանում ունենալ առնվազն 20 կով։ Լուրջ աշխատանք պետք է տանել կովերի ցեղայնությունը բարելավելու ուղղությամբ։ Այդ նպատակով նախատեսված է լայն չափով կիրառել արհեստական սերմնավորումը և բացառապես օգտագործել բարձրարժեք ցուլեր։

Շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունների խնդիրն է՝ լրիվ օգտագործել եղած հնարավորությունները, մոբիլիզացնել բոլոր ուժերը՝ անասնաբուծության հետագա զարգացման մասին ՀԿՊ XX և ՍՄԿՊ XXI համագումարների որոշումները պատվով կատարելու համար։

Ն. ԱՂԱՋԱՆՅԱՆ

ՀԿՊ Ստեփանավանի շրջկոմի քարտուղար

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱՐԵՎՈՐ ԲՆԱԳԱՎԱՌԸ

Կենսագործելով մեծ Լենինի ցուցումը այն մասին, որ ագիտացիան ու պրոպագանդան պետք է կառուցվեն տնտեսական շինարարության քաղաքական փորձի վրա, պարտիան մեզ սովորեցնում է աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը սերտորեն զուգակցել կյանքի, կոմունիստական շինարարության խնդիրների հետ։

ՍՄԿՊ XXI համագումարը մասսաների կոմունիստական դաստիարակությունը կարևորագույն խնդիր համարելով, պարտավորեցնում է պարտիական կազմակերպություններին ավելի լրիվ ու ակտիվորեն օգտագործել գաղափարական դաստիարակության բոլոր միջոցները՝ մամուլը, ռադիոն, կուլտուր-լուսավորական կազմակերպություններն ու հիմնարկները, գիտությունը, գրականությունը և արվեստը։

Ղուկասյանի շրջանում վերջին տարում զգալիորեն բարելավվել են աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուղղությամբ տարվող աշխատանքները։ Շրջանի պարտիականները գիտակցում են, որ տնտեսական շինարարության խնդիրների հաջող լուծումը հնարավոր է ամենից առաջ մասսաների բարձր գիտակցականության դեպքում։



Մասսաների կոմունիստական դաստիարակության գործում վճռական նշանակություն ունի մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածումը, պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքների լավ կազմակերպումը։

1958 թվականին շրջանում աշխատավորության համար կարդացվել են 530 զեկուցումներ ու դասախոսություններ՝ նվիրված միջազգային ու ներքին տնտեսական շինարարության և հատկապես գյուղատնտեսության էկոնոմիկայի կարևոր հարցերին։ Հասկանալի է, որ միայն զեկուցումներով ու դասախոսություններով հնարավոր չէ լայն մասսաներին հաղորդակից դարձնել առօրյա կյանքի նորություններին, պարտիայի ու կառավարության որոշումներին։ Այս գործում զգալի աշխատանք են կատարում ագիտատորները։ 251 ագիտատոր մշտական զրույցներ են կազմակերպում մասսաների մեջ։ Ագիտկոլեկտիվներում գյուղական ինտելիգենցիայի հետ միասին ներգրավված են արտադրության մեջ աշխատող շատ մարդիկ։ Բանավոր ագիտացիայի հետ միասին լայնորեն կիրառվում է ցուցադրական ագիտացիան։ Պլակատների, մոնտաժների, պատի թերթերի ու «կայծակների» միջոցով ցուցադրվում են ՍՍՌՄ-ի, ռեսպուբլիկայի, շրջանի և տվյալ կոլտնտեսության ցուցանիշները, առաջավորների ձեռք բերած հաջողությունները։

Մեծ Սեպասարի պարտիական կազմակերպությունը աշխատավորության համար հաճախակի կազմակերպում է զրույցներ, զեկուցումներ, դասախոսություններ։ Կովաբուծական ֆերմայում կազմակերպված է կարմիր անկյուն, լայն տեղ է տրվում ցուցադրական ագիտացիային։ Պատահական չէ, որ այս կոլտնտեսությունում անհամեմատ ավելի լավ են կազմակերպված գյուղատնտեսական աշխատանքները, բարձր է աշխատավորների ակտիվությունը, աստիճանաբար բարձրանում է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ 1958 թվականին միայն հացահատիկային կուլտուրաների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 15,8 ցենտներ բերք։

Թազագյուղի պարտիական կազմակերպության քարտուղար ընկ. Պարգև Բարեյանը աշխատավորության առաջ հաճախակի է հանդես գալիս դասախոսություններով, նա խոսում է պարզ և մատչելի, կոլտնտեսականները հաճույքով են լսում նրան։ Ագիտատորներ Ժ. Հովհաննիսյանը, Ն. Սոխոյանը իրենց ագիտացիոն զրույցներն անցկացնում են շատ հետաքրքիր, լայնորեն օգտագործելով իրենց կոլտնտեսության ձեռք բերած հաջողությունները։ Այս կոլտնտեսությունում բարձր է աշխատանքային կարգապահությունը, չկա կոլտնտեսական, որ չմասնակցի կոլտնտեսային աշխատանքներին։

Սակայն, մասսաների մեջ տարվող պրոպագանդիստական-ագիտացիոն աշխատանքների գործում դեռևս կան լուրջ թերություններ։ Շրջանի պարտիական, սովետական ղեկավար աշխատողները աշխատավորների առաջ քիչ են հանդես գալիս բովանդակալից զեկուցումներով։ Ինտելիգենցիայի որոշ մասը մատչելի զեկուցումներով քիչ է հանդես գալիս կոլտնտեսականների շրջանում։ Այս կապակցությամբ տեղին է նշել, որ ռեսպուբլիկայի գիտահետազոտական հիմնարկները ևս անբավարար են օգնում շրջանին։

Շրջանի որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ անբավա-

բար ուշադրություն են դարձնում երիտասարդության մեջ տարվող քաղաքական աշխատանքի վրա։ Այդ տեսակետից բնորոշ է առանձնապես Փալութլիի, Իլլիի, Թաքնալիի, Կարմրավանի, Սարագյուղի պարտիական կազմակերպությունների աշխատանքը։ Նշված կոլտնտեսություններում ցածր է աշխատանքային կարգապահությունը և անցյալ տարվա համեմատությամբ զգալի չափով նվազել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։

Մասսաների դաստիարակության, նրանց հոգևոր կուլտուրայի աճման գործում զգալի աշխատանք են կատարում կուլտուր-լուսավորական հիմնարկները։ Այժմ շրջանում գործում է 57 կուլտուր-լուսավորական օբյեկտ։ Ակումբներում ու գրադարաններում գրքային ֆոնդը հասնում է ավելի քան 145000 կտորի։ Ակումբներին կից գործում են թատերական, երգի-պարի, շախմատի և այլ 44 ինքնագործ խմբակներ։ Հարյուրավոր ընթերցողներ սիստեմատիկ օգտվում են գրադարաններից։ Հաճախակի կազմակերպվում են գրական, գեղարվեստական ինքնագործ խմբակների ելույթներ, լինում են գեղարվեստական գրքի մասսայական ընթերցումներ ու քննարկումներ, կազմակերպվում են կինոնկարների ցուցադրումներ և այլն։

Աշխատավորների համար կանոնավոր կերպով ելույթներ են ունենում թատերական, երգի-պարի և սպորտային խմբակները։ Դրական աշխատանք է կատարում շրջկենտրոնի կուլտուրայի տունը, որի գեղարվեստական ինքնագործ խմբակները հաճախակի ելույթներ են ունենում շրջկենտրոնի և շրջանի գյուղերի աշխատավորների համար։ Վերջերս կուլտուրայի տան թատերական ինքնագործ խմբակը ելույթներ ունեցավ շրջանի մի շարք գյուղերում և բեմադրեց Վ. Մուրադյանի «Մայրը» պիեսը, որը արժանացավ հանդիսատեսների հավանությանը։

Ղուկասյանի շրջանի պարտիական կազմակերպությունները անցյալ տարի որոշ աշխատանք կատարեցին սոցիալիստական մրցության ծավալման, ստանձնած պարտավորությունների կատարման, գիտության նվաճումների և առաջավոր փորձի տարածման ու արմատավորման ուղղությամբ։

Սոցիալիստական մրցության ծավալման հարցերին հաճախակի են անդրադարձել ինչպես շրջանային կոմիտեն, այնպես էլ սկզբնական պարտիական կազմակերպությունները, որոնք քննել և նշել են միջոցառումներ՝ այդ գործում եղած թերությունները վերացնելու համար։

Շրջանը սոցիալիստական մրցության մեջ է մտել հարևան Ամասիա շրջանի հետ, և դա իր դրական ազդեցությունն է ունեցել երկու շրջանների աշխատավորների հարաբերությունների ամրապնդման գործում։

Մեր շրջանը տրադիցիոն մրցության մեջ է գտնվում նաև Վրացական ՍՍՌ Բոգդանովկայի շրջանի հետ, որը նույնպես իր դրական նշանակությունն է ունեցել երկու եղբայրական ռեսպուբլիկաների հարևան շրջանների աշխատավորների կապերի ամրապնդման գործում։

Այժմ շրջանի պարտիական կազմակերպությունները ամբողջ ագիտացիոն-պրոպագանդիստական աշխատանքն ուղղել են ՍՄԿՊ XXI համագումարի նյութերի մասսայականացման, որը մեր ներկայիս ամենաառաջնահերթ խնդիրներից է։

Վ. ՄԱՆՈՒԿՅԱՆ
ՀԿՊ Ղուկասյանի շրջկոմի քարտուղար

## ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

### ՀԱՋՈՂՎԱԾ ՓՈՐՁ

Մինչև վերջերս էլ հայերեն լեզվով հրապարակի վրա չկային քիչ թե շատ ծավալուն գործեր, որտեղ պահանջվող խորությամբ գըրվեին ու պարզաբանվեին մարքսիստական-լենինյան ճանաչողության թեորիայի արմատական հարցերը, տրվեր դրանց համակողմանի, ընդարձակ վերլուծությունը։ Այս առումով արժանի է ամենայն ուշադրության Ղ. Վարդապետյանի «Արտացոլման մարքս-լենինյան թեորիայի հարցերը» աշխատությունը*, որը գալիս է մասամբ լրացնելու այդ պակասը։

Գրախոսվող աշխատության մեջ հեղինակն իր առջև դրել է մի հիմնական խնդիր՝ պարզաբանել ճանաչողության թեորիայի մարքս-լենինյան ըմբռնումը, հարցի գիտական լուծումը կապելով այս բնագավառում եղած իդեալիստական և մետաֆիզիկական տեսակետների, մասնավորապես՝ բուրժուական ժամանակակից ռեակցիոն փիլիսոփայական մտքի՝ նրա բնորոշ ձևերի ու տարատեսակների քննադատության հետ։ Եվ պետք է նշել, որ դա հեղինակին հաջողվել է։

Աշխատության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն գրված է նյութի հետ երկարատև մաքառումից հետո, ընդարձակ գիտական տվյալները հաղթահարելու, մարսելու հողի վրա։ Դրանով մասամբ կարելի է բացատրել այն հանգամանքը, որ ճանաչողության թեորիայի ծանրակշիռ ու բարդ հարցերը գրքում շարադրված են պատշաճ հստակությամբ ու մատչելի ձևով։ Այստեղ շատ լավ են զուգակցված շարադրված հարցերի պոզիտիվ ու նեգատիվ կողմերը։ Հեղինակը չի զբաղվում միայն քննադատությամբ, նա աշխատում է տալ նաև քննարկվող հարցերի պոզիտիվ շարադրանքը՝ օգտագործելով բնագիտական, պատմա-փիլիսոփայական և այլ հետաքրքիր բազմաթիվ նյութեր։ Ընթերցողը ծանոթանում է առաջադրվող հարցերի ո՛չ միայն արդի վիճակին, այլև նրանց պատմական զարգացման պրոցեսին, պատմությանը։ Այս հանգամանքն անհամեմատ բարձրացնում է գրքի արժանիքը, քանի որ մեր պատկերացումները, ըմբռնումները քննարկվող պրոբլեմների մասին դառնում են ավելի ամբողջական։

Մի հանգամանք ևս։ Ղ. Վարդապետյանի այս գիրքը զգալիորեն տարբերվում է հրապարակի վրա եղած փիլիսոփայական մի շարք աշխատություններից։ Հեղինակն աշխատել է իր մտքերն արտահայտել պատկերավոր, արտահայտչական վառ գույներով ու երանգներով։ Չթերագնահատելով տրամաբանական խստիվ հետևողականությունը, նա ցուցաբերում է հետաքրքիր տենդենց՝ փիլիսոփայական ամենաաբստրակտ դրույթներն անգամ բացատրել արտահայտիչ, գեղարվեստական խոսքով։ Միաժամանակ պետք է նշել, որ աշխատությունը գրված է գեղեցիկ հայերենով։

Աշխատությունը բաղկացած է վեց գլուխներից։ Առաջին գլխում քննության է առնված արտացոլման մարդկային կարողության առաջացման հարցը։ Այստեղ հեղինակը առաջ է քաշում այն միտքը, որ տվյալ հարցի գիտական լուծումը չի կարելի անջատել կյանքի ծագման, առաջացման պրոբլեմից։ Եվ դա միանգամայն հասկանալի է, քանի որ իսկական իմաստով արտացոլումը հատուկ է միայն բարձր կերպով կազմակերպված մատերիային։ Իսկ վերջինս պատմական երկարատև էվոլյուցիոն պրոցեսի արդյունք է։ Դիալեկտիկական մատերիալիզմի այս դրույթը հիմնավորելու համար աշխատության մեջ օգտագործված են գիտության բազմաթիվ տվյալներ, մասնավորապես ակադեմիկոսներ Օպարինի և Լեպեշինսկայայի հետազոտությունները։ Այս կապակցությամբ Ղ. Վարդապետյանը քննադատության է ենթարկում ոչ միայն իդեալիզմի, ֆիդեիզմի տեսակետները, այլև մեխանիկական, մետաֆիզիկական մատերիալիզմը։

Վերոհիշյալ պրոբլեմի հետ սերտորեն առնչվում է նաև զգայնությունից գիտակցությանն անցնելու հարցը։ Չնայած այս հարցը առաջադրված է աշխատության մեջ, այնուամենայնիվ չի լուսաբանված իր բոլոր կողմերով. օրինակ, չի բացահայտված արտացոլման որակական առանձնահատկությունների հարցը՝ կապված կենդանական օրգանիզմներիստրուկտուրայի և ներվային համակարգության զարգաց-

* Ղ. Վարդապետյան—«Արտացոլման մարքս-լենինյան թեորիայի հարցերը», Հայպետհրատ, Երևան, 1958 թ., 250 էջ։

ոչ մի վնաս չի լինի, եթե մենք ոչնչացնենք մեկ միլիոնը» (էջ 57)։

Նուրի Սայիդի դավաճան կլիկը օտարերկրյա մոնոպոլիաների համար ստեղծել էր այնպիսի պայմաններ, որոնք նրանց հնարավորություն էին տվել տասնամյակների ընթացքում կողոպտել և շահագործել Իրաքի ժողովրդին և նրա բնական հարստությունները։ Այդ մասին գրքույկում բերված են թվական և փաստական նյութեր։ Իրաքի բոլոր նավթահանքերին տեր էին դարձել օտարերկրյա մոնոպոլիաները՝ անգլիական, ամերիկյան, ֆրանսիական։ Երկրում տարեկան արդյունահանվող ավելի քան 30 միլիոն տոննա նավթից տեղում մշակվում է միայն մեկ միլիոն տոննան։

Արդյունահանման ցածր ինքնարժեքը և տեղական բանվորների չնչին աշխատավարձը օտարերկրյա մոնոպոլիաներին հնարավորություն են ընձեռել հեքիաթային շահույթներ կորզելու համաշխարհային շուկայում իրաքյան նավթը վաճառելուց։ Իրաքում մեկ նավթահորը մոտ 1150 անգամ ավելի նավթ է տալիս, քան մեկ նավթահորը ԱՄՆ-ում։ Իրաքի նավթի ամեն մի տոննան արտասահմանում վաճառվում է 16—17 անգամ ինքնարժեքից ավելի թանկ։ Օտարերկրյա մոնոպոլիաները Իրաքին միայն չնչին գումարներ էին տալիս, իսկ դրանք էլ մտնում էին պետական կաշառակեր չինովնիկների, օտարերկրյա խորհրդատուների գրպանը։

Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպիսի աղքատության էր հասցրել օտարերկրյա մոնոպոլիաների և տեղական շահագործողների տիրապետությունը Իրաքի աշխատավոր բնակչությանը։ Լավագույն հողերը գտնվում էին ցեղերի շեյխերի, կալվածատերերի, կոմպրադորների և Նուրի Սայիդի ու նրա տերերի գլխավոր հենարանը հանդիսացող մյուս շահագործողների ձեռքին։ Բավական է ասել, որ 3,5 միլիոն ֆելահներին բաժին էր ընկնում միայն 120 հազար հեկտար մշակության համար պիտանի հող։ Ինչպես հեղինակն է գրում, Ասիայի ոչ մի երկրում չի զգացվում այնպիսի աչքի զարնող կոնտրաստ հողատերերի և հողազուրկ հողագործների հսկայական զանգվածի միջև, ինչպես Իրաքում։ Երկրի բնակչության 75—80 տոկոսը բավարար քանակությամբ սնունդ չի ստանում։ Բավական է ասել, որ երկրի գյուղերում մեկ բժշկին ընկնում է 17 հազար մարդ։ Պատահական չէ, որ Իրաքում կյանքի միջին տևողությունը 26—27 տարուց չի գերազանցում, իսկ երկրում 2 միլիոնից ավելի թոքախտավորներ կան։

Գրքույկի «Ժողովրդի սխրագործությունը» գլուխը նվիրված է Իրաքի ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի և հաղթանակի հարցերի քննարկմանը։ Վերջին տասնամյակներում Իրաքի զարգացման ամբողջ պատմությունը վկայում է այն մասին, որ հուլիսի 14-ի ապստամբությունը իմպերիալիզմի և ֆեոդալական-միապետական ռեակցիայի դեմ 6 միլիոնանոց ժողովրդի բազմամյա հերոսական պայքարի օրինաչափ հետևանքն էր։ Այն նախապատրաստված էր հակաիմպերիալիստական և հակաֆեոդալական շարժման ամբողջ ընթացքով։ Իրաքի ժողովուրդը հակաիմպերիալիստական պայքարի դրոշ է բարձրացրել դեռևս 1920 թվականին, քանիցս ապստամբել և անհավասար կռիվ է տվել իր ոխերիմ արտաքին և ներքին թշնամիներին։ Այդ հերոսամարտերը նոր բնույթ ստացան երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Չնայած բռնակալական ռեժիմին, երկրում տեղի էր ունենում ազգային-հայրենասիրական ուժերի ամրապնդում և համախմբում։ Այդ ուժերը պայքարի էին ելել իմպերիալիստական երկրների հետ ստրկական պայմանագրերի դեմ, հանուն Իրաքից անգլիական զորքերի դուրս բերման, ֆեոդալական ճնշման վերացման, հանուն ազգային էկոնոմիկայի զարգացման, դեմոկրատական իրավունքների և ազատության։ Այդ շարժման մեջ էին ներքաշվում երկրի բնակչության լայն խավերը՝ գյուղացիները, բանվորները, արհեստավորները, ազգային բուրժուազիան։ Դեռևս 1934 թվականին ստեղծված Իրաքի կոմպարտիան դրակոնյան ռեժիմի պայմաններում չէր դադարեցնում խիզախ պայքարը հանուն ժողովրդական մասսաների շահերի, հանուն մեկ միասնական ազգային ճակատի մեջ բոլոր առաջադիմական ուժերի միավորման։ Իրաքի ռեակցիոներները առանձնակի դաժանությամբ էին հաշիվ տեսնում կոմունիստների հետ։ Հազարավոր իրաքցի կոմունիստներ են գնդակահարվել, բանտարկվել և փակվել համակենտրոնացման ճամբարներում։ 1947 թվականին Նուրի Սայիդը բանտարկեց Իրաքի կոմպարտիայի կենտկոմի մի խումբ անդամների և նրա գլխավոր քարտուղար Յուսուֆ Ձաիդին և ապա գնդակահարեց նրանց։

Վերջին տարիներս Իրաքում ավելի հաճախակի դարձան համաժողովրդական ապստամբությունները, որոնց մասնակցում էին բնակչության ամենալայն խավերը, հայրենասիրական բոլոր պարտիաները և կազմակերպությունները։

1957 թ. մարտին Կոմունիստական պարտիան, Ազգային-դեմոկրատական պարտիան, «Իսթիքլյալ» պարտիան, Արաբական վերածնության Սոցիալիստական պարտիան և հայրենասիրական այլ խմբեր, որոնք գործում էին խորապես անլեգալ, որոշում ընդունեցին Իրաքի Ազգային Միավորման ճակատ ստեղծելու մասին։ Դա Իրաքի ժողովրդի ազգային-ազատագրական շարժման աչքի ընկնող հաղթանակն էր, որը կանխորոշեց հուլիսյան ռևոլյուցիայի հաջողությունը։

Մի քանի տարի առաջ այժմյան պրեմիեր մինիստր Աբդել Քերիմ Կասեմի գլխավորությամբ ստեղծված «Ազատ սպաներ» կազմակերպությունը, որն իր առաջ նպատակ էր դրել տապալել փտած միապետությունը և երկրում հաստատել ռեսպուբլիկական իշխանություն, Ազգային Միավորման ճակատի ծրագիրը ընդունեց ի ղեկավարություն։ Ճակատի ղեկավարությունը առաջնակարգ խնդիր համարեց Նուրի Սայիդի ռեակցիոն կառավարության տապալումը և նրա փոխարինումը ազգային-դեմոկրատական կառավարությամբ։ Ճակատը նաև խնդիր դրեց ապահովել Իրաքի դուրս գալը Բաղդադի պակտից, մերժել «Դալես-Էյզենհաուերի դոկտրինա»-ն, չեղյալ հայտարարել անգլո-իրաքյան ռազմական համաձայնությունը, պաշտպանել իմպերիալիզմի դեմ մյուս արաբական ժողովուրդների պայքարը։ Ճակատի առաջադրված մյուս խնդիրներից էին՝ Իրաքի ազգային շահերին վնասող տնտեսական համաձայնագրերի վերանայումը, օտարերկրյա կապիտալի տիրապետությունից երկրի էկոնոմիկայի ազատագրումը, ժողովրդի դեմոկրատական իրավունքների ընդլայնումը, քաղաքական բանտարկյալների ազատագրումը և այլն։

Ինչպես գրում է հեղինակը, «սև ռեժիմի» վերջին ամիսներին իրադրությունն Իրաքում արտակարգ սրվել էր։ Արաբական Արևելքում իմպերիալիզմի և ֆեոդալիզմի դիրքերը ամրապնդելու համար, Նուրի Սայիդի կառավարությունը համաձայնեց իր զորքերը տրամադրել իմպերիալիստներին Լիբանանում ազգային-ազատագրական շարժումը ճնշելու համար։ Նույնիսկ չսպասելով Ստամբուլում Բաղդադի պակտի մասնակիցների խորհրդակցության արդյունքներին, Նուրի Սայիդը ձեռնամուխ էր եղել Լիբանան ուղարկվելիք իրաքյան զորքերի երկու բրիգադայի սպառազինմանը։ Որպես կանոն նա բանակին չէր վստահում և զորամասերին մարտական փամփուշտներ և արկեր էր տալիս միայն բացառիկ դեպքերում։ Այդ առիթը իրոք որ բացառիկ էր։ Գեներալ Աբդել Քերիմ Կասեմի բրիգադան ռազմամթերք ստացավ։ Իրաքի հայրենասերները, որոնք նախապատրաստել էին ռևոլյուցիոն հեղաշրջումը, հենց դրան էլ սպասում էին։ Հուլիսի 14-ին Իրաքում տեղի ունեցավ ժողովրդական ռևոլյուցիա, որը նախապատրաստել էր Ազգային Միավորման ճակատը և իրագործվեց Իրաքի բանակի կողմից՝ ամբողջ ժողովրդի օժանդակությամբ։

Իրաքի ռեսպուբլիկան անմիջապես ազդարարեց չեզոքության քաղաքականությանը և Բանդունգի սկզբունքներին իր հավատարմության մասին։ Ռեսպուբլիկան շատ կարճ ժամանակամիջոցում միջազգային լայն ճանաչում գտավ։

Այնուհետև հեղինակը ցույց է տալիս, թե միապետական կլիկը ինչպիսի ծանր ժառանգություն է թողել ռեսպուբլիկային, թե ինչպիսի առաջադիմական վերափոխություններ են իրագործվում երկրում՝ Իրաքի ժողովրդի հոգեկան և ֆիզիկական ուժերի զարթոնքի պայմաններում։ Ռեսպուբլիկական կառավարության կազմում հայրենասիրական ապստամբության զինվորական ղեկավարների, օրինակ, Աբդել Քերիմ Կասեմի հետ մեկտեղ մտել են նաև Ազգային միավորման ճակատի աչքի ընկնող անդամները, կամ կողմնակիցները։ Ռեսպուբլիկական կառավարությունը ձեռնամուխ է եղել երկրի ներքին կյանքի դեմոկրատացման գործին և վճռական պայքար է մղում իմպերիալիզմի և նրա գործակալների դեմ։

Իրաքի ժողովուրդը մի կողմ նետեց թագավորական կոնստիտուցիան։ 1958 թվականի հուլիսի 26-ին հռչակվեց Իրաքի ռեսպուբլիկայի ժամանակավոր կոնստիտուցիան, ըստ որի Իրաքը պաշտոնապես հռչակված է սուվերեն և անկախ ռեսպուբլիկա՝ արաբական ազգի անբաժանելի մասը։ Իրաքի պատմության մեջ առաջին անգամ երկրի բնակչության 15 տոկոսը կազմող քրդերը դառնում են իրավահավասար քաղաքացիներ։ Շատ կարևոր կետ է կոնստիտուցիայի 9-րդ հոդվածը, որտեղ նշված է, որ բոլոր քաղաքացիներն իրենց իրավունքներում և պարտականություններում հավասար են օրենքի առաջ՝ առանց մի որևէ խտրականության։ Կոնստիտուցիայի 13-րդ հոդվածը ճանաչում է մասնավոր սեփականության անձեռնմխելիությունը, բայց այն կարող է բռնագրավվել հօգուտ պետության շահերի՝ «ըստ օրենքի արդարացի փոխհատուցմամբ»։ Ռեսպուբլիկական կառավարությունը պետական ապարատը մաքրեց դավաճան պրոիմպերիալիստական տարրերից, ձեռնամուխ է եղել ագրարային ռեֆորմի իրականացմանը, որը պետք է կատարվի հինգ տարվա ընթացքում։ Իրաքի ռեսպուբլիկան արդեն տնտեսական կապեր է հաստատել Սովետական Միության և սոցիալիստական լագերի այլ երկրների հետ։

«Արաբական Արևելքը արաբներին» գլխում հեղինակը ցույց է տալիս արաբական ժողովուրդների հակաիմպերիալիստական պայքարի առանձին կողմերը, այդ պայքարում Իրաքի ժողովրդի տարած հաղթանակի, Իրաքի ռեսպուբլիկայի ստեղծման խոշոր նշանակությունը, որ դա ուժեղ հարված էր իմպերիալիզմին և ռեակցիային։ Իրաքի միապետության կայծակնային կործանումը արևմտյան իմպերիալիստների համար ամենաուժեղ հարվածն էր Արաբական Արևելքում իրենց գաղութային սիստեմին, որի ստեղծման վրա ջանք չէին խնայել անգլիական լրտես Լոուրենսն ու բրիտանական իմպերիալիզմի գլխավոր ոգեշնչողներից մեկը՝ Չերչիլը, Նուրի Սայիդն ու նորանձև գաղութարարության առաջին ներկայացուցիչ Դալեսը։

Հողագնդի բոլոր հասարակ մարդիկ Իրաքի

ժողովրդի հետ միասին ուրախությամբ դիմավորեցին նրա հաղթանակը։

Գրքույկը գրված է հրապարակախոսական ոճով, սահուն և պատկերավոր լեզվով։ Գրքույկի յուրաքանչյուր գլխի սկզբում գրված են իրաքյան պրոգրեսիվ խոշորագույն պոետ Աբդ ալ-Վահաբ Ալ-Բայաթիի չափածո տողերը, որոնք ճշմարտացիորեն պատկերում են Իրաքի ժողովրդի հերոսական պայքարը, դառնությունները ու հաղթանակը։

Ջ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

# ԽՐԱԽՈՒՍԵԼԻ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅՈՒՆ

Հայպետհրատը հրատարակել է «Կալինինոյի կոմունիստների պայքարը անասնաբուծական մթերքների առատության համար» վերնագրով գրքույկը, որի հեղինակն է Ստ. Վարդանյանը։ Գրքույկը համառոտակի, բայց հստակ պատկերացում է տալիս անասնաբուծության զարգացման բնագավառում այն պրակտիկ պարտիական աշխատանքի մասին, որ կատարել են պարտիայի Կալինինոյի շրջանային կոմիտեն, կոլտնտեսային սկզբնական կազմակերպությունները ու բոլոր կոմունիստները։ Հեղինակը իրավացիորեն նկատում է, որ Կալինինոյի շրջանի կոլտնտեսությունների ձեռք բերած հաջողությունները պատահական բնույթ չունեն, դրանք արդյունք են անասնապահների քրտնաջան, գործիմաց աշխատանքի, պարտիական, սովետական, կոմերիտական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչությունների օպերատիվ և ճկուն ղեկավարության։

Կաթի արտադրությունն ավելացնելու համար 1956 թվականի վերջում շրջանում ստեղծվել էին նպաստավոր պայմաններ. կոլտնտեսությունները կուտակել էին բավարար քանակությամբ կոշտ և հյութալի կեր, ֆերմաներն ամրապնդվել էին իրենց գործն իմացող անասնապահներով ու մասնագետներով և այլն։ Պարտիայի շրջանային կոմիտեն և սկզբնական պարտիական կազմակերպություններն իրենց աշխատանքը սկսեցին նրանով, որ կոլտնտեսություններում, անասնապահների շրջանում ծավալեցին սոցիալիստական գործարար մրցություն, կազմակերպեցին մասսայական լայն շարժում տնտեսական նոր տարում բարձր կաթնատվության հասնելու համար։ Նրանք հենվելով անասնապահների հիմնական մասի առաջարկությունների վրա, որոշում են պայքարի նախնական լոզունգ առաջադրել՝ յուրաքանչյուր կովից ստանալ 2000 կգ. կաթ։ Դա նշանակում է նախորդ տարվա համեմատությամբ ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացնել 233 կիլոգրամով։ Հեղինակը կոնկրետ օրինակներով հաստատում է այն փաստը, որ այդ ժամանակ պարտիական աշխատողների և կոմունիստների զգալի մասը, ելնելով առաջավորների փորձից, համոզված էր, որ աշխատանքի ճիշտ կազմակերպման դեպքում հնարավոր է հասնել շատ ավելի բարձր ցուցանիշների։

Շրջանի Սարշապետ կոլտնտեսությունը կոչով դիմում է շրջանի բոլոր կոլտնտեսականներին, գյուղատնտեսության մասնագետներին, մեխանիզատորներին՝ լայն պայքար ծավալել մեկ ֆուրաժային կովից միջինը շրջանում 2000 կգ. կաթ ստանալու համար։ Պարտշրջկոմի բյուրոն պաշտպանում է այդ կոչը և հանձնարարում կոլտնտեսային պարտիական կազմակերպություններին՝ կոլտնտեսականների ժողովներում քննության առնել այդ կոչը, ընդունել համապատասխան պարտավորություններ և քաղաքական լայն աշխատանք կազմակերպել դրանց կենսագործման համար։ Սոցիալիստական մրցությունը շրջանում կազմակերպվում է այնպես, որ տարբեր կոլտնտեսություններ տարբեր պարտավորություններ են ստանձնում։

Հեղինակը հանգամանորեն պատմում է, թե ինչպես կոլտնտեսային պարտիական կազմակերպություններն իրենց ամբողջ աշխատանքն ի սպաս են դնում այն բանին, որպեսզի կաթի արտադրության ավելացման համար ծավալվող շարժումը, որքան հնարավոր է, ավելի շատ կոլտնտեսականներ ընդգրկի, որպեսզի այդ խնդրի կենսագործման համար պայքարի յուրաքանչյուր անասնապահ։ Այդ նպատակին ենթարկվեցին ագիտացիոն աշխատանքի բոլոր միջոցներն ու ձևերը։ Գրեթե բոլոր անասնապահները ընդգրկվում են սոցիալիստական մրցության մեջ. միմյանց հետ մրցման մեջ են մտնում անասնապահական բրիգադները, ֆերմաները և կոլտնտեսությունները։ Կազմակերպվում է մրցություն ինչպես Ստեփանավանի, այնպես էլ եղբայրական Վրաստանի Դմանիսի շրջանների անասնաբույծների հետ։

Պարտիայի շրջկոմի բյուրոն սահմանում է մրցության ընթացքի ստուգման և արդյունքների ամփոփման կարգ, ըստ որի անասնապահական ֆերմաներում մրցության ընթացքը ամփոփվում է յուրաքանչյուր տասնօրյակ մեկ անգամ, իսկ միջկոլտնտեսային մրցությունը՝ ամիսը մեկ անգամ։ Սահմանվում է փոխանցիկ դրոշ, կազմակերպվում են մրցակիցների փոխադարձ այցելություններ և այլն։

Հեղինակը ճիշտ է վարվել, երբ մրցության



հաջողությունը սերտորեն կապել է կադրերի ընտրության հետ։ Նա պատմում է, թե ինչպես սոցիալիստական լայն մրցություն կազմակերպելիս անասնաբուծության բնագավառում աշխատանքի են ուղարկվել բանիմաց, այդ գործը սիրող մարդիկ, առաջին հերթին կոմունիստներ և կոմերիտականներ։

Գրքույկում հանգամանորեն խոսվում է նաև կաթի արտադրության ավելացմանը նպաստող նյութական խրախուսանքի մասին։ Բացի այն, որ շրջանում կիրառվում էր հանրահայտ լրացուցիչ վարձատրության կարգը, շրջկենտրոնի առաջավոր կոլտնտեսության օրինակով մշակվում և բոլոր կոլտնտեսություններում արմատավորվում է դրամական խրախուսանքը, ըստ որի կաթի ստացման ամսեկան պլանի գերակատարման դեպքում կթվորուհին յուրաքանչյուր գերակատարած տոկոսի դիմաց ամսվա վերջին ստանում է մեկ ռուբլի։ Նույն կոլտնտեսությունը մշակում է խրախուսանքի ավելի պրոգրեսիվ սիստեմ։ Եթե կթվորուհին ամսեկան պլանը գերակատարում է մինչև 10 տոկոս, յուրաքանչյուր տոկոսի համար ստանում է մեկ ռուբլի, 10—20 տոկոսով գերակատարելու դեպքում՝ երկու ռուբլի, 21 տոկոսից բարձր՝ երեք ռուբլի։ Խրախուսանքի նոր սիստեմի կիրառումը ավելի քաջալերեց շրջկենտրոնի կոլտնտեսականներին՝ պայքարելու ավելի շատ կաթ ստանալու համար։ Պարտիայի շրջանային կոմիտեն խրախուսելով աշխատանքի առաջավոր այդ փորձը, բյուրոյում քննության է առնում այն և խորհուրդ է տալիս բոլոր կոլտնտեսություններին ընդօրինակել նյութական խրախուսանքի այդ նոր ձևը։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու գործում վճռական նշանակություն ունի կերի կայուն բազայի ստեղծումը։ Կալինինոյի շրջանի կոմունիստներն այդ բնագավառում նույնպես օրինակելի աշխատանք են կատարել։ Այդ նկատի ունենալով գրքույկում հանգամանորեն պարզաբանվում է կերի կայուն բազա ստեղծելու նրանց փորձը։

Հեղինակը համառոտակի խոսում է նաև գյուղատնտեսության մասնագիտացման և անասնաբուծության կուլտուրայի բարձրացման հարցերի, տոհմաբուծության, ինչպես նաև անասնաբուծության զարգացման հեռանկարային պլանի մասին և այդ կապակցությամբ պարզաբանում է պարտշրջկոմի կատարած աշխատանքը։ Գրքույկում ցույց են տրված շրջանի կոմունիստների ջանասեր աշխատանքի արդյունքները։ Մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը 1957 թվականին հասավ 2358 կիլոգրամի, կամ 591 կիլոգրամով ավելի, քան նախորդ տարում։

Այս ուշագրավ գրքույկը, որը նվիրված է անասնաբուծության մթերքների առատության համար մեր ռեսպուբլիկայի ամենախոշոր անասնապահական շրջաններից մեկի՝ Կալինինոյի շրջանի կոմունիստների պայքարին, զերծ չէ առանձին թերություններից։ Ամենից առաջ գրքույկում մոռացված է մի շատ կարևորագույն բնագավառ՝ խոզաբուծությունը։ Պարտիան իր բազմաթիվ որոշումներում մեծ կարևորություն է տվել խոզաբուծության զարգացմանը, որպես անասնաբուծության արագ աճող ճյուղի։ Միաժամանակ ցանկալի կլիներ, եթե գրքույկում հանգամանորեն պարզաբանվեր, թե ինչպես է կազմակերպված անասնաբուծական աշխատանքների կոմպլեքսային մեքենայացումը։

Հայտնի է, որ պարտիական կյանքում աչքի ընկնող աշխատանք են կատարում պարտիական խմբերը։ Մոտիկ կանգնած լինելով կոլտնտեսային արտադրությանը, անմիջական կապ ունենալով կոլտնտեսականների հետ, յուրաքանչյուր աշխատողի հետ, պարտիական խումբը բոլորից շուտ է նկատում այն նորը, առաջավորը, որ ծնունդ է առնում աշխատանքի ընթացքում, և կամ աշխատանքն արգելակող թերությունները, որոնք հարկավոր են անմիջապես վերացնել։

Մեր կարծիքով, գրքույկն ավելի շահած կլիներ, եթե նրանում պատշաճ տեղ հատկացվեր պարտիական խմբերի աշխատանքի փորձին, որն ուսանելի կլիներ մյուսների համար։

Գրքույկը ծանրաբեռնված է թվական տվյալներով։ Այդ հանգամանքը որոշ չափով հեղինակին կաշկանդել է հանգամանորեն վերլուծելու կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների աշխատանքի փորձը, ընդհանրացնելու այն։ Նույնիսկ հրապարակված որոշ աղյուսակներ (էջ 21 և 31) վերնագրեր չունեն, որը խոչընդոտ է աղյուսակների էությունը հասկանալու համար։

Ստ. Վարդանյանի գրքույկը օգտակար գործ է մեր գյուղական պարտիական աշխատողների համար։ Հայպետհրատը լավ կանի, եթե հաճախակի հրատարակի պարտիական պրակտիկ աշխատանքի փորձին վերաբերող ոչ միայն գրքույկներ, այլև գրքեր։

Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

կոնկրետ պայմաններից, նա նպատակահարմար էր համարում ամեն մի բրիգադայի, առանց աշխատողների թիվն ավելացնելու, մշակության համար հանձնել ոչ թե 150, այլ 300 հեկտար վարելահող։

Սպիտակի և Արթիկի շրջանային թերթերի խմբագրությունների կատարած աշխատանքը արժանի է ամենայն ուշադրության։ Համաժողովրդական քննարկման օրերին այդ թերթերը զգալիորեն ամրապնդեցին իրենց կապերը աշխատավորների հետ, ձգտելով թերթի ամեն մի համարը դարձնել ավելի բովանդակալից, հետաքրքրական։

Սակայն այդ բանը չի կարելի ասել շրջանային առանձին, օրինակ, Ախտայի, Իջևանի, Մարտունու թերթերի մասին։ Որքան էլ տարօրինակ է, բայց մնում է փաստ, որ նրանց էջերում չկազմակերպվեց գյուղատնտեսության զարգացման հարցերի լայն քննարկում, չտպագրվեցին գյուղի աշխատավորների հետաքրքրական նամակներ, առաջարկություններ։ Եվ դա այն ժամանակ, երբ տվյալ շրջանների աշխատավորները մեծ խանդավառությամբ քննարկելով թեզիսները, մտցնում էին իրենց գործնական առաջարկները, ուղղումները։ Մի՞թե դա չի վկայում այն մասին, թե վերոհիշյալ թերթերի խմբագրությունները որքան են կտրված կյանքից, աշխատավորներին հուզող հարցերից։



ՍՄԿԿ XXI և Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարների որոշումների մեջ պարզորոշ կերպով նշված է մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման հիմնական ուղղությունը, առաջադրված են նրա յուրաքանչյուր ճյուղի վերելքի կոնկրետ ուղիները։ Շրջանային թերթերի համար սկսվում է ստեղծագործական աշխատանքի մի նոր, եռուն շրջան. Նրանք պետք է օգնեն գյուղի աշխատավորներին՝ կենսագործելու պարտիայի կանխատեսումները, հետագա զարգացման հասցնելու գյուղատնտեսական արտադրությունը։

Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարը նշեց, որ ռեսպուբլիկայի գյուղատնտեսական արտադրության շեշտակի բարձրացման համար առաջնահերթ նշանակություն ունի ետ մնացող կոլտնտեսությունները և սովետական տնտեսությունները առաջավոր տնտեսությունների մակարդակին բարձրացնելը։ Ահա շրջանային թերթերի գործունեության մի խոշոր և շնորհակալ բնագավառ։ Յոթնամյա պլանը քննարկելիս թերթերը հենց իրենք նշեցին այդպիսի տնտեսություններ, ցույց տալով նրանց ետ մնալու պատճառները։ Մնում է այսուհետև ուշադրության կենտրոնում պահել այդ տնտեսությունները, օգնելով նրանց՝ հասնելու առաջավորների մակարդակին։

ՍՄԿԿ XXI համագումարի փաստաթղթերի համաժողովրդական քննարկումը շատ բան տվեց շրջանային թերթերի խմբագրություններին. նրանց համար ավելի պարզորոշ դարձան յուրաքանչյուր կոլտնտեսության, սովետական տնտեսության, ՆՏ կայանի հետագա զարգացման համար եղած հնարավորություններն ու ռեզերվները։ Իրենց աշխատանքի ուղեցույց ունենալով ՍՄԿԿ XXI համագումարի որոշումները, թերթերը գյուղատնտեսության նոր, խոշոր վերելքի կազմակերպման, յոթնամյա պլանի կատարման համար գյուղի աշխատավորների կողմից մղվող պայքարի կոլեկտիվ պրոպագանդիստներն ու կազմակերպիչները պետք է լինեն։

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ



ՈՒՂՂՈՒՄ

Մեր ամսագրի սույն թվի № 1-ի 98-րդ էջի վերևից 13-րդ տողում կարդալ. «Ս. Պողոսյանի և Բ. Զաքարյանի ղեկավարած բրիգադաները...» և այնուհետև ինչպես տեքստում։

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 01529

Պատվեր 210 Տիրաժ 9500

Տպ. 8 մամուլ, մամուլում 68.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 20/II 1959 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։